ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

№ 12
ԴԵԿՏԵՄԲԵՐ
1960 Թ.
★
ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
XXXVII
ՏԱՐԻ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԿԵՆՏԿՈՄԻ
ՏԵՍԱԿԱՆ—ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ЛЕНИНЯН УГИОВ – ТЕОРЕТИЧЕСКИЙ
ПОЛИТИЧЕСКИЙ ЖУРНАЛ ЦК КП АРМЕНИИ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

## СОДЕРЖАНИЕ





# ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՇԱՐԺՄԱՆ ԾՐԱԳՐԱՅԻՆ ՓԱՍՏԱԹՈՒՂԹԸ

Համաշխարհային կոմունիստական շարժումը պայքարի ու գործողության նոր ուղեցույց ստացավ: Կոմունիստական և բանվորական 81 պարտիաների ներկայացուցիչների Մոսկվայում կայացած խորհրդակցության Հայտարարությունը հիրավի ամբողջ աշխարհի կոմունիստների մարքս-լենինյան ծրագրային փաստաթուղթն է, մի փաստաթուղթ, որն ամենայն խորությամբ, ստեղծագործական մարքսիզմի դիրքերից պատասխան է տալիս մեր դարաշրջանի ամենակենսական հարցերին, բացահայտում և նորից հաստատում է մարդկության ամենանվիրական իղձերի համար պայքարող առաջամարտիկների՝ կոմունիստների դիրքորոշումը:

Խորհրդակցության Հայտարարության մեջ տրված է արդի միջազգային դրության մարքս-լենինյան խոր վերլուծությունը և ծավալուն բնութագիրը, ընդհանրացված է կոմունիստական, բանվորական և ազգային-ազատագրական շարժման փորձը, ամփոփված են սոցիալիստական սիստեմի մեծ հաջողությունները: Այնտեղ սահմանված են սոցիալիստական երկրների հետագա համախմբման ուղիները, նշված են իմպերիալիզմի դեմ, գաղութային խայտառակ սիստեմի վերջնական վերացման, խաղաղության, դեմոկրատիայի և ազգային անկախության գործի հաղթանակի համար՝ սոցիալիզմի գաղափարների հաղթանակի համար մղվող պայքարի նոր հնարավորություններն ու խնդիրները:

Փաստաթուղթը մարքսիզմ-լենինիզմի ստեղծագործական զարգացման մի նոր նմուշ է, կոմունիստական ու բանվորական պարտիաների կոլեկտիվ բանականության մարմնացումը: Այն պատմական նոր փորձի ընդհանրացման հիման վրա շարունակում, զարգացնում և հարստացնում է 1957 թվականի Դեկլարացիայի և Խաղաղության Մանիֆեստի գաղափարները, որոնց ճշտությունն ամբողջապես հաստատվեց անցած երեք տարվա իրադարձությունների ընթացքում:

Խորհրդակցության Հայտարարության մեջ ասված է. մեր դարաշրջանը, որի հիմնական բովանդակությունը կապիտալիզմից սոցիալիզմին անցնելն է, որն սկսվեց Մեծ Հոկտեմբերով, հասարակական երկու հակադիր սիստեմների պայքարի դարաշրջանն է, սոցիալիստական ռևոլյուցիաների և ազգային-ազատագրական ռևոլյուցիաների դարաշրջանը, իմպերիալիզմի կործանման, գաղութային սիստեմի վերացման դարաշրջանը, սոցիալիզմի ուղին նորանոր ժողովուրդների անցման, համաշխարհային մասշտաբով սոցիալիզմի և կոմունիզմի հաղթանակի դարաշրջանը:

Մեր ժամանակի գլխավոր բնորոշ գիծն այն է,— ասված է Հայտարարության մեջ,— որ համաշխարհային սոցիալիստական սիստեմը վերածվում է մարդկային հասարակության զարգացման վճռական գործոնի:

Հայտարարության մեջ ամփոփված են սոցիալիզմի վճռական նվաճումների արդյունքները համաշխարհային սիստեմի մասշտաբով: Սոցիալիզմը ստեղծագործական չտեսնված հաջողությունների է հասել արտադրության, գիտության ու տեխնիկայի ասպարեզում և մարդկանց նոր, ազատ համագործակցություն ստեղծելու գործում, որն ավելի ու ավելի մեծ չափով է ապահովում նրանց նյութական ու հոգևոր պահանջմունքները: Մոտենում է այն ժամանակը, երբ համաշխարհային արտադրության մեջ իր տեսակարար կշռով ևս սոցիալիզմը կգրավի առաջին տեղը: Կապիտալիզմը պարտություն կկրի մարդկային գործունեության վճռական ոլորտում՝ նյութական արտադրության ոլորտում:

Համաշխարհային կապիտալիստական սիստեմը անկման և քայքայման խոր պրոցես է ապրում: Կապիտալիստական աշխարհում արտադրողական ուժերի և արտադրական հարաբերությունների միջև եղած կոնֆլիկտը երբեք այնքան խոր չի եղել, որքան այժմ: Կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի զարգացման մեջ սկսվել է նոր էտապ, որի առանձնահատկությունն այն է, որ դա առաջացել է ոչ թե համաշխարհային պատերազմի կապակցությամբ, այլ երկու սիստեմների մրցության ու պայքարի պայմաններում, խաղաղության ամրապնդման և խաղաղ գոյակցության համար, դեմոկրատիայի, ազգային ազատագրության և սոցիալիզմի համար ժողովրդական լայն մասսաների ու խաղաղասեր ուժերի պայքարի վերելքի պայմաններում:

Կյանքը հերքում է կապիտալիզմի երկրպագուների և ռևիզիոնիստների հերյուրանքներն այն մասին, թե ժամանակակից կապիտալիզմը վերածվել է իբր «ժողովրդական կապիտալիզմի», ստեղծվել է այսպես կոչված «ընդհանուր բարօրության պետություն», որն ընդունակ է հաղթահարելու արտադրության անարխիան ու տնտեսական ճգնաժամերը և ապահովելու բոլոր աշխատավորների բարեկեցությունը:

Կապիտալիզմի նեխումը առավել մեծ ուժով դրսևորվում է ժամանակակից իմպերիալիզմի գլխավոր երկրում՝ Ամերիկայի Միացյալ Նահանգներում, որը դարձել է զգալի խրոնիկական գործազրկության երկիր: Այնտեղ մշտական երևույթ է դարձել արդյունաբերության հարանուն թերբեռնումը: Հաճախակի են դարձել գերարտադրության ճգնաժամերը: Կապիտալիզմի առավել զարգացած արդյունաբերության երկիրը դարձել է առավել այլանդակ ռազմականացված էկոնոմիկայի երկիր: ԱՄՆ-ը մնում են ժամանակակից իմպերիալիզմի տնտեսական, ֆինանսական և ռազմական գլխավոր ուժը:

Վերջին տարիների միջազգային իրադարձությունների ընթացքը բազմաթիվ նոր ապացույցներ է տվել այն բանի, որ ամերիկյան իմպերիալիզմը համաշխարհային ռեակցիայի գլխավոր հենարանն է ու միջազգային ժանդարմը, ամբողջ աշխարհի ժողովուրդների թշնամին:

Ժողովուրդներն ավելի ու ավելի վճռականորեն են պայքարի ելնում իմպերիալիզմի դեմ: Վիթխարի նակատամարտ է ծավալվում աշխատանքի ու



կապիտալի, դեմոկրատիայի ու ռեակցիայի, ազատության և գաղութատիրության ուժերի միջև:

Եվրոպայի և Ասիայի երկրների՝ մարդկության մեկ երրորդն ընդգրկող մի մեծ խմբում սոցիալիզմի հաղթանակ, ամբողջ աշխարհում սոցիալիզմի համար պայքարող ուժերի հզոր աճ և սոցիալիզմի հետ տնտեսական մրցության մեջ իմպերիալիզմի դիրքերի անշեղ թուլացում, ազգային-ազատագրական պայքարի նոր հսկայական վերելք և գաղութային սիստեմի արագացող քայքայում, համաշխարհային տնտեսության կապիտալիստական ամբողջ սիստեմի անկայունության աճ, պետական-մոնոպոլիստական կապիտալիզմի զարգացման և միլիտարիզմի աճի հետևանքով կապիտալիզմի հակասությունների սրում, մոնոպոլիաների և ամբողջ ազգի շահերի միջև եղած հակասությունների խորացում, բուրժուական դեմոկրատիայի սահմանափակում, կառավարման ինքնակալական ու ֆաշիստական մեթոդների տենդենց, բուրժուական քաղաքականության ու գաղափարախոսության խոր ճգնաժամ՝ սրանք են վկայությունները այն բանի, որ կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի զարգացման մեջ նոր էտապ է սկսվել:

Արդի դարաշրջանի կենտրոնում կանգնած է միջազգային բանվոր դասակարգը և նրա գլխավոր ծնունդը հանդիսացող՝ սոցիալիզմի համաշխարհային սիստեմը: Դրանք խաղաղության, դեմոկրատիայի, ազգային ազատագրության, սոցիալիզմի և մարդկության առաջադիմության պայքարի հաղթանակի երաշխիքն են:

Համաշխարհային սոցիալիստական սիստեմը թևակոխել է իր զարգացման նոր փուլը: Սովետական Միությունը հաջողությամբ իրագործում է կոմունիստական հասարակարգի ծավալուն կառուցումը: Սոցիալիզմի ամբողջ սիստեմի վճռական հաղթանակները նշանավորում են մարքսիզմ-լենինիզմի հաղթանակը և կապիտալի լծի տակ գտնվող բոլոր ժողովուրդներին ակնբախ կերպով ցույց են տալիս, որ այդ ուսմունքի հիման վրա կազմակերպված հասարակարգը անսահման հնարավորություն է ստեղծում էկոնոմիկայի ու կուլտուրայի ծաղկման համար, մարդկանց բարձր կենսամակարդակի, նրանց խաղաղ ու երջանիկ կյանքի ապահովման համար:

Սովետական ժողովուրդն արագ տեմպերով ստեղծում է կոմունիզմի նյութա-տեխնիկական բազան, պատմության մեջ առաջինը հարթելով կոմունիզմի ուղին ամբողջ մարդկության համար: Ժողովրդա-դեմոկրատական ռեսպուբլիկաները՝ Ալբանիան, Բուլղարիան, Հունգարիան, ԳԴՌ-ն, ՎԴՌ-ն, Չինաստանը, ԿԺԴՌ-ն, Մոնղոլիան, Լեհաստանը, Ռումինիան, Չեխոսլովակիան, որոնք մեծ Սովետական Միության հետ մեկտեղ կազմել են սոցիալիստական հզոր լագերը, պատմական կարճ ժամանակամիջոցում հսկայական հաջողությունների են հասել սոցիալիզմի կառուցման գործում: Այդ բոլոր երկրներն էլ ստեղծել են զարգացած արդյունաբերություն. երբեմնի ագրարային երկրները դարձել են կամ դառնում են ինդուստրիալ-ագրարային երկրներ:

Ինչպես ընդգծված է Հայտարարության մեջ, այժմ ոչ միայն Սովետական Միությունում, այլև սոցիալիստական մյուս երկրներում վերացված են կապիտալիզմի ռեստավրացիայի սոցիալ-տնտեսական հնարավորությունները: Սոցիալիստական լագերի միավորված ուժերը յուրաքանչյուր սոցիալիստական երկրի հուսալի կերպով երաշ-

խավորում են իմպերիալիստական ռեակցիայի ոտնձգություններից: Այսպիսով, սոցիալիստական պետությունների համախմբումը մի միասնական լագերում, այդ լագերի ամրապնդվող միասնությունը և անընդհատ աճող հզորությունը ապահովում են ամբողջ սիստեմի շրջանակներում սոցիալիզմի լիակատար հաղթանակը: Սոցիալիստական լագերի պառակտման հնարավորության նկատմամբ իմպերիալիստների, ռենեգատների և ռևիզիոնիստների հաշիվները կառուցված են ավազի վրա և ձախողման են դատապարտված: Սոցիալիստական բոլոր երկրները աչքի լույսի պես են պահպանում սոցիալիստական լագերի միասնությունը:

Սոցիալիստական երկրների փոխհարաբերությունների անխախտ օրենքը մարքսիզմ-լենինիզմի, սոցիալիստական ինտերնացիոնալիզմի սկզբունքների խստիվ պահպանումն է:

Կոմունիստական և բանվորական պարտիաներն աշխատավորներին դաստիարակում են սոցիալիստական ինտերնացիոնալիզմի ոգով, նացիոնալիզմի և շովինիզմի բոլոր դրսևորումների նկատմամբ անհաշտության ոգով: Կոմունիստական ու բանվորական պարտիաների, սոցիալիստական երկրների ժողովուրդների համախմբվածությունը, միասնությունը, մարքս-լենինյան ուսմունքին նրանց հավատարմությունը, յուրաքանչյուր սոցիալիստական երկրի և սոցիալիստական ամբողջ լագերի ուժի և անպարտելիության գլխավոր աղբյուրն է:

***

Մեր ժամանակի ամենահրատապ պրոբլեմը պատերազմի և խաղաղության պրոբլեմն է: Պատերազմը կապիտալիզմի մշտական ուղեկիցն է: Քանի դեռ պահպանվում է իմպերիալիզմը, կմնա նաև ագրեսիվ պատերազմների հողը: Ագրեսիայի և պատերազմի գլխավոր ուժը ամերիկյան իմպերիալիզմն է, որն ստեղծել է պատերազմի հսկայական ապարատ, ՆԱՏՕ, ՍԵՆՏՕ, ՍԵԱՏՕ և այլ ռազմական բլոկներ, անգլիական և ֆրանսիական իմպերիալիստական ուժերի հետ միասին վերածնում է գերմանական միլիտարիզմը, պատերազմի օջախը Հեռավոր Արևելքում, կասեցնում զինաթափման նպատակ հետապնդող Սովետական Միության և այլ խաղաղասեր պետությունների առաջարկները: Ամերիկյան ռազմամոլները մտադիր են վերսկսել ատոմային կործանարար փորձարկումները, աշխարհի տարբեր մասերում շարունակում են ռազմական պրովոկացիաները, որոնք հղի են միջազգային լուրջ կոնֆլիկտների սպառնալիքով: Պատերազմի սպառնալիքը ուժեղացել է:

Հայտարարության մեջ նշված է, որ իմպերիալիզմի ագրեսիվ բնույթը չի փոխվել: Սակայն ստեղծվել են ռեալ ուժեր, որոնք ընդունակ են վիժեցնելու նրա ագրեսիվ պլանները: Պատերազմի ճակատագրական անխուսափելիություն գոյություն չունի: Այնտեղ ամենայն հաստատակամությամբ ընդգծվում է՝ համաշխարհային սոցիալիստական լագերի, միջազգա-



յին բանվոր դասակարգի, ազգային-ազատագրական շարժման միացյալ ջանքերով, պատերազմի դեմ հանդես եկող բոլոր երկրների և բոլոր խաղաղասեր ուժերի միացյալ ջանքերով համաշխարհային պատերազմը կարելի է կանխել: Կոմունիստները գտնում են, որ նոր համաշխարհային պատերազմի վտանգի դեմ պայքարը պետք է ծավալել, չսպասելով, որ սկսեն ընկնել ատոմային ու ջրածնային ռումբերը: Այդ պայքարը պետք է մղել այժմ, օրավուր ուժեղացնելով ջանքերը: Գլխավոր խնդիրն է՝ ժամանակին սանձահարել ագրեսորներին, կանխել պատերազմը, թույլ չտալ, որ այն բռնկի:

Կոմունիստական պարտիաները խաղաղության համար մղվող պայքարը համարում են իրենց առաջնակարգ խնդիրը: Նրանք միջազգային բանվոր դասակարգի բոլոր ջոկատներին և կազմակերպություններին կոչ են անում միավորել բոլոր ուժերը, իրենց հզոր կամքը և միասնական գործողությունները հակադրել պատերազմի ուժերին, վճռական հակահարված տալ իմպերիալիստների ամեն տեսակ ագրեսիվ գործողություններին:

Հայտարարությունը նորից հավաստում է աշխարհին, որ կոմունիստները միահամուռ պաշտպանում են խաղաղ գոյակցությունը, վճռականորեն պայքարում են պատերազմը կանխելու համար: Տարբեր հասարակարգ ունեցող պետությունների խաղաղ գոյակցություն կամ ավերիչ պատերազմ՝ այժմ միայն այսպես է դրված հարցը: Այլ ելք չկա: Կոմունիստները վճռականորեն մերժում են «սառը պատերազմի», «պատերազմի եզրին» հավասարակշռության ամերիկյան դոկտրինան որպես մի քաղաքականություն, որը տանում է դեպի ջերմամիջուկային աղետ: Պաշտպանելով խաղաղ գոյակցության սկզբունքները, կոմունիստները ձգտում են «սառը պատերազմի» լիակատար դադարեցմանը, ռազմական բլոկների ցրմանը, ռազմական բազաների վերացմանը, միջազգային վերահսկողությամբ ընդհանուր և լրիվ զինաթափմանը:

Կոմունիստները իրենց պատմական միսիան են համարում ոչ միայն այն, որ համաշխարհային մասշտաբով վերացնեն շահագործումն ու աղքատությունը և մարդկային հասարակարգի կյանքից ընդմիշտ բացառեն ամեն մի պատերազմի հնարավորություն, այլև արդեն ներկա դարաշրջանում մարդկությանը փրկեն համաշխարհային նոր պատերազմի մղձավանջից: Բոլոր երկրների կոմունիստական պարտիաները պատմական այս մեծ միսիայի իրագործմանը կնվիրեն իրենց բոլոր ուժերն ու եռանդը:

Հայտարարության մեջ բազմակողմանիորեն լուսաբանված են ազգային-ազատագրական շարժման, գաղութային խայտառակ սիստեմի վերջնական վերացման պրոբլեմները:

Ազգային-ազատագրական շարժման գրոհի տակ գաղութային ստրկության սիստեմի կործանումը սոցիալիզմի համաշխարհային սիստեմի կազմավորումից հետո իր պատմական նշանակությամբ երկրորդ երևույթն է:

Հայտարարության մեջ տրված է Ասիայի, Աֆրիկայի և Լատինական Ամերիկայի ժողովուրդների՝ ազատության և անկախության համար պայքարի վերլուծությունը, նրա վառ պատկերը, ամփոփված են մարքս-լենինյան նոր դրույթներ ազգային անկախության ուղին բռնած երկրների զարգացման հեռանկարների վերաբերյալ: Ազգային-ազատագրական շարժման հսկայական հաջողությունները զգալի չափով պայմանավորված են սոցիալիզմի հաղթանակներով: Սոցիալիզմի երկրները իմպերիալիզմի լծից ու ճնշումից ազատագրվելու համար պայքարող կամ արդեն ազատագրված ժողովուրդների անկեղծ ու հավատարիմ բարեկամներն են: Հայտարարության մեջ նորից ընդգծված է, որ սոցիալիստական բոլոր երկրները, միջազգային բանվորական և կոմունիստական շարժումն իրենց պարտքն են համարում բարոյական և նյութական բազմակողմանի օգնություն ցույց տալ իմպերիալիստական ու գաղութային լծից ազատագրվելու համար պայքարող ժողովուրդներին:

⁂

Կապիտալիստական զարգացած երկրների կոմունիստական ու բանվորական շարժման հարուստ փորձի հիման վրա հայտարարության մեջ ձևակերպված են այդ երկրներում կոմունիստական ու բանվորական պարտիաների կարևորագույն պրոբլեմները և ցույց են տրված դրանց լուծման նոր հնարավորությունները:

Խորհրդակցությունը նշեց, որ գլխավոր հարվածը ներկա պայմաններում ավելի ու ավելի վճռականորեն ուղղվում է կապիտալիստական մոնոպոլիաների դեմ, իբրև սպառազինությունների մրցավազքի հիմնական հանցավորների, ռեակցիայի և ագրեսիայի պատվարի, ընդդեմ պետական-մոնոպոլիստական կապիտալիզմի ամբողջ սիստեմի, որը պաշտպան է կանգնած նրանց շահերին:

Հայտարարությունը նորից հաստատում է կոմունիստական ու բանվորական պարտիաների պատրաստակամությունը՝ հասնել բանվոր դասակարգի միասնության, համագործակցել սոցիալ-դեմոկրատների հետ՝ համատեղ պայքարելու աշխատավորների շահերի համար, առանձնապես պատերազմի վտանգի դեմ: Խորհրդակցությունը վերստին հիշակեց, որ կոմունիստական պարտիաները, ղեկավարվելով մարքս-լենինյան ուսմունքով, միշտ դեմ են եղել ռևոլյուցիայի արտահանմանը: Միևնույն ժամանակ նրանք վճռականորեն պայքարում են հակառևոլյուցիայի իմպերիալիստական արտահանման դեմ: Հայտարարության մեջ կոմպարտիաները հավաստում են տարբեր երկրներում կապիտալիզմից սոցիալիզմին խաղաղ և ոչ խաղաղ անցնելու ձևերի հարցի վերաբերյալ 1957 թվականի Դեկլարացիայի դրույթները:

Հայտարարությունը լուսաբանում է կոմունիստական ու բանվորական պարտիաների սկզբունքային վերաբերմունքը գաղափարական ճակատում մղվող պայքարի հարցերի նկատմամբ: Առանձնահատուկ տեղ է հատկացված բուրժուազիայի թունավոր զենքի՝ հակակոմունիզմի դեմ պայքարն ուժեղացնելու խնդրին:

Համաշխարհային կոմունիստական շարժումը դարձել է մեր ժամանակի



ամենաազդեցիկ քաղաքական ուժը, դարձել է հասարակական առաջադիմության կարևորագույն գործոնը: Աշխարհի 87 երկրներում այժմ գործող կոմունիստական պարտիաներն իրենց շարքերում միավորում են ավելի քան 36 միլիոն մարդ: Դա մարքսիզմ-լենինիզմի հիանալի հաղթանակն է, բանվոր դասակարգի վիթխարի նվաճումը: Բոլոր կոմունիստական ու բանվորական պարտիաներն իրենց ինտերնացիոնալ պարտքն են համարում բարձր պահել ստեղծագործական մարքսիզմ-լենինիզմի՝ որպես հաղթանակների վճռական պայմանի, դրոշը, շարունակել վճռական պայքարը երկու ճակատում՝ ընդդեմ ռևիզիոնիզմի, որը մնում է գլխավոր վտանգը, և ընդդեմ դոգմատիզմի ու աղանդավորության:

Մարքսիզմ-լենինիզմի, պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքների հիման վրա միջազգային կոմունիստական շարժման միասնության վրճռական պաշտպանությունը, այդ միասնությունը որևէ չափով խաթարող գործողություն թույլ չտալը, ընդգծված է հայտարարության մեջ, ազգային անկախության, դեմոկրատիայի և խաղաղության համար մղվող պայքարում հաղթանակի պարտադիր պայմանն են, սոցիալիստական ռևոլյուցիայի խնդիրների, սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման խնդիրների հաջող լուծումը:

Հայտարարության մեջ բարձր գնահատական է տրված ՍՄԿՊ-ի՝ համաշխարհային կոմունիստական շարժման հանրաճանաչ ավանգարդի փորձին, որի օրինակը և նրա եղբայրական համերաշխությունը բոլոր կոմունիստական պարտիաներին ոգեշնչում են խաղաղության ու սոցիալիզմի համար նրանց պայքարում և հանդիսանում են պրակտիկայում պրոլետարական ինտերնացիոնալիզմի ռևոլյուցիոն սկզբունքների կիրառման արտահայտությունը: Համաշխարհային սոցիալիստական սիստեմի հետագա ամրապնդման համար հսկայական նշանակություն ունի Սովետական Միության և Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի ժողովուրդների, Սովետական Միության Կոմունիստական պարտիայի և Չինաստանի Կոմունիստական պարտիայի բարեկամությունը: Մոսկվայի խորհրդակցությունը ցուցադրեց կոմունիստական շարժման շարքերի կուռ համախմբվածությունը, նրանց հավատարմությունը մարքս-լենինյան գաղափարներին, նրանց վճռական կամքը՝ պայքարելու կոմունիզմի հաղթանակի համար:

Կոմունիստական շարժման պատմության մեջ ամենաներկայացուցչական խորհրդակցության հայտարարությունը միջազգային կոմունիստական շարժման ծրագրային փաստաթուղթն է, որը նոր ուժ ու եռանդ է հաղորդում խաղաղության, դեմոկրատիայի ու սոցիալիզմի մեծ գործի համար մարտիկներին:

Միջազգային կոմունիստական շարժումը մեծ վերելք է ապրում: Այն դարձել է մեր ժամանակի ամենաազդեցիկ քաղաքական ուժը:

---

# ԳՈՅԱՑՈՒՑԻՉ ԱՐԴՅՈՒՆՔՆԵՐ, ՆՈՐ ՊԱՐՏԱՎՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

*Հայաստանում Սովետական իշխանության հաստատման և Հայաստանի Կոմունիստական պարտիայի կազմավորման պանծալի քառասնամյակի պատվին ծավալված սոցիալիստական մրցությունը լուրջ ազդակ հանդիսացավ գյուղատնտեսական մթերքների արտադրությունն ավելացնելու և այդ ուղղությամբ յոթնամյակի երկրորդ տարվա պլանային առաջադրանքները հաջողությամբ կատարելու գործում։ Մրցությունն առավել ևս նոր թափ ստացավ Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի հերթական պլենում հրավիրելու մասին հաղորդագրությունից հետո, որն ընդգրկեց բոլոր շրջանները, կոլտնտեսություններն ու սովխոզները։*

*Մտնելով սոցիալիստական մրցության մեջ, ռեսպուբլիկայի կոլտնտեսականներն ու սովխոզների բանվորները պարտիական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպությունների և սովետական օրգանների ամենօրյա օգնությամբ հետևողական պայքար ծավալեցին ստանձնած պարտավորությունները պատվով կատարելու և հարազատ Հայրենիքին գյուղատնտեսական ավելի շատ մթերքներ տալու համար։ Այդ պայքարի ընթացքում սոցիալիստական գյուղի մարդիկ դրսևորեցին իրենց աշխատանքային անսպառ եռանդը, խոսքը գործի վերածելու հաստատուն կամքը, հանուն ամբողջ հասարակության բարօրության բարձրացման՝ պատրաստակամությունն ու նվիրվածությունը։ Բազմաթիվ կոլտնտեսություններ, սովխոզներ, բրիգադաներ, ֆերմաներ ու օղակներ, զարգացնելով ստեղծագործական նախաձեռնությունը, մոբիլիզացրին ներքին հարուստ ռեզերվները, հետևողականորեն արտադրության մեջ արմատավորեցին գիտության նվաճումներն ու առաջավոր փորձը, բարելավեցին հողամշակության ու անասնաբուծության կուլտուրան և նշանակալից չափով բարձրացրին աշխատանքի արտադրողականությունը։ Այդ և մյուս միջոցառումների իրականացումը հասցրեց ցանկալի արդյունքի. 1960 թվականին, 1959 թվականի համեմատությամբ, զգալիորեն ավելացավ գյուղատնտեսական մթերքների արտադրությունը, բարձրացան կոլտնտեսությունների մթերային ու դրամական եկամուտները։*

*Յոթնամյա պլանը ժամկետից շուտ կատարելու հայրենասիրական ձգտումը, յուրաքանչյուր շնչին ընկնող կաթի, յուղի, մսի արտադրությամբ առաջիկայում Ամերիկայի Միացյալ Նահանգներին հասնելու ու անցնելու՝ պարտիայի առաջադրանքի հետևողական կենսագործումը համարելով իրենց հիմնական խնդիրը, ռեսպուբլիկայի գյուղատնտեսության աշխատողները յոթնամյակի երկրորդ տարին նշանավորեցին արտադրական նոր հաջողություններով և պատվով կատարեցին պետության հանդեպ ունեցած պարտավորությունները։ Օրինական հպարտությամբ ու գոհունակությամբ ընդունվեց այն հաղորդագրությունը, որ մեր ռեսպուբլիկան ժամկետից շուտ կատարեց պետությանը գյուղատնտեսական հիմնական մթերքների վաճառքի տարեկան պլանը։ Մսի ու կաթի արտադրությունը ավելացնելու շնորհիվ գյուղատնտեսության աշխատողները նոյեմբերի մեկին պետությանը մսի վաճառքի տարեկան պլանը կատարեցին 104,6, իսկ կաթինը՝ 102 տոկոսով։ Ռեսպուբլիկայի կոլտնտեսություններն ու սովխոզները, անցյալ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ, մսի վաճառքն ավելացրին 44,6, կաթինը՝ 19 տոկոսով։ Դրությունը լավ է նաև ճակնդեղի արտադրության գործում։ Կազմակերպված աշխատանքի շնորհիվ ռեսպուբլիկան ժամկետից շուտ գերակատարեց շաքարի ճակնդեղի վաճառքի տարեկան սոցիալիստական պարտավորությունը, պետությանը վաճառելով ավելի քան 109 հազար տոննա շաքարի ճակնդեղ։*



*Գովեստով պետք է խոսել ռեսպուբլիկայի բամբակագործների հայրենանվեր աշխատանքի մասին, որի շնորհիվ Հայկական ՍՍՌ-ն ժամկետից շուտ, 1960 թվականի նոյեմբերի 23-ին 100,2 տոկոսով կատարեց բամբակի արտադրության և վաճառքի սոցիալիստական պարտավորությունը. պետությանը վաճառվել է ավելի քան 35 հազար տոննա բամբակ։*

*Տեխնիկական այդ արժեքավոր կուլտուրայի արտադրության ավելացման գործում առանձնապես աչքի ընկան Վեդիի շրջանի բամբակագործները, որոնք առ 30-ը նոյեմբերի պետությանը բամբակի հանձնման տարեկան պլանը կատարեցին 127,83 տոկոսով։ Նախորդ տարիների համեմատությամբ աչքի ընկնող հաջողության հասան նաև Արտաշատի շրջանի բամբակագործները, որոնք պետությանը բամբակի հանձնման տարեկան պլանը կատարեցին 107,44 տոկոսով։*

*Ռեսպուբլիկայի գյուղատնտեսության առաջավորների շարքում իրենց պատվավոր տեղն են գրավում մեր անվանի ճակնդեղագործներն ու ծխախոտագործները. նրանց գործադրած ջանքերի շնորհիվ ճակնդեղի ու ծխախոտի հանձնումն ընթացիկ տարում հասնում է յոթնամյակի վերջին տարվա՝ 1965 թվականի համար նախատեսված մակարդակին։*

*Գյուղատնտեսական մթերքների արտադրության պլանային առաջադրանքների և սոցիալիստական պարտավորությունների կատարման ուղղությամբ եղած հաջողությունները ինքնահոսի կարգով չեն նվաճված, այլ ձեռք են բերված համառ ու լարված աշխատանքի շնորհիվ։ Գաղտնիք չէ, որ ընթացիկ տարում ռեսպուբլիկայի գյուղատնտեսության համար կլիմայական պայմանները որոշ չափով անբարենպաստ էին. գարնան ուշ բացվելը, կերի պակասը, մի շարք շրջաններում անձրևի սակավությունը լուրջ դժվարություններ էին ստեղծել։ Սակայն սովետական մարդիկ դժվարությունների առաջ գլուխ չխոնարհեցին. Նրանք պարտիական կազմակերպությունների ղեկավարությամբ համաժողովրդական պայքարի դուրս եկան իրենց առջև դրված խնդիրները պատվով լուծելու համար։ Պարտիայի Աղինի, Վեդիի, Ախուրյանի, Թալինի, Հոկտեմբերյանի, Շամշադինի, Սիսիանի և մյուս շրջկոմներն ու սկզբնական կազմակերպությունները սովետական օրգանների հետ միասին գլխավորեցին գյուղատնտեսության աշխատողների հայրենասիրական խանդավառությունը, բոլշևիկորեն հաղթահարեցին եղած դժվարու-*

թյունները, հիմնականում ապահովեցին գյուղատնտեսական մթերքների արտադրության ու վաճառքի առաջադրանքների, սոցիալիստական պարտավորությունների հաջող կատարումը։

Բայց եղան առանձին շրջաններ, որոնց պարտիական կազմակերպությունները ու սովետական օրգանները ինչպես հարկն է չլուծեցին գյուղատնտեսության բարձրացման արմատական հարցերը, որի պատճառով էլ տվյալ շրջաններում գյուղատնտեսական մի շարք մթերքների արտադրության պլանային առաջադրանքները թերակատարվեցին։ Այսպես. պարտիայի Ղուկասյանի շրջկոմը և աշխատավորների դեպուտատների շրջանային Սովետի գործկոմը գյուղատնտեսական տարվա սկզբից համապատասխան միջոցառումների չդիմեցին հանրային անասունների խնամքն ու կերակրումը բարելավելու, հոտի վերարտադրությունը օրինակելիորեն կազմակերպելու և մսի արտադրությունը շեշտակիորեն բարձրացնելու համար։ Նրանք թողտվություն հանդես բերին առանձին կոլտնտեսությունների ղեկավարների նկատմամբ, որոնց անկազմակերպ աշխատանքի հետևանքով լրիվ չօգտագործվեցին ներքին հնարավորությունները, որի հետևանքով չբարձրացավ անասնաբուծական մթերքների արտադրության մակարդակը։

Դրությունը բարվոք չէ նաև Հրազդանի, Իջևանի, Ազիզբեկովի շրջանների մի շարք կոլտնտեսություններում։ Չնայած իրենց ունեցած հնարավորություններին, Հրազդանի շրջանի Արզականի և Հրազդանի կոլտնտեսությունները ոչ միայն չեն կատարել կաթի արտադրության ընթացիկ տարվա պլանային առաջադրանքն ու սոցիալիստական պարտավորությունը, այլև անցյալ տարվա համեմատությամբ իջեցրել են կաթի արտադրությունը։ Նույն շրջանի Ջրառատ գյուղի կոլտնտեսությունում մայր անասունների կերակրումն ու խնամքը վատ կազմակերպելու, արհեստական սերմնավորման վրա անհրաժեշտ ուշադրություն չդարձնելու հետևանքով 100 կովից ստացվել է 65 հորթ, 100 մայր ոչխարից՝ 61 գառ։ Այստեղ վատ է կազմակերպված նաև թռչունների խնամքը։ Անհոգատարության և գործի նկատմամբ անպատասխանատվության հետևանքով հավաբուծական ֆերմայում ճտերի և ածան հավերի անկումը խոշոր չափերի է հասել։ Այս և նման մի շարք փաստերն ասում են այն մասին, որ պարտիայի Հրազդանի շրջկոմը դեռևս արմատական միջոցառումների չի դիմել ետ մնացող կոլտնտեսություններն առաջավորներին հասցնելու և գյուղատնտեսական հողատարածության յուրաքանչյուր 100 հեկտարի դիմաց անասնաբուծական մթերքների արտադրությունը շեշտակիորեն բարձրացնելու համար։

Անցած գյուղատնտեսական տարում ռեսպուբլիկայի առանձին շրջաններում կերի անհրաժեշտ պաշարներ չստեղծվեցին, որը խիստ բացասաբար անդրադարձավ անասնաբուծության մթերատվության վրա։ Ավելին, մի շարք կոլտնտեսությունների անասնապահական ֆերմաներում կերի պակասի (ինչպես նաև վատ խնամքի ու պահպանման) հետևանքով տեղի ունեցավ անասունների և, հատկապես, մատղաշների զգալի կորուստ։ Դժբախտաբար այս տարի էլ առանձին շրջաններ (Արթիկ, Ազիզբեկով) բոլոր գծերով չապահովեցին կերի կուտակման պարտավորության կատարումը։ Դա լուրջ թերություն է. բոլոր միջոցները պետք է ձեռք առնել և անպայման լրացնել կերի պակասը, ջանք չխնայել, որպեսզի եկող տարի ավելի բարձրացվի անասունների մթերատվությունը։



Ամրապնդելով գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության և անասնաբուծության մթերատվության բարձրացման բնագավառում ձեռք բերված հաջողությունները, ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպությունները, սովետական օրգանները, գյուղատնտեսության բոլոր աշխատողները պետք է ավելի լայնորեն ծավալեն սոցիալիստական մրցությունը և գործնականում կոնկրետ քայլերի դիմեն առանձին օղակներում եղած թերությունները վերացնելու և յոթնամյա պլանով ռեսպուբլիկայի գյուղատնտեսության առջև դրված խնդիրների ժամկետից շուտ կատարումն ապահովելու համար։

Ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպությունները, սովետական օրգանները, կոլտնտեսությունների ու սովխոզների ղեկավարները, գյուղի մեր բոլոր աշխատավորները հողագործության ասպարեզում իրենց հիմնական ուշադրությունը պետք է կենտրոնացնեն բերքատվության բարձրացման վրա, որը ռեսպուբլիկայում ցանքատարածությունների ընդարձակման սահմանափակ հնարավորությունների պայմանում կարևոր նշանակություն է ստանում։ Բերքատվությունը բարձրացնելու համար պետք է կոնկրետ միջոցառումների դիմել սերմնաբուծությունը, օրգանական և հանքային պարարտանյութերի օգտագործումը արմատապես բարելավելու, ցանքի ու մշակության պրոգրեսիվ եղանակները արտադրության մեջ լայնորեն արմատավորելու, գյուղատնտեսական հիմնական աշխատանքները կոմպլեքսային մեքենայացման ենթարկելու, հողը լիարժեք կերպով օգտագործելու և գյուղատնտեսությունն ինտենսիվ ձևով վարելու ուղղությամբ։ Այս առումով պետք է կրկին ու կրկին հիշել ընկեր Ն. Ս. Խրուշչովի այն ցուցումը, որ «...մենք պետք է այժմ գյուղատնտեսության ասպարեզում առաջ գնանք ոչ միայն լայնությամբ, այլև խորությամբ, ընթանանք ոչ միայն ցանքատարածություններն ավելացնելու ճանապարհով, այլև բերքը լավագույն ագրոտեխնիկայի արմատավորման հաշվին բարձրացնելու ճանապարհով, հասնենք աշխատանքի ավելի բարձր արտադրողականության, իջեցնենք արտադրանքի ինքնարժեքը։ Ոչ թե գյուղատնտեսությունը վարելու էքստենսիվ ձևեր, որոնք հիմնված են գերազանցապես ցանքերն ընդարձակելու վրա, այլև բարձրորակ ինտենսիվ տնտեսություն, որը հողի յուրաքանչյուր հեկտարում ներդրված աշխատանքի յուրաքանչյուր միավորի դիմաց տալիս է առավելագույն քանակությամբ արտադրանք. ահա մեր ուղին»։

Գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության բարձրացման գործում կարևոր նշանակություն ունի գարնան դաշտային աշխատանքներին հաջող նախապատրաստվելը։ Այս առումով էլ անհրաժեշտ է, որ կոլտնտեսություններն ու սովխոզները առաջիկայում, առանց ժամանակ կորցնելու, լրացնեն տեսակավոր ու շրջանացված սերմացուների պակասը, ձեռնամուխ լինեն պարարտանյութերի կուտակմանը, կազմեն ավելի պրոգրեսիվ արտադրական նորմաներ, բրիգադները, ֆերմաներն ու օղակներն ապահովեն պատրաստված, փորձված ու կազմակերպական ունակություններով օժտված մարդկանցով, արագացնեն գյուղատնտեսական մեքենաների ու գործիքների նորոգումը և լավագույն պայմաններ ստեղծեն 1961 թ. ամենուրեք արմատավորելու ցանքի ու մշակության առաջավոր ձևերն ու մեթոդները։

Ռեսպուբլիկայի գյուղատնտեսության աշխատողների ամենակարևոր խնդիրներից մեկը եղել ու մնում է հանրային անասունների գլխաքանակի աճն ու նրանց մթերատվության բարձրացումը։ Չպետք է մոռանալ, որ դրանից է

կախված մսի, կաթի, ձվի և անասնաբուծական մյուս մթերքների արտադրության հետագա ավելացումն ու ինքնարժեքի իջեցումը, որոնց վրա պարտիայի Կենտկոմի 1959 թվականի Դեկտեմբերյան պլենումն առանձնահատուկ ուշադրություն դարձրեց։ Ելնելով պարտիայի Կենտկոմի պլենումի որոշումից, ռեսպուբլիկայի պարտիական, սովետական կազմակերպությունները, կոլտնտեսությունների վարչությունները և սովխոզների ղեկավարները պետք է բոլոր միջոցները գործի դնեն անասունների գլխաքանակի ավելացման պլանային առաջադրանքներն անպայման կատարելու։ Դրա միակ և հուսալի միջոցը հոտի վերարտադրության հաջող կազմակերպումն է և մատղաշ անասունների անկորուստ պահպանումն ու աճեցումը։ Նորմալ երևույթ չէ, երբ մի շարք շրջանների առանձին կոլտնտեսություններում մայր անասունների մի զգալի մասը վատ խնամքի, կերակրման, ինչպես նաև արհեստական սերմնավորման թերագնահատման հետևանքով ստերջ է մնում։ Դա մեծ վնաս է հասցնում մսի, կաթի ու բրդի արտադրությանը և այդ մթերքների ինքնարժեքի իջեցմանը։

Ռեսպուբլիկայում կան շրջաններ (Ամասիա, Հրազդան, Ղուկասյան), ուր 1960 թվականին, 1959 թվականի համեմատությամբ, անասունների որոշ տեսակների գլխաքանակը առ 20-ը նոյեմբերի դրությամբ ոչ միայն չի աճել, այլև նվազել է։ Դա միանգամայն անհանդուրժելի է և պետք է լուրջ անհանգստություն պատճառի տվյալ շրջանների պարտիական ու սովետական կազմակերպություններին և նրանց ղեկավարներին։ Նրանք պետք է լրջորեն զբաղվեն այդ պատասխանատու գործով, մսուրային շրջանում արմատապես բարելավեն անասունների խնամքը, ապահովեն ծնի կամպանիայի անկորուստ անցկացումը և կազմակերպական աշխատանքի միջոցով բոլոր անասնապահներին ու զոոանասնաբուժական անձնակազմին մոբիլիզացնեն՝ հանրային անասունների գլխաքանակի աճման պլանային առաջադրանքները կատարելու և գերակատարելու համար։ Պարտիական կազմակերպությունները պետք է սիստեմատիկ հսկողություն սահմանեն այդ գործի վրա և խիստ պատասխանատվության ենթարկեն այն կոլտնտեսությունների ղեկավարներին, որոնք փոխանակ հանրային հոտի վերարտադրությունը և անասունների բտումը լավ կազմակերպելու միջոցով ապահովելու անասունների գլխաքանակի ավելացման ու մսի արտադրության պլանների կատարումը, բռնում են պետությանը խաբելու հանցագործ ուղին, այսինքն մյուս շրջաններից զանազան մեքենայություններով անասուններ են գնում և թղթային ձևակերպումներով արհեստականորեն ցույց տալիս իրենց ստանձնած պարտավորությունների կատարումը։

Գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման և այդ ուղղությամբ յոթնամյա պլանով սահմանված առաջադրանքները ժամկետից շուտ կատարելու համար ստանձնած սոցիալիստական պարտավորությունների կատարման ընթացքում ռեսպուբլիկայի մի շարք շրջաններ և բազմաթիվ կոլտնտեսություններ ու սովխոզներ ընթացիկ տարում կուտակեցին աշխատանքի ուսանելի փորձ։ Գյուղատնտեսության առաջավորները պրակտիկայում ցույց տվին, թե ինչպես ներքին ռեզերվները խելացիորեն օգտագործելու և գիտության նվաճումները արտադրության մեջ արմատավորելու շնորհիվ հնարավոր է ավելի շատ մթերքներ արտադրել, քան նախատեսված է պլանով։ Պարտիական կազմակերպությունների խնդիրն է՝ ընդհանրացնել և



բոլոր կոլտնտեսություններում ու սովխոզներում տարածել առաջավորների փորձը։

Գյուղատնտեսության առաջավորների փորձի ուսումնասիրությունը, պրոպագանդումն ու տարածումը պետք է խթանի ետ մնացողներին՝ հասնելու առաջավորներին։ Չի կարելի հաշտվել այն դրության հետ, երբ մի շարք կոլտնտեսություններ (որոնք առաջավորների կողքին գտնվում են նույն հողակլիմայական պայմաններում) տարիներ շարունակ ետ են մնում և չեն ապահովում արտադրության պլանային առաջադրանքների կատարումը։ Ետ մնացող կոլտնտեսություններն առաջավորների մակարդակին հասցնելը՝ բերքատվության և անասնաբուծության մթերատվության բարձրացման կարևոր ռեզերվներից մեկն է, որի վրա պարտկազմակերպությունները պետք է առանձնահատուկ ուշադրություն դարձնեն։ Գործի շահը պահանջում է, որպեսզի պարտիական կազմակերպությունները սիստեմատիկաբար խորամուխ լինեն առաջավոր փորձի ուսումնասիրության մեջ, գյուղատնտեսության բոլոր աշխատողներին պարզաբանեն առաջավորների աշխատանքի ուսանելի ձևերն ու մեթոդները, նրանց ձեռք բերած փայլուն հաջողությունները։ Իհարկե, բավական չէ միայն խոսել առաջավոր փորձի մասին և պարզաբանել նրա էությունը։ Այս գործում գլխավոր շեշտը պետք է դնել այն բանի վրա, որպեսզի առաջավոր փորձը պրակտիկայում կիրառվի բոլոր կոլտնտեսություններում, սովխոզներում, անասնապահական ֆերմաներում, դաշտավարական բրիգադաներում ու օղակներում։ Դրա համար պետք է կազմակերպական ամենօրյա աշխատանք ծավալել և համապատասխան պայմաններ ստեղծել։

Մեր ռեսպուբլիկայում արդեն սկսվել են շրջանային պարտիական կոնֆերանսները, որոնք մեծ դեր են խաղալու գյուղատնտեսության հետագա զարգացման գործում։ Կոնֆերանսներում պետք է գործարար մթնոլորտում, քննադատաբար ու ինքնաքննադատաբար անդրադառնալ այն բոլոր հարցերին, որոնք կապված են յոթնամյա պլանով նախատեսված գյուղատնտեսության զարգացման հետ, սկզբունքային բարձր դիրքերից գնահատել գործերի իսկական վիճակը, համարձակորեն բացահայտել եղած թերությունները, երբեք չհանգստանալ ձեռք բերածով և կոնկրետ միջոցառումների դիմել՝ նոր հաջողությունների հասնելու համար։

Սոցիալիստական գյուղատնտեսության հետագա զարգացման վերաբերյալ Սովետական Միության Կոմունիստական պարտիայի դիրեկտիվների անշեղ կենսագործումը, յոթնամյա պլանի ժամկետից շուտ կատարումը նոր պարտավորություններ են դնում ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպությունների, սովետական օրգանների, գյուղի մեր բոլոր աշխատավորների վրա։ Տարակույս չկա, որ նրանք ամենայն ճշտությամբ կլուծեն պարտիայի առաջադրած խնդիրները, նորանոր հաջողություններով կդիմավորեն ՍՄԿՊ Կենտկոմի առաջիկա պլենումը և իրենց կազմակերպված ու համառ աշխատանքով կապահովեն գյուղատնտեսության հուժկու վերելքը։

# ՀՈԴՎԱԾՆԵՐ

## ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԱԶԳԵՐԻ ՏՆՏԵՍԱԿԱՆ ՀԱՄԱԳՈՐԾԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ

ՍՏ. ՍՏԵՓԱՆՅԱՆ

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի հաղթանակով, առաջին անգամ պատմության մեջ, ժողովուրդների միջև հաստատվեցին նոր սոցիալիստական հարաբերություններ՝ հիմնված նրանց լիակատար իրավահավասարության և անշահախնդիր փոխօգնության վրա։

Սոցիալիստական սեփականությունը և սոցիալիստական աշխատանքը, լիկվիդացնելով ազգային ճնշման և ազգային երկպառակության հիմքերը, անհրաժեշտ պայմաններ ստեղծեցին մեր երկրում բոլոր ժողովուրդների սերտ համագործակցության համար։ Սովետական Միության Կոմունիստական պարտիան և նրա հանճարեղ առաջնորդ Վ. Ի. Լենինը կոմունիզմի կառուցման համար միշտ էլ կարևոր պայման են համարել ազգերի համագործակցությունն ու փոխադարձ, անշահախնդիր օգնությունը։ Հայտնի է, թե որքան բարձր էր գնահատում Վ. Ի. Լենինը մեր երկրի ժողովուրդների միջև ճիշտ հարաբերություններ և համագործակցություն հաստատելու գործը։ Նա ասում էր. «Մեր փորձը մեր մեջ անխորտակելի համոզմունք է ստեղծել, որ տարբեր ազգերի շահերի նկատմամբ հսկայական ուշադրությունն է միայն, որ վերացնում է կոնֆլիկտների հողը, վերացնում է փոխադարձ անվստահությունը, վերացնում է ամեն տեսակի ինտրիգների երկյուղը, ստեղծում է, մանավանդ տարբեր լեզուներով խոսող բանվորների և գյուղացիների, այն վստահությունը, առանց որի բացարձակապես անհնարին են թե՛ ժողովուրդների խաղաղ հարաբերությունները և թե՛ փոքրիշատե հաջող զարգացումն այն ամենի, ինչ արժեքավոր է արդի քաղաքակրթության մեջ» (Երկեր, հ. 33, էջ 457)։

Լենինը սովորեցնում էր, որ լիակատար վստահության ու եղբայրական միասնության վրա հիմնված ազգերի կամավոր միությունը չի կարող միանգամից ստեղծվել. «...դրան,—նախազգուշացնում էր Վ. Ի. Լենինը,—հարկավոր է հասնել մեծագույն համբերությամբ և զգուշությամբ աշխատելով, ...որպեսզի վերացվի այն անվստահությունը, որը մնացել է կալվածատերերի ու կապիտալիստների դարավոր ճնշումից, մասնավոր սեփականության և դրա բաժանման ու վերաբաժանման համար եղած դարավոր թշնամանքից» (Երկեր, հ. 30, էջ 368)։ Մեր երկրի ժողովուրդների միջև բարեկամության և եղբայրական համագործակցության պատմության մեջ նոր էջ բացվեց 1922 թվականին։ Այդ ժամանակ էր, որ Վ. Ի. Լենինը Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միություն ստեղծելու հարցը առաջ քաշելով, մշակեց իրավահավասար և սուվերեն ազգերի կամավոր միավորման հիմունքները։ Լենինի կողմից մշակված սկզբունքներով էլ կազմակերպվեց սոցիալիստական ազգերի հզոր դաշինքը՝ ՍՍՌՄ-ը։



Կոմունիստական պարտիան միշտ մեկնել է այն բանից, որ ժողովուրդների միջև տնտեսական անհավասարության փաստական լիկվիդացիան և նախկինում հետամնաց ազգային շրջանների տնտեսական արագ վերելքը հանդիսանում են ժողովուրդների բարեկամության և համագործակցության ամրապնդման ռեալ հիմքը։ Դեռևս 1921 թվականին ՌԿ(բ)Պ X համագումարը ընդունեց «Պարտիայի հերթական խնդիրները ազգային հարցում» բանաձևը, որտեղ ասվում էր, որ Կոմունիստական պարտիայի առաջնագույն խնդիրն է. «...հետևողականորեն վերացնել ազգային անհավասարության բոլոր մնացորդները հասարակական ու տնտեսական կյանքի բոլոր բնագավառներում և ամենից առաջ պլանաչափորեն արդյունաբերություն արմատավորել ծայրամասերում՝ գործարանները հումքի աղբյուրների մոտ փոխադրելու միջոցով (Թուրքեստան, Բաշկիրիա, Կիրգիզստան, Կովկաս՝ տեքստիլ, բրդեղենի, կաշվեղենի արդյունաբերությունը և այլն)» (ՍՄԿՊ-ն համագումարների, կոնֆերենցիաների և Կենտկոմի պլենումների բանաձևերում և որոշումներում, 1-ին մաս, Երևան, 1954, էջ 714)։

Սովետական ժողովուրդների տնտեսական անհավասարության հաղթահարման ուղղությամբ կարևոր որոշումներ կայացրեց նաև պարտիայի XII համագումարը (1923 թ.), որը նշեց ռուս ազգի կողմից երկրի հետամնաց շրջաններին օգնություն ցույց տալու կոնկրետ ձևերը։ Այդ որոշումների համաձայն Ռուսաստանի կենտրոններից նորաստեղծ սովետական ռեսպուբլիկաները փոխադրվեցին բազմաթիվ գործարաններ և ֆաբրիկաներ։ Ռուս բանվոր դասակարգի պատրաստած հաստոցներով ու այլ սարքավորումներով ստեղծվեց նաև Լենինականի տեքստիլ կոմբինատը։ 1922 թվականին Թուրքմենական ռեսպուբլիկայի տրամադրության տակ դրվեց Իզմաիլովսկայայի մանվածքային-գործվածքային ֆաբրիկան։ Ձեռնարկությունների փոխադրումը կենտրոնից դեպի ազգային ծայրամասերը ամրապնդեց ռուս և ոչ-ռուս ժողովուրդների տնտեսական ու քաղաքական համագործակցությունը, պայմաններ ստեղծեց մեր երկրի արտադրողական ուժերի զարգացման համար։

Սոցիալիզմի կառուցման համար օբյեկտիվ անհրաժեշտություն էր սոցիալիստական ազգերի բազմակողմանի տնտեսական և քաղաքական համագործակցությունը։ Նրա շահերը հրամայաբար պահանջում էին միավորել մեր երկրի բոլոր ժողովուրդների ուժերը և ավելի ռացիոնալ օգտագործել նրանց տնտեսական ռեսուրսները։ Սոցիալիզմի նյութա-արտադրական բազայի ստեղծման համար հատկապես կարևոր դեր կատարեց սոցիալիստական ազգերի համագործակցությունը երկրի ինդուստրացման գործում։ Այդ համագործակցության շնորհիվ նախկինում հետամնաց ազգային շրջանները կարճ ժամանակամիջոցում դարձան ինդուստրիալ կենտրոններ։

Սոցիալիզմի նյութա-արտադրական բազայի ստեղծման համար կարևոր դեր կատարեց նաև մեր երկրի ժողովուրդների տնտեսական ու քաղաքական համագործակցությունը գյուղատնտեսության սոցիալիստական վերակառուցման համար մղվող պայքարում։ Գյուղատնտեսության սոցիալիստական վերակառուցումը, լիկվիդացնելով մեր երկրի վերջին շահագործող դասակար-

գը, է՛լ ավելի ամրապնդեց ժողովուրդների անխախտ բարեկամությունը։ Դրա հիման վրա ավելի ընդարձակվեց նրանց փոխադարձ եղբայրական օգնությունը։ Դրանք իրենց արտահայտությունը գտան այնպիսի մեծ կառուցումների իրագործման մեջ, ինչպիսին Ուզբեկստանի Մեծ Ֆերգանայի ջրանցքի և բազմաթիվ այլ գյուղատնտեսական օբյեկտների կառուցումն է, որին մասնակցեցին ՍՍՌՄ-ի բազմաթիվ ժողովուրդների ներկայացուցիչներ։ ՍՍՌՄ ժողովուրդների եղբայրական համագործակցության հիմքում ընկած են արտադրողական ուժերի սոցիալիստական տեղաբաշխման հսկայական առավելությունները կապիտալիստականի համեմատությամբ։ Այդ տեղաբաշխումը ապահովում է մեծ և փոքր ազգությունների տնտեսական զարգացման անհամաչափությունն ու հակասությունների լիակատար վերացումը, ստեղծելով լայն հնարավորություններ նրանց արագ զարգացման և բազմակողմանի տնտեսական համագործակցության համար։

Նախապատերազմյան հնգամյակները, որոնք մշակված էին պարտիայի դիրեկտիվների հիման վրա, արտացոլում էին նրա լենինյան ազգային քաղաքականությունը և ապահովում ՍՍՌՄ ժողովուրդների անհավասարության վերացումը։ Հենց այդ շրջանում էլ վերացվեց անցյալում հետամնաց ժողովուրդների տնտեսական, քաղաքական և կուլտուրական հետամնացությունը, նրանց միջև գոյություն ունեցող անհավասարությունը։ Դրա ապացույցը միութենական ռեսպուբլիկաների արդյունաբերության արագ զարգացումն է։

Ինչպես նախապատերազմյան, այնպես էլ հետպատերազմյան ժամանակաշրջանում մի շարք ազգային ռեսպուբլիկաների արդյունաբերությունը զարգանում է ավելի արագ, քան ամբողջովին վերցրած ՍՍՌՄ-ում։ Օրինակ, եթե հետպատերազմյան առաջին հնգամյակում ՍՍՌՄ-ում արդյունաբերական արտադրանքի ծավալը նախապատերազմյան մակարդակը գերազանցեց 73 տոկոսով, ապա Էստոնիայում այն գերազանցեց 3, Հայաստանում և Մոլդավիայում՝ 2,5, Լատվիայում և Ղազախստանում՝ 2 անգամ և այլն։

Միութենական ռեսպուբլիկաների արդյունաբերության արագ զարգացումը պարզ երևում է հետևյալ աղյուսակից։

Միութենական ռեսպուբլիկաներում արդյունաբերության զարգացման հիմնական ցուցանիշները
*(Ամբողջ արդյունաբերության համախառն արտադրանքը 1913 թ.= 1-ի)*

| | 1928 թ. | 1940 թ. | 1956 թ. | 1959 թ. |
|---|---|---|---|---|
| ՌՍՖՍՌ | 1.4 | 8.7 | 30 | 39 |
| Ուկրաինական ՍՍՌ | 1.2 | 7.3 | 18 | 24 |
| Բելոռուսական ՍՍՌ | 1.4 | 8.1 | 22 | 31 |
| Ուզբեկական ՍՍՌ | 0.9 | 4.7 | 14 | 18 |
| Ղազախական ՍՍՌ | 1.0 | 7.9 | 35 | 50 |
| Վրացական ՍՍՌ | 1.3 | 10.0 | 29 | 38 |
| Ադրբեջանական ՍՍՌ | 1.3 | 5.9 | 13 | 15 |
| Լատվիական ՍՍՌ | — | — | 5,7 | 9,1 |
| Մոլդավական ՍՍՌ | — | — | 5.6 | — |
| Լիտվական ՍՍՌ | — | — | 6.7 | 9,7 |
| Կիրգիզական ՍՍՌ | 1.9 | 9.9 | 42 | 55 |
| Տաջիկական ՍՍՌ | 1.0 | 8.8 | 27 | 35 |
| Հայկական ՍՍՌ | 1.0 | 8.7 | 45 | 61 |
| Թուրքմենական ՍՍՌ | 1.1 | 6,7 | 17 | 21 |
| Էստոնական ՍՍՌ | — | — | 7,5 | 10 |



ՄԱԿ-ի Գլխավոր Ասամբլեայի 15-րդ սեսիայում ունեցած ելույթում Ն. Ս. Խրուշչովը հետաքրքիր թվեր բերեց ժողովուրդների բարեկամության դրոշի ներքո սովետական ավտոնոմ ռեսպուբլիկաների ձեռք բերած հաջողությունների մասին։ Այսպես, 1913 թվականից մինչև 1960 թվականը ներառյալ Կոմի ավտոնոմ ռեսպուբլիկայում խոշոր արդյունաբերության արտադրանքը ավելացել է 109 անգամ, Թաթարականում՝ 147 անգամ, Բաշկիրականում՝ 163 անգամ։

Անցյալում տնտեսապես հետամնաց ազգությունների նման արագ զարգացումը Կոմունիստական պարտիայի ազգային քաղաքականության իսկական տրիումֆն է։ Այդ բանը հնարավոր դարձավ շնորհիվ ՍՍՌՄ ժողովուրդների աճող եղբայրական համագործակցության և անշահախնդիր օգնության։

ՍՍՌՄ ժողովուրդների եղբայրական համագործակցությունը ավելի ամրապնդվեց... 

ՍՍՌՄ ժողովուրդների եղբայրական համագործակցությունը ավելի դրսևորվեց Հայրենական Մեծ պատերազմի տարիներին, երբ նրանց տնտեսական և մյուս բոլոր ռեսուրսներն ամբողջապես ի սպաս դրվեցին մեր Հայրենիքի անկախության ու ազատության պաշտպանման նպատակին։

Սոցիալիստական ազգերի տնտեսական սերտ համագործակցության օրինակ է հանդիսանում նաև ազգային ռեսպուբլիկաների մասնակցությունը պատերազմից տուժած շրջանների տնտեսության վերականգնմանը։ Սովետական Միության բոլոր ժողովուրդները մասնակցեցին Ստալինգրադի ու Լենինգրադի, Սևաստոպոլի ու Օդեսայի և պատերազմի հետևանքով տուժած մյուս քաղաքների վերականգնմանը։

Հայտնի է, օրինակ, որ Դոնբասի վերականգնման գործին մասնակցեց նաև Հայկական ՍՍՌ-ն։ Միայն 1945 թվականի մայիսին Սովետական Հայաստանն ուղարկեց 69 վագոն ցեմենտ, 500 հազար ռուբլու գույքա-տրիկոտաժային գործվածք, 55 հազար մետր կտոր և երեք վագոն կարբիտ. իսկ 1945 թվականի հունիս, հուլիս և օգոստոս ամիսներին՝ 334 վագոն ցեմենտ և մեծ քանակությամբ տարբեր տեսակի շինանյութ (տես ՍՄԿՊ Կենտկոմին կից Մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի Հայկական ֆիլիալի պարտարխիվ, ֆ. 1, գ. 88, թ. 58)։ Սովետական բոլոր ժողովուրդների եղբայրական օգնության շնորհիվ Դոնբասի քարածխային արդյունաբերությունը վերականգնվեց ժամկետից շուտ։ Սովետական ժողովուրդների եղբայրական համագործակցությունը և փոխօգնությունը ՍՍՌՄ-ին անհաղթահարելի ուժ են հաղորդում և նպաստում կոմունիստական շինարարության տեմպերի արագացմանը։

ՍՍՌՄ սոցիալիստական ազգերի տնտեսական համագործակցությունն անհամեմատ լայն ծավալ և բազմակողմանի բնույթ ստացավ հետպատերազմյան շրջանում։ Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը մշակեցին մեր երկրում կոմունիզմի կառուցման հոյակապ ծրագիրը և կոչ արեցին ՍՍՌՄ-ի բոլոր աշխատավորներին, բոլոր եղբայրական ժողովուրդներին՝ ի հայտ բերելու իրենց ամբողջ ստեղծագործական կարողությունը այդ ծրագիրն իրագործելու համար։ Յուրաքանչյուր Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկա իր ավանդն է ներդնում կոմունիստական շինարարության համաժողովրդական գործում։ Այդ տեսակետից հատկանշական են այնպիսի համաժողովրդական կառուցումներ, ինչպիսիք են՝ Վ. Ի. Լենինի անվան Վոլգա—Դոն ջրանցքը, Վոլգա գետի վրա կառուցված խոշոր հիդրոէլեկտրակայանները։ 350 քաղաքներում և այլ բնակավայրերում գտնվող մոտ 1000 սովետական արդյունաբերական ձեռնարկություններ այդ կառուցումնե-

րին մատակարարում էին անհրաժեշտ նյութեր, մեխանիզմներ և զանազան
սարքավորում։ Մեր երկրի այդ հզոր հիդրոտեխնիկական կառուցումների շի-
նարարությանը ակտիվ մասնակցություն ունեցավ նաև Հայաստանի աշխա-
տավորությունը։

Հայկական ՍՍՌ-ի արդյունաբերական ձեռնարկությունները այդ կա-
ռույցներն ուղարկեցին տարբեր սարքավորումներ և նյութեր։

Մեր երկրի բոլոր խոշորագույն կառույցներում ակտիվ մասնակցություն
են ցուցաբերում Սովետական Միության բոլոր ազգությունների ներկայա-
ցուցիչները։ ՍՍՌՄ ժողովուրդների փոխադարձ օգնությունը դրսևորվում է
յուրաքանչյուր սովետական ռեսպուբլիկայի տնտեսական շինարարության
բնագավառում։ Այսպես, օրինակ, Հայաստանի խոշորագույն հիդրոէլեկտրա-
կայանի՝ Գյումուշի և Ղարադաղ—Երևան գազամուղի կառուցմանը հայերից
բացի մասնակցում էին սովետական երկրի տարբեր ազգությունների շատ ու
շատ ներկայացուցիչներ՝ ռուսներ, ուկրաինացիներ, բելոռուսներ, ադրբեջան-
ցիներ, վրացիներ, թաթարներ և ուրիշներ։ Մեր Միության բոլոր ժողովուրդ-
ների ջանքերով կառուցվեցին նաև Ռուսթավիի մետալուրգիական գործարա-
նը, Կախովկայի հիդրոէլեկտրակայանը և այլն։

Ազգային ռեսպուբլիկաների արտադրողական ուժերի բուռն զարգացումը
ո՛չ միայն հետևանք է ՍՍՌՄ ժողովուրդների աճող տնտեսական համագոր-
ծակցության, այլև անհրաժեշտ նախապայման է այդ համագործակցության
ավելի լայն ծավալման համար։ Յուրաքանչյուր սովետական ռեսպուբլիկայի
համաժողովրդական կառուցումներին հարաճուն մասնակցությունը դրա լա-
վագույն ապացույցն է։

Կոմունիզմի կառուցումը նախատեսում է ՍՍՌՄ-ի բոլոր ժողովուրդների
տնտեսության բազմակողմանի զարգացում և բոլոր ազգային ռեսպուբլիկա-
ների արտադրողական ուժերի հետագա վերելք։

Սովետական Միությունում արտադրողական ուժերի տեղաբաշխումը
բխում է հետևյալ խնդրից. ազգային ռեսպուբլիկաները տնտեսապես և կուլ-
տուրապես հասցնել երկրի առաջավոր շրջանների մակարդակին։

Բոլոր ազգային ռեսպուբլիկաներում, ինչպես և Սովետական Միության
տարբեր տնտեսական շրջաններում գոյություն ունեն արդյունաբերական և
գյուղատնտեսական այնպիսի ճյուղեր, որոնք սպասարկում են ո՛չ միայն
առանձին մարզերի, այլև ամբողջ երկրին։

Սովետական Միության տարբեր շրջանների ու ազգային ռեսպուբլիկա-
ների տնտեսության առաջատար ճյուղերի մասնագիտացումը և կոոպերա-
ցումը ապահովում է նրանց միջև աշխատանքի բաժանում, որը հանդիսանում
է ՍՍՌՄ-ի բոլոր ժողովուրդների տնտեսական փոխօգնության իրականացման
կարևորագույն ուղիներից մեկը։ Տնտեսական սերտ փոխօգնության միջոցով
է իրականացվում կոմունիստական շինարարությունը ազգային բոլոր ռես-
պուբլիկաներում։ Սոցիալիստական ազգերի տնտեսական համագործակցու-
թյան ամրապնդմանը մեծ չափով նպաստում են նաև ազգային ռեսպուբլի-
կաների ժողովրդական տնտեսության առանձին ճյուղերի մասնագիտացումը
և կոոպերացումը։ Այսպիսով, սովետական ռեսպուբլիկաների տնտեսական
սերտ համագործակցությունը խարսխված է այդ ռեսպուբլիկաների բնական
ու տնտեսական ռեսուրսների ճիշտ ու բազմակողմանի օգտագործման միջոցով
նրանց արտադրական մասնագիտացման վրա։ Ամեն մի սովետական ռես-



պուբլիկա այժմ ունի իր որոշակի տեղը աշխատանքի համամիութենական
բաժանման մեջ թե՛ արդյունաբերության և թե՛ գյուղատնտեսության գծով։
Սովետական Հայաստանը արդյունաբերության գծով աշխատանքի համա-
միութենական բաժանման մեջ իր տեղն է գրավում ծանր արդյունաբերու-
թյան այնպիսի ճյուղերի զարգացման ուղղությամբ, ինչպիսիք են՝ գունավոր
մետալուրգիայի, քիմիական, էլեկտրամեքենաշինական և սարքաշինական,
ինչպես և թեթև ու սննդի արդյունաբերության բազմաթիվ կարևոր ճյուղեր։

Սոցիալիստական ազգերի տնտեսական համագործակցությունն իր վառ
արտահայտությունն է գտնում նաև Սովետական Միության բոլոր ազգային
ռեսպուբլիկաների գյուղատնտեսության զարգացման և մասնագիտացման
գործում։ Հայտնի է, օրինակ, Ուզբեկական ՍՍՌ-ի, որպես ՍՍՌՄ հիմնական
բամբակագործական շրջանի, առաջնակարգ դերը։ Լենինի շքանշանակիր Ուզ-
բեկական ՍՍՌ-ն արտադրում է այնքան բամբակ, ինչքան Բրազիլիան, Պա-
կիստանը, Թուրքիան և Իրանը միասին վերցրած։ Ուզբեկստանի բամբակա-
գործների նվաճումները արդյունք են ո՛չ միայն ուզբեկ ժողովրդի աշխատան-
քային սխրագործությունների, այլև այն մեծ օժանդակության, որ նրանք
ստանում են ՍՍՌՄ մյուս ժողովուրդներից։ Բամբակի բարձր բերքի համար
մղվող պայքարում, արդյունաբերական ու գյուղատնտեսական արտադրանքի
հետագա աճի և կուլտուրական շինարարության գործում Ուզբեկական ռես-
պուբլիկայի հաջողությունների մեջ մարմնավորված է ՍՍՌՄ-ի ժողովուրդնե-
րի եղբայրական համագործակցության հզորությունը։

Ինչպես արդյունաբերության, այնպես էլ գյուղատնտեսության բնագա-
վառում տարբեր ազգությունների ներկայացուցիչների համատեղ աշխատան-
քը ժողովուրդների տնտեսական համագործակցության վառ արտահայտու-
թյուններից մեկն է։ Լավ օրինակ կարող է ծառայել Բելոռուսիայի, Լիտվայի
և Լատվիայի սահմանագլխում ապրող կոլտնտեսականների ընդհանուր ուժե-
րով կառուցված «Ժողովուրդների բարեկամություն» միջկոլտնտեսային հիդ-
րոէլեկտրակայանը, որի շինարարական աշխատանքներին մասնակցել են
նաև մյուս ռեսպուբլիկաների ու մարզերի աշխատավորները։ Ուրալի աշխա-
տավորները «Ժողովուրդների բարեկամություն» կայանի շինարարության հա-
մար ուղարկեցին տուրբիններ, մոսկվացիները՝ ավտոմեքենաներ, լենինգրադ-
ցիները՝ տրակտորներ, բելոռուսները՝ ինքնաթափ մեքենաներ, ադրբեջանցի-
ները՝ բենզին, լատվիացիներն ու լիտվացիները՝ մոտորներ, էստոնացիները՝
ցեմենտ և այլն։

Սիր-Դարիայի վրա կառուցված «Ժողովուրդների բարեկամություն» Կա-
րա-Կումի հիդրոէլեկտրակայանի շինարարությանը մասնակցել են 37 ազգու-
թյունների ներկայացուցիչներ։ Այդտեղ ստեղծված Կարակումյան ջրամբարը
հնարավորություն կտա ոռոգելու Ուզբեկստանի, Տաջիկստանի և Ղազախս-
տանի 400 հազար հեկտարից ոչ պակաս խոպան և անջրդի հողեր։

Սովետական ժողովուրդների տնտեսական սերտ համագործակցության
մասին են վկայում նաև խոպան հողերի յուրացման աշխատանքները։ Այդ
համաժողովրդական գործը իրականացվեց սոցիալիստական ազգերի սերտ
համագործակցությամբ։ Առանց այդպիսի համագործակցության անհնարին
կլիներ երեք տարում մշակել 36 միլիոն հեկտար խամ ու խոպան հողեր։

Միայն Ղազախստանի խամ և խոպան հողերը յուրացնելու համար
ՍՄԿՊ-ի կոչով եղբայրական մյուս ռեսպուբլիկաներից Ղազախստան մեկնե-

ցին ավելի քան 600 հազար սովետական հայրենասեր մեխանիզատորներ, շինարարներ, գյուղատնտեսության մասնագետներ և այլ աշխատողներ։ Բերված օրինակները ցույց են տալիս, որ սոցիալիստական ազգերի սերտ համագործակցությունը վճռական գործոն է Սովետական Միության գյուղատնտեսության զարգացման համար։

Մեր երկրի բոլոր ժողովուրդների մեծագույն նվաճումները տնտեսական ու կուլտուրական շինարարության բնագավառում հնարավոր դարձան ռուս մեծ ժողովրդի անշահախնդիր, եղբայրական օգնության շնորհիվ։

Մոսկվայի մարզի գործարանները կատարում են Հայաստանի արդյունաբերական ձեռնարկությունների բազմաթիվ պատվերներ։ Հայաստանը, իր հերթին, Մոսկվայի քիմիական գործարաններին մատակարարում է տարբեր լաքեր, ներկեր և քիմիկատներ։ Սովետական Հայաստանի արդյունաբերական ձեռնարկությունները ներկայումս ավելի քան 100 տեսակի արտադրանք են արտահանում 14 միութենական ռեսպուբլիկաներ և 36 արտասահմանյան երկրներ։

Սովետական ժողովուրդների եղբայրական փոխհարաբերության և տնտեսական համագործակցության ցայտուն արտահայտությունն է սոցիալիստական մրցությունը, որը մեր երկրի տնտեսական զարգացման շարժիչ ուժերից մեկն է։

Ռեսպուբլիկաների, մարզերի և շրջանների միջև ծավալվող սոցիալիստական մրցությունը ամրապնդում է ՍՍՌՄ-ի ժողովուրդների տնտեսական համագործակցությունն ու բարեկամությունը։ Այդպիսի համագործակցության և փոխօգնության փայլուն օրինակ է Դոնբասի և Կուզբասի ածխահատների երկարամյա սոցիալիստական մրցությունը և ղազախական քարածխի ավազանի՝ Կարագանդայի ածխահատներին մրցակիցների ցուցաբերած օգնությունը։

Արդեն մի քանի տարի է, ինչ Հայկական ՍՍՌ-ի Սանահին կայարանի շոգեքարշային դեպոյի կոլեկտիվը մրցում է Վրաստանի Գուրջիանի կայարանի և Ադրբեջանի Աղստաֆայի շոգեքարշայինների հետ։ Օրըստօրե ավելի է ամրապնդվում երեք ռեսպուբլիկաների շոգեքարշայինների բարեկամությունը։ Նրանց ներկայացուցիչները փորձի փոխանակման նպատակով հաճախ են փոխայցելություններ կատարում, հանրագումարի բերում մրցության արդյունքները և համատեղ ուսումնասիրում երկաթուղային տրանսպորտի առաջավորների աշխատանքային մեթոդները։

Սոցիալիստական ազգերի տնտեսական համագործակցությունն իր առավել բարձր արտահայտությունն է գտնում սոցիալիստական մրցության այն թափի մեջ, որը ծավալվել է բոլոր ազգային ռեսպուբլիկաներում, գյուղատնտեսության զարգացման շեշտակի վերելքի նպատակով։

Սոցիալիստական մրցությունը գնալով ավելի լայնորեն է ծավալվում Ռուսաստանի Ֆեդերացիայի և Ուկրաինայի կոլտնտեսությունների միջև։ Արդեն 20 տարուց ավելի է, ինչ Ուկրաինան և Վրաստանը սոցիալիստական մրցության մեջ են մտել իրար հետ։ Սոցիալիստական փոխօգնությունը, փորձի փոխանակումը նրանց մոտ տրադիցիա են դարձել։

Ժողովուրդների բարեկամության դրոշի ներքո է կազմակերպվել Ուզբեկստանի, Թուրքմենիայի, Տաջիկստանի, Ադրբեջանի և Հայաստանի եղբայրական ռեսպուբլիկաների բամբակագործների սոցիալիստական մրցությունը։



Եղբայրական ռեսպուբլիկաների սոցիալիստական մրցության արդյունքն է նաև այն, որ տաջիկ բամբակագործների կողմից առաջին անգամ լայն կիրառում գտած բամբակի ցանքի քառակուսի-բնային եղանակը արագ կերպով տարածվեց բոլոր բամբակացան ռեսպուբլիկաներում։

Լայն մրցություն է ծավալվել տարբեր ռեսպուբլիկաների կոմունիստական աշխատանքի բրիգադայի կոչման համար պայքարող կոլեկտիվների միջև։ Այդ տեսակետից լավ օրինակ է Ալավերդու պղնձաքիմիական կոմբինատի և Մոսկվայի պղնձաէլեկտրոլիզի գործարանի կոլեկտիվների բարեկամությունն ու սոցիալիստական մրցությունը։ Սոցիալիստական Աշխատանքի Հերոս Վալենտինա Գագանովայի նախաձեռնությունը լայնորեն տարածվեց ազգային բոլոր ռեսպուբլիկաներում։ Սովետական Հայաստանում նրա օրինակին հետևում են արտադրության ավելի քան 70 առաջավորներ, դրանց թվում՝ Կիրովականի կարի ֆաբրիկայի ագրեգատի վարպետ Դ. Մանուկյանը, Լենինականի գործվածքային ֆաբրիկայի ջուլհակուհի Էմմա Կարապետյանը և ուրիշներ։

Սովետական ժողովուրդների տնտեսական համագործակցության ամրապնդման գործում մեծ դեր է կատարում ժողովրդական տնտեսության համամիութենական ցուցահանդեսը, որը վերածվել է իսկական համաժողովրդական համալսարանի։

Այդ ցուցահանդեսը, ինչպես նաև Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության բոլոր մյուս կարևոր միջոցառումները ցույց են տալիս, որ ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառներում ծավալված սոցիալիստական մրցությունը և ՍՍՌՄ ժողովուրդների աշխատանքային համագործակցությունը կարևոր գործոններ են հանդիսանում դեպի կոմունիզմ տանող մեր հասարակության զարգացման գործում։

Վերջին տարիներին միութենական ռեսպուբլիկաների էկոնոմիկայի առավել արագ զարգացումը զգալի չափով բարձրացրեց ամբողջ Միության արդյունաբերական արտադրանքի մեջ ռեսպուբլիկական արդյունաբերության բաժնի տեսակարար կշիռը և օրակարգի հարց դարձրեց ժողովրդական տնտեսության ղեկավարման բարելավման գործը։ ՍՍՌՄ Գերագույն Սովետի վեցերորդ սեսիան (1957 թ. փետրվար), ելնելով ՍՄԿՊ XX համագումարի պատմական որոշումներից, նպատակ ունենալով բարելավել ժողովրդական տնտեսության պլանավորումը և հաշվի առնելով միութենական ռեսպուբլիկաների պահանջները, համաձայն նրանց տնտեսական, ազգային և այլ առանձնահատկությունների, որոշեց ստեղծել ՍՍՌՄ Գերագույն Սովետի Ազգությունների Սովետի տնտեսական հանձնաժողով։ Ազգությունների Սովետի դեպուտատների կողմից ընտրված տնտեսական հանձնաժողովը՝ բաղկացած նախագահից և 30 անդամից (երկուական ներկայացուցիչ յուրաքանչյուր միութենական ռեսպուբլիկայից), հանդիսանում է ՍՍՌՄ-ի ժողովուրդների լայն ներկայացուցչական օրգանը։

Տնտեսական հանձնաժողովի ստեղծումը համապատասխանում է ՍՄԿՊ-ի լենինյան ազգային քաղաքականության պահանջներին և ամրապնդում սովետական ժողովուրդների տնտեսական համագործակցությունը։ Արդեն 1959 թվականին միութենական ռեսպուբլիկաների Մինիստրների Սովետների ենթակայության ձեռնարկությունները տվեցին ՍՍՌՄ-ի ամբողջ արդյունաբերության արտադրանքի 94 տոկոսը։

*ՍՍՌՄ սոցիալիստական ազգերի համագործակցությունը տնտեսական բնագավառում իրականանում է միասնական տնտեսական սիստեմում նրանց փոխօգնության պրոցեսում, կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծման համար բոլոր ռեսպուբլիկաների արտադրողական ուժերի մոբիլիզացման միջոցով։*

*Կոմունիստական շինարարության և ժողովուրդների տնտեսական սերտ համագործակցության պայմաններում վերանում են ազգային նախապաշարումները և նրանց մնացուկները, ամրապնդվում ու զարգանում են ազգամիջյան նոր հարաբերություններ՝ բարեկամության ու անշահախնդիր փոխօգնության հարաբերություններ։*

*Սոցիալիստական ազգերի տնտեսական համագործակցությունը ՍՍՌՄ-ում օրինակ է ծառայում համաշխարհային սոցիալիստական սիստեմի մյուս երկրների համար։ Մեր օրինակով իրականանում է սոցիալիստական լագերի պետությունների տնտեսական համագործակցությունը, հանուն այդ երկրների ժողովրդական տնտեսության հաջող զարգացման, գիտության ու տեխնիկայի վերելքի և աշխատավորության կենսամակարդակի անշեղ աճման։*

*Լիակատար իրավահավասարության և սոցիալիստական փոխօգնության վրա հիմնված սոցիալիստական պետությունների բազմակողմանի համագործակցությունը հնարավորություն է տալիս առավելապես օգտագործելու տնտեսության համաշխարհային սիստեմի առավելությունները յուրաքանչյուր սոցիալիստական երկրի արտադրողական ուժերի զարգացման և, ամբողջովին վերցրած, սոցիալիստական լագերի տնտեսական հզորության ամրապնդման համար։*

*Տնտեսական փոխօգնության Խորհրդի ստեղծումն ու նրա հաջող գործունեությունը սոցիալիստական պետությունների եղբայրական փոխօգնության և համագործակցության զարգացման ասպարեզում մեծ ավանդ է։*

*Սովետական Միության և ժողովրդական դեմոկրատիայի երկրների փորձը բազմակողմանիորեն ապացուցում է, թե ինչպիսի հսկայական նշանակություն ունի սոցիալիստական ազգերի տնտեսական համագործակցությունը՝ հանուն համաշխարհային սոցիալիստական սիստեմի հետագա զարգացման։*

*Որքան ամուր լինի սովետական ժողովուրդների տնտեսական համագործակցությունը, բարոյա-քաղաքական միասնությունը, այնքան մեր ժողովուրդը հաջող և արագ կլուծի կոմունիզմի կառուցման կենսական խնդիրները։*

---

# ՆՈՐ ՄԱՐԴՈՒ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ

## Ս. ԱՄԻՐՅԱՆ

*Սովետական ժողովուրդը հաջողությամբ կենսագործում է կոմունիստական շինարարության հոյակապ խնդիրները։ Պայքարը կոմունիզմի հաղթանակի համար կենսականորեն առաջադրում է սովետական մարդու բազմակողմանի ու ներդաշնակ զարգացման պահանջը։ Ահա թե ինչու այժմ մեր երկրում կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծման զուգընթաց լայն պայքար է ծավալվում ապագայի մարդու՝ բարձր գիտակցականությամբ, բարոյական վեհ սկզբունքներով ու ամենամարդկային առաքինություններով օժտված, գիտության, կուլտուրայի ու արվեստի նվաճումները յուրացրած մարդու ձևավորման համար։*

*«Մենք այժմ լուծում ենք պատմական երկու խնդիր՝*

*Կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծումը և նոր մարդու դաստիարակությունը։ Դա ըստ էության միասնական պրոցես է։ Եթե մենք ետ մնանք սովետական մարդու կրթության ու դաստիարակության գործում, ապա անխուսափելիորեն կարգելակվի կոմունիզմի կառուցման ամբողջ գործը»* (Ն. Ս. Խրուշչով, ուսուցիչների համառուսաստանյան համագումարում արտասանած ճառից):

*Հիրավի, դեպի կոմունիզմ սովետական հասարակության զարգացման պատմական պրոցեսի այդ երկու կողմերը՝ գտնվելով դիալեկտիկական միասնության մեջ, փոխադարձաբար պայմանավորում են միմյանց։ Նախ, առանց համապատասխան նյութական բազայի հնարավոր չէ դնել սովետական մարդու համակողմանի զարգացումն ապահովելու խնդիրը։ Տնտեսական կյանքի բուռն վերելքի շնորհիվ այժմ մեր երկրում ստեղծվում են ժողովրդի կենսամակարդակի նշանակալի բարձրացման և նյութական բարիքների այնպիսի առատության նախադրյալներ, որ անհրաժեշտ են «հասարակության բոլոր անդամների լիակատար բարեկեցությունը և ազատ համակողմանի զարգացումն ապահովելու համար»* (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 6, էջ 53)։

*Կոմունիստական հասարակարգի նյութա-տեխնիկական բազան ստեղծելու, մեր լուսեղեն ապագան կերտելու մասին խոսք լինել չի կարող, եթե չլինի կոմունիզմի գործին գաղափարապես նվիրված, գիտության ու տեխնիկայի ժամանակակից նվաճումներին տիրապետող, բարձր կուլտուրայով, առողջ և ուժեղ կամքի տեր սովետական մարդը։ Այդպիսի մարդը ծնվում է այսօր։*

*Կոմունիզմը բերում է ոչ միայն նյութական բարիքների առատություն, այլև այդ բարիքներն ստեղծող մարդկանց համակողմանի զարգացում, նրանց*

հոգևոր կյանքի հարստացում։ Այդ զարգացումը ոչ այնքան կուլտուրական, որքան սոցիալական պրոցես է։ Բանն ամենևին կրթված լինելու, կամ հարուստ գիտելիքներ ունենալու մեջ չէ։ Այդպիսի մարդիկ կան նաև կապիտալիստական հասարակարգում։ Բայց նրանցից ամենալուսավորյալն անգամ իրոք հոգով աղքատ է։ Կապիտալիստական հասարակարգի բարոյականությունը էգոիստ է դաստիարակում, որի համար թանկ է միայն իր բարեկեցությունը։

Միայն սոցիալիզմի երկրներում է, որ բարոյական նոր սկզբունքների հաղթանակով պայմաններ են ստեղծվում անհատի լիակատար ծաղկման համար։ Այստեղ արդեն մարդու համակողմանի զարգացումը միաժամանակ նշանակում է բարոյական աճ, հոգևոր կյանքի հարստացում։ Սոցիալիզմի պայմաններում անհատի բազմակողմանի զարգացումն ընթանում է այն նշանաբանով, որպեսզի հասարակության յուրաքանչյուր անդամի գործունեությունը նպաստի համընդհանուր բարօրությանը, հայրենիքի բարգավաճմանը, ժողովուրդների միջև բարեկամության ամրապնդմանը։ Իսկ դրա համար օբյեկտիվ նախադրյալներ է ստեղծում սոցիալիստական հասարակարգը։ Միաժամանակ կարևոր ու վճռական դեր է խաղում սուբյեկտիվ գործոնը, մարդու մտավոր աշխարհի հարստացումը։ Մեր երկրի առաջընթացի ներկա էտապում ստեղծվում են բոլոր պայմանները սովետական մարդու համակողմանի զարգացման, նրա բարոյական կերպարի հետագա կատարելագործման համար։

Այժմ տեսնենք որոնք են այդ զարգացման ուղիներն ու պայմանները։

* * *

Մարդու մտավոր աճի գործում կարևոր դեր է խաղում այն հանգամանքը, թե նա ինչ աշխարհայացք ունի։ Երբ մարդը ճիշտ է ըմբռնում հասարակական զարգացման հարցերը, կյանքը նրա համար մեծ իմաստ է ձեռք բերում։ Նա արդեն չի սահմանափակվում միայն այսօրվա հոգսերով, այլև ցանկանում է վերակերտել կյանքը և պայքարի մեջ է մտնում վաղվա համար։ Այդ տեսակետից սովետական մարդկանց բազմակողմանի զարգացման, նրանց կոմունիստական բարոյականության ոգով դաստիարակելու գործում վճռական նշանակություն ունի մարքսիստական-լենինյան աշխարհայացքը։ Մարքսիզմ-լենինիզմի յուրացման շնորհիվ մեր երկրի աշխատավորները ճիշտ են ըմբռնում հասարակական զարգացման օրինաչափությունները, ծավալում են իրենց ստեղծագործական ուժերը հանուն մարդկության պայծառ ապագայի՝ կոմունիզմի։

Մեր երկրում կոմունիզմ կառուցող մարդու հասարակական-քաղաքական ու գաղափարական աճի համար կան լայն հնարավորություններ։

Բարձրագույն ուսումնական հաստատություններում դասավանդվում են հասարակական գիտություններ։ Նոր ուսումնական տարվանից միջնակարգ դպրոցների բարձր դասարաններում և տեխնիկումներում մտցվելու է հանրամատչելի նոր դասընթաց՝ քաղաքական գիտելիքների հիմունքները, նպատակ ունենալով երիտասարդության ավելի խոր կերպով ծանոթացնել կոմունիստական շինարարության կարևորագույն խնդիրներին։ Բացի ուսումնական հաստատություններից, սովետական մարդը հնարավորություն ունի յուրացնել մարքսիզմ-լենինիզմը, բարձրացնել իր գաղափարական-քաղաքական մա-



կարդակը՝ հասարակական կարգով կազմակերպված քաղաքական ուսուցման բազմաճյուղ սիստեմում։

Աշխատավորության քաղաքական ուսուցման գործում որոշակի դեր է խաղում դասախոսական պրոպագանդան։

Այսօր մեր երկրում կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծումը կենսական խնդիր է դարձրել ոչ միայն արտադրողական ուժերի արագ զարգացման անհրաժեշտության ըմբռնումը, այլև արտադրությունը վարելու հմտություն ձեռք բերելը։ Ահա թե ինչու սովետական մարդիկ ձգտում են տիրապետել տնտեսագիտության հիմունքներին, արտադրության զարգացման գաղտնիքներին։ Գործարաններում, ֆաբրիկաներում, կոլտնտեսություններում, սովխոզներում և հիմնարկներում կազմակերպված խմբակներում նրանք ուսումնասիրում են արդյունաբերության ու գյուղատնտեսության կոնկրետ էկոնոմիկան, այն սերտորեն կապելով իրենց արտադրության գործնական խնդիրների հետ։ Փորձը ցույց է տալիս, որ դա հսկայական չափով նպաստում է արտադրության վերելքին։

Մեր քաղաքական-գաղափարական ամբողջ աշխատանքի գլխավոր խնդիրն է՝ նպաստել մասսաների աշխատանքային ու հասարակական-քաղաքական ակտիվության, նրանց կոմունիստական գիտակցականության բարձրացմանը, յոթնամյա պլանը ժամկետից շուտ կատարելու համար բոլոր աշխատավորների ուժերի մոբիլիզացմանը։ Կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանի պահանջների հիման վրա սովետական մարդու քաղաքական ուսուցումը կազմակերպելու հստակ ծրագիր տվեց պարտիայի Կենտրոնական Կոմիտեի այս տարվա հունվարի 9-ի «Արդի պայմաններում պարտիական պրոպագանդայի խնդիրների մասին» որոշումը։ Այստեղ ընդգծվում է, որ այժմ հիմնական ուշադրությունը պետք է դարձնել տնտեսագիտական գիտելիքների պրոպագանդման, սոցիալիստական արտադրության զարգացման օրենքների ուսումնասիրման, կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծման հարցերին։

Քաղաքական ուսուցման ներկա դրվածքը սովետական մարդուն ոչ միայն ուղղում է ակտիվ ու նպատակասլաց գործունեության, այլև նպաստում է ընդլայնելու նրա աշխարհայացքը, ավելի խոր ըմբռնելու արդի հասարակական կյանքը, նրա շարժման ու զարգացման օրենքները։

* * *

Քաղաքական ուսուցման նպատակն է ունկնդիրներին պարզ ու որոշակի գիտելիքներ տալ և նպաստել նոր աշխարհի կերտման արագացմանը։ Եվ որպեսզի այդ նոր աշխարհը կառուցվի, ճիշտ ու գիտական աշխարհայացքից, քաղաքական հարուստ գիտելիքներից բացի սովետական մարդուն հարկավոր են նաև մասնագիտական գիտելիքներ։ Ներկայումս մեր երկրի ժողովրդական տնտեսության մեջ աշխատում են ավելի քան 13 միլիոն մասնագետ։ Այս բնագավառում մեր երկիրն աշխարհում գրավում է առաջին տեղը։ Սովետական մարդկանց մասնագիտական պատրաստության հիմնական միջոցը ստացիոնար ու հեռակա կրթության սիստեմն է։ Ավելի քան 50 միլիոն մարդ ընդգրկված են ուսուցման տարբեր ձևերի մեջ։ 1959 թվականին Սովետական Միությունում 10 հազար բնակչին ընկնում էր բուհի 107 ուսանող և-

մասնագիտական տեխնիկումի 90 սովորող, որն ավելի է, քան աշխարհի որևէ այլ երկրում։ Հենց վերցնենք մեր ռեսպուբլիկայի՝ Սովետական Հայաստանի օրինակը, որը բնակչության 10 հազար շնչին ընկնող ուսանողների թվով գերազանցել է ամենազարգացած կապիտալիստական երկրների, այդ թվում՝ ԱՄՆ-ի մակարդակը։ Աճող սերնդի բազմակողմանի զարգացումն ապահովելու, կոմունիզմի առավել ակտիվ կառուցողներ պատրաստելու գործում հսկայական նշանակություն ունի դպրոցական սիստեմի տեղի ունեցող վերակառուցումը մեր երկրում։ Նոր ձևով հանրակրթական-միջնակարգ մասնագիտական և բարձրագույն ուսուցման կազմակերպումը նշանակում է կրթությունը արտադրողական աշխատանքի հետ շաղկապելու մասին լենինյան այն դրույթի պրակտիկ կենսագործում, որ «Չի կարելի պատկերացնել ապագա հասարակության իդեալը, առանց ուսուցումը միացնելու երիտասարդ սերնդի արտադրողական աշխատանքի հետ. ոչ ուսուցումն ու կրթությունն առանց արտադրողական աշխատանքի, ոչ արտադրողական աշխատանքն առանց զուգահեռ ուսուցման ու կրթության, չեն կարող դրվել այն բարձրության վրա, որ պահանջում են տեխնիկայի արդի մակարդակը և գիտական իմացության վիճակը»։

Սովետական դպրոցի վերակառուցման առաջին տարվա արդյունքներն ամփոփեցին միութենական ռեսպուբլիկաների ուսուցիչների համագումարները։ Նրանք ցույց տվեցին այն զգալի հաջողությունները, որ ձեռք են բերվել ուսուցումը հանրօգուտ աշխատանքի հետ միացնելու և նոր պայմաններում դպրոցի դաստիարակչական դերն ուժեղացնելու գործում։ Առաջին քայլերն են կատարվել արտադրական ուսուցմամբ միջնակարգ հանրակրթական աշխատանքային պոլիտեխնիկական դպրոցներ ստեղծելու ուղղությամբ։ Այս նոր տիպի դպրոցը կոչված է ապահովելու աշակերտների բազմակողմանի զարգացումը, հանրակրթական լայն պատրաստության զուգընթաց՝ նրանց տալով պոլիտեխնիկական և մասնագիտական լուրջ պատրաստություն։ Նախորդ ուսումնական տարում արտադրական ուսուցում է կազմակերպվել մեր ռեսպուբլիկայի 31 դպրոցների 9-րդ դասարանների մոտ 900 աշակերտի համար, որոնք ձեռք են բերել խառատի, փականագործի, հավաքողի, գործողի, լաբորանտի, կարողի և այլ մասնագիտություններ։ Այս տարի արդեն արտադրական ուսուցմամբ գործում են ռեսպուբլիկայի 148 միջնակարգ դպրոցների 9-րդ և 10-րդ դասարաններ, որոնցում սովորում են մոտ հինգ ու կես հազար աշակերտ։ Ուսուցման այս ձևը սովորողների կրթության և դաստիարակության համար կայուն հիմքեր է ապահովում։

Խոսելով նոր պայմաններում սովետական դպրոցի առջև կանգնած հիմնական խնդիրների մասին, ընկեր Խրուշչովը ուսուցիչների համառուսաստանյան համագումարում ասաց. «Կոմունիզմի հաղթանակի համար պայքարը պահանջում է սովետական մարդու բազմակողմանի, ներդաշնակ զարգացում։ Իսկ դա նշանակում է ոչ միայն տիրապետել բնության, տեխնիկայի, հասարակության վերաբերյալ եղած գիտական գիտելիքների ամբողջ գումարին, այլև սովորել այդ գիտելիքները պրակտիկ կերպով օգտագործել՝ կոմունիստական շինարարության անմիջական աշխատանքային մասնակցություն ցույց տալու համար։ Մեզ հարկավոր է ոչ թե պարզապես գիտելիքների յուրացում, այլ դրանց վերածումը գաղափարական խոր համոզմունքների, այնպիսի համոզմունքների, որոնք ծնում են բուռն զգացմունքներ, դրսևորվում են ժողովրդի բարօրության համար կատարվող գործերում, արարքներում»։



Դպրոցական սիստեմի ներկա վերակառուցումը լայն հնարավորություններ է բացում աճող սերնդի այդպիսի զարգացման համար։ Կոմունիզմի ծավալուն շինարարության այս օրերում, երբ կենսական անհրաժեշտությամբ դրվում է սովետական մարդու բազմակողմանի և ներդաշնակ զարգացման հարցը, աստիճանաբար նախադրյալներ են ստեղծվում լուծելու այնպիսի կարևորագույն պրոբլեմ, ինչպիսին մարդու ազատագրումն է մեկ պրոֆեսիայի գերի լինելուց։ Կոմունիզմի տեխնիկային անցնելը վերափոխում է աշխատանքի բնույթը, մարդու արտադրական ունակությունները և անգամ նրա հոգևոր աշխարհը։ Կոմպլեքսային մեքենայացման ու ավտոմատացման շնորհիվ վերանում է աշխատանքի հին բաժանումը, աստիճանաբար դուրս է մղվում ցածրորակ աշխատանքը, անհետանում են ծանր ու վնասակար պրոֆեսիաները, բանվորի աշխատանքում սկսում է մեծ տեղ գրավել մտավոր աշխատանքի ֆունկցիան։ Ավտոմատ գծերը կառավարող բանվորի գործունեությունը իր բնույթով մոտենում է ինժեներա-տեխնիկական անձնակազմի աշխատանքին։ Աստիճանաբար վերանում է մտավոր և ֆիզիկական աշխատանքի մարդկանց միջև գոյություն ունեցող էական տարբերությունը։

Այժմ որքան առաջ են գնում գիտությունն ու տեխնիկան, այնքան ավելի մեծ նշանակություն են ստանում գիտական գիտելիքների ընդհանուր սկզբունքների յուրացումը, որոնց վրա հենվում են արտադրության ժամանակակից բոլոր պրոցեսները։ Այդ երևույթի հետ է կապված շատ գիտությունների հիմունքների և արտադրական պրոցեսների հետ ծանոթ մարդկանց պատրաստման հնարավորությունը։

Զարգացման որոշակի էտապում արդեն աշխատողները արտադրության մեկ ոլորտից հեշտությամբ կարող են անցնել մյուս ոլորտը, ազատ ընտրություն կատարել պրոֆեսիայի հարցում։ Սակայն սխալ կլինի ենթադրել, թե իբր կվերանա կադրերի խոր մասնագիտացման անհրաժեշտությունը։ Ընդհակառակը, հասարակական աշխատանքի բաժանման անընդհատ խորացումը ավելի է ուժեղացնում մարդկանց մասնագիտական պատրաստության պահանջը։ Դեռ ավելին, դրվում է ավելի լայն մասնագիտական պատրաստության խնդիրը. ավտոմատ գծերն ու ագրեգատները կառավարելու համար բանվորը ոչ միայն պետք է ունենա տեխնիկական բարձր կուլտուրա, այլև իմանա տեխնոլոգիական մի շարք բարդ պրոցեսներ, տիրապետի մեքենաների կառուցվածքին ու նրանց ղեկավարման տեխնիկային։

Այդ տեսակետից կրթության սիստեմի մեջ գնալով աճելու է պրոֆեսիոնալ տեխնիկական ուսուցման դերը։

Ինչպես հայտնի է, հանրակրթական ուսուցումը երիտասարդությանը տալիս է բնության և հասարակության մասին հիմնական գիտելիքներ։ Այն զարգացնում է մարդու ճանաչողական ուժերն ու ունակությունները, դնում է գիտական աշխարհհայացքի հիմքը։ Իսկ պրոֆեսիոնալ ուսուցումը մարդկանց զինում է աշխատանքային-արտադրական որոշակի կարողություններով, պատրաստում է բարձրորակ բանվորական կադրեր։ Միայն աշխատանքային ռեզերվների ուսումնարաններն ու դպրոցները վերջին 18 տարում պատրաստել են 10 միլիոն որակյալ, տեխնիկապես գրագետ բանվորներ։ Սակայն մինչև այժմ գործող պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսուցման սիստեմը այլևս չի բավարարում արտադրողական ուժերի արագ զարգացման պահանջները։ Տեխնիկական պրոգրեսի թռիչքաձև ընթացքը խնդիր է դնում պատրաստել այնպիսի բանվոր-

ներ, որոնք կարողանան ղեկավարել արդի բարդ մեքենաները, խորապես ծանոթ լինեն տեխնոլոգիական պրոցեսներին։ Սկսած անցյալ տարվանից արդեն վերակառուցվում է նաև պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսուցումը։ Ուսումնական պլաններում մտցվել են արտադրության մեքենայացման և ավտոմատացման վերաբերյալ նոր առարկաներ։

Յոթնամյակում պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսումնարանների թիվը ինչպես ամբողջ Միության մեջ, այնպես էլ մեր ռեսպուբլիկայում գրեթե կրկնապատկվելու է։

Բանվոր երիտասարդության առջև գիտության ու տեխնիկայի հիմունքներին տիրապետելու համար լայն հնարավորություն է բացել երեկոյան և հեռակա բարձրագույն կրթության սիստեմը, որի դերը գնալով աճում է։ Առանց արտադրությունից կտրվելու հազարավոր բանվորներ և կոլտնտեսականներ ձեռք են բերում սիստեմատիկ կրթություն, աճում աշխատանքային պրոցեսում և դառնում ինժեներ-տեխնիկներ։

Սակայն ինչքան էլ ընդարձակվեն պրոֆեսիոնալ ուսումնարանների և բարձրագույն տեխնիկական հաստատությունների ցանցն ու ծավալը, այնուհանդերձ, հնարավոր չէ միայն ուսումնական հաստատությունների միջոցով ապահովել կադրերի նկատմամբ արտադրողական ուժերի, տեխնիկայի ու գիտության զարգացման արդի մակարդակի մասսայական պահանջը։ Այդ տեսակետից կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծման ներկա էտապում, աշխատավորների կուլտուր-տեխնիկական աճի, նրանց պրոֆեսիոնալ-վարպետության բարձրացման գործում գնալով խոշոր նշանակություն է ստանում հասարակական կարգով կազմակերպվող մասսայական տեխնիկական ուսուցումը։ Սա արդեն նոր, կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանին հատուկ երևույթ է, որը մեծ ապագա ունի։ Գործարաններում ու ֆաբրիկաներում, կոլտնտեսություններում ու սովխոզներում ստեղծվող տեխնիկական ուսուցման խմբակներում, տեխնիկական համալսարաններում, հասարակական կոնստրուկտորական բյուրոներում սովետական մարդիկ բարձրացնում են իրենց կուլտուր-տեխնիկական մակարդակը, ձեռք բերում համապատասխան պրոֆեսիա։ Գիտության ու տեխնիկայի նորագույն նվաճումներին տիրապետելու մասսայական գրոհ է կազմակերպել մեր փառապանծ երիտասարդությունը։ Շարժում է ծավալվում «յուրաքանչյուր բանվորին ինժեներական գիտելիքներ», «ամեն մի բանվորն ինժեներ է իր տեղամասում» նշանաբանով։ Այստեղ նորը, կոմունիստականն այն է, որ երիտասարդներն իրենք են սովորեցնում իրենց ընկերներին, առանց պետությունից վարձատրություն պահանջելու։ Բոլորին հայտնի է կիրովականցիների նախաձեռնությամբ հասարակական հիմունքներով ստեղծված ռացիոնալիզատորների և գյուտարարների ինստիտուտը, որտեղ ինժեներներն առանց որևէ նյութական շահագրգռվածության, գիտելիքներ են հաղորդում երիտասարդ բանվորներին։ Հասարակական կարգով տեխնիկական ուսուցման օղակներ են ստեղծվել ռեսպուբլիկայի համարյա բոլոր գործարաններում ու ֆաբրիկաներում։

Այդ բոլորի շնորհիվ սովետական մարդկանց կուլտուր-տեխնիկական մակարդակի արագ աճն իր կոնկրետ ու փայլուն արտահայտությունն է գտնում գյուտարարների ու ռացիոնալիզատորների մասսայական շարժման ծավալման մեջ։ Հենց միայն մեր ռեսպուբլիկայում ռացիոնալիզատորների ու գյուտարարների թիվը հասնում է մոտ 8 հազարի, իսկ նրանց ընկերության 167 սկզբնա-



կան կազմակերպություններում ընդգրկված են մոտ 12 հազար բանվորներ, ինժեներա-տեխնիկական աշխատողներ և ծառայողներ, որոնք իրենց ջանքերն ուղղում են արտադրության կատարելագործմանը։ Բնորոշ է հետևյալ փաստը. պարտիայի Կենտրոնական Կոմիտեի հուլիսյան պլենումի նախօրյակին ՀԿՊ Երևանի քաղաքային կոմիտեի նախաձեռնությամբ անցկացվեց արտադրության մեջ գիտության և տեխնիկայի նորագույն նվաճումների ներդրման միամսյակ, որի ընթացքում ստացվեց 3 հազարից ավելի ռացիոնալիզատորական նոր առաջարկություն։

Բանվոր ռացիոնալիզատորների հետ ինժեներա-տեխնիկական անձնակազմի տարած հետևողական ու կազմակերպված աշխատանքի շնորհիվ յուրաքանչյուր նորարար բանվոր միաժամանակ աճում է իր առաջարկությունների կատարման ընթացքում։

Որպես մեր առաջընթացի կարևոր դրսևորում, կարող ենք հպարտորեն ընդգծել, որ մեր օրերի որակյալ բանվորն այլևս արհեստավոր չէ, այլ մասնագետ, որի աշխատանքն իր բնույթով ավելի է մոտենում ինժեների աշխատանքին։ Դրանում մենք տեսնում ենք մտավոր և ֆիզիկական աշխատանքի միջև եղած էական տարբերության վերացման ուղին, սովետական մարդու ընդհանուր կուլտուրական զարգացման բնորոշ կողմերից մեկը։

Կոմունիզմի կառուցումը լայն ասպարեզ է բացում անհատի ընդունակությունների ու կարողությունների բազմակողմանի զարգացման համար, նրա առաջ հայտնագործելով գեղեցիկ աշխարհը։ Եվ երբ խոսք է լինում սովետական մարդու համակողմանի զարգացման մասին, բացի քաղաքական, հանրակրթական և մասնագիտական ուսուցումից, անպայման նկատի է առնվում նաև նրա էսթետիկական ու ֆիզիկական դաստիարակությունը։ Ինչքա՜ն խեղճ, հոգով աղքատ է երևում այն մարդը, որը չի հասկանում բնության, ինչպես նաև մարդկային մտքի ու ձեռքի լավագույն ստեղծագործությունների գեղեցկությունը։ Ով չի կարողանում տարբերել իսկական գեղեցկությունը շինծուից, նա չի կարող ըմբռնել նաև կյանքի շատ երևույթներ։ Կոմունիզմի քաղաքացին մեր պատկերացման մեջ երևում է հոգով հարուստ, բարձր կուլտուրայի ու ճաշակի տեր, կյանքի գեղեցկությունը խոր ըմբռնող ու վայելող մարդ։ Սովետական մարդու բարոյական կերպարի կատարելագործումը սերտ կերպով առնչվում է նրա զարգացման այդ կողմի հետ։ Ահա թե ինչու սոցիալիզմից կոմունիզմին անցման ներկա էտապում մեր երկրում առաջնահերթ խնդիր է դարձել աշխատավորության էսթետիկական դաստիարակությունը։

Ինչպես բոլոր ուղղություններով, այնպես էլ աճող սերնդի էսթետիկական դաստիարակության հարցում սկզբնական ու կարևոր օղակը դարձյալ մնում է դպրոցը։ «Հասարակական կյանքում, մարդու անհատականության ձևավորման ասպարեզում դպրոցի և ուսուցչի նշանակությունը դժվար է գերագնահատել» (Ն. Ս. Խրուշչով, Ճառ ուսուցիչների համառուսաստանյան համագումարում)։

Կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանը նոր մարդու էսթետիկական դաստիարակության ուղղությամբ լուրջ խնդիրներ է դրել դպրոցի առջև։ Արդեն ձեռնարկվել է համապատասխան մանկավարժական կադրերի

պատրաստումը՝ դպրոցներում նկարչություն, երաժշտություն, քանդակագործություն, թատերական արվեստ դասավանդելու համար։

Աշխատավորության էսթետիկական դաստիարակության գործում հայտնի է, թե ինչպիսի խոշոր դեր են խաղում կինոն, թատրոնը, ռադիոն ու հեռուստատեսությունը, ինչպես նաև կուլտուր-լուսավորական հիմնարկները՝ կուլտուրայի պալատները, ակումբներն ու գրադարանները, որոնց ցանցը գնալով ընդլայնվում է։ Այսօր մեր անծայրածիր Հայրենիքի և ոչ մի անկյուն դուրս չի մնում կուլտուրայի նշված օջախների գործունեության շրջանակներից։ Հենց միայն մեր ռեսպուբլիկայում գործում են կուլտուրայի 50 տներ, 1017 ակումբներ, 581 ինքնուրույն մասսայական գրադարաններ և այլն։ Այս երկու տարում կավարտվի ռեսպուբլիկայի բոլոր բնակավայրերի ռադիոֆիկացումը։ Մինչև 1963 թվականը Սովետական Հայաստանի բոլոր շրջանները կդիտեն հեռուստատեսային հաղորդումներ։ Ամեն օր, ամեն ժամ ռադիոն ու հեռուստատեսությունը աշխատավորներին են հասցնում կուլտուրայի, արվեստի ու գրականության նվաճումները։

Սովետական մարդու՝ նրա բազմակողմանի զարգացման գործում մեծ օգնություն են ցույց տալիս գիրքն ու մամուլը, որոնց տպաքանակը գնալով ավելանում է։ Գիրքն ու մամուլը մասսաներին լուսաբանում են Կոմունիստական պարտիայի ճշմարտացի խոսքը, գիտության, գրականության ու արվեստի նվաճումները, օգնում են նրանց ճիշտ կողմնորոշվելու կյանքի հարցերում, պրակտիկ գործունեության մեջ։

Մեր առաջընթացի համեմատ գնալով մեծ նշանակություն է ստանում էսթետիկական դաստիարակության այնպիսի ձևը, ինչպիսին է գեղարվեստական ինքնագործունեությունը։ Այն լավագույն միջոց է բացահայտելու և զարգացնելու սովետական մարդու շնորհքն ու ընդունակությունները։ Գնալով ծավալվում է գեղարվեստական ինքնագործունեությունը, որի խմբակներում ընդգրկված են ավելի քան 7 միլիոն մարդ։ Մեր ռեսպուբլիկայի գործարաններում ու ֆաբրիկաներում, կոլտնտեսություններում ու սովխոզներում այժմ գործում են մոտ 2 հազար գեղարվեստական ինքնագործ խմբակներ, որոնցում ընդգրկված են ավելի քան 27 հազար մարդ։ Ռեսպուբլիկայի շատ քաղաքներում ու շրջաններում արդեն տրադիցիա են դարձել երգի տոները, որոնք համաժողովրդական բնույթ են կրում։ Իհարկե աշխատավորների էսթետիկական դաստիարակության այդ մասսայական ձևը չի կարող իր դերը խաղալ, եթե գեղարվեստական ինքնագործունեության մասնակիցների հետ չաշխատեն պրոֆեսիոնալ արվեստի ներկայացուցիչները։ Ինչպես հայտնի է, այսօր յուրաքանչյուր ռեսպուբլիկայում գործում է բանաստեղծների, կոմպոզիտորների, նկարիչների, քանդակագործների, դրամատուրգների, արտիստների մի մեծ բանակ, որը սիրով օգնում է գեղարվեստական ինքնագործունեության զարգացմանը, ժողովրդական տաղանդների աճին։ Դրա շնորհիվ մեր տաղանդավոր ժողովրդական գեղարվեստական ինքնագործունեությունը հասել է բարձր մակարդակի և լայն ընդունելություն է գտնում ամենուրեք։ Այն արդեն իրեն դրսևորել է միջազգային ֆեստիվալներում և կոնկուրսներում։ Հիշենք թեկուզ այն, թե ինչպիսի հաջողությամբ անցան սովետական պրոֆմիությունների գեղարվեստական ինքնագործունեությանը մասնակցող խմբերի ելույթները Ճապոնիայի 16 քաղաքներում։ Ժողովրդական տաղանդների նոր ու շնորհալի ուժերը միշտ համալրում են սովետական արվեստի ու գրականության պրոֆեսիոնալ վարպետների շարքերը։ Ժողովրդական արվեստի այդ երկու՝ պրոֆեսիոնալ և ինքնագործ տեսակների փոխադարձ ներգործությունը դառնում է կոմունիստական հասարակարգի կուլտուրայի զարգացման բնորոշ գիծը։



Ընդամենը մեկ տարի առաջ էր, որ սկսեցին երևան գալ հասարակական կարգով գործող կուլտուրայի համալսարանները, որոնց թիվն այսօր երկրում հասնում է ավելի քան 4 հազարի։ Կուլտուրայի համալսարաններն իրենց առջև խնդիր են դնում ունկնդիրներին սիստեմատիկ գիտելիքներ հաղորդել երաժշտությունից, թատերական արվեստից, կերպարվեստից, գրականությունից, գիտությունից, տեխնիկայից։ Դրանք արդեն որոշակի ու կարևոր տեղ են գրավում աշխատավորության բարոյա-էսթետիկական դաստիարակության ընդհանուր սիստեմում։ Այժմ մեր ռեսպուբլիկայում գործում են 64 կուլտուրայի համալսարաններ։ Իր արդյունավետ աշխատանքով աչքի է ընկնում Արտաշատի կուլտուրայի համալսարանը, որի չորս ֆակուլտետներում շրջանի 11 գյուղերից ընդգրկված են 200 բանվորներ, ծառայողներ, կոլտնտեսականներ և ուսուցիչներ։ Այստեղ դասախոսություններով հանդես են գալիս անվանի արվեստագետներ, գրականագետներ։ Համալսարանի առանձին պարապմունքներ անց են կացվել Երևանի Պետական պատկերասրահում և արվեստի թանգարանում։ Արդեն իր առաջին շրջանավարտներն է տվել Հայաստանի Արվեստի աշխատողների տանը կից գործող կոմունիստական աշխատանքի բրիգադաների և հարվածայինների կոչման համար պայքարողների կուլտուրայի համալսարանը։

***

Սովետական մարդկանց կոմունիստական դաստիարակության անբաժանելի մասն է կազմում ֆիզիկական դաստիարակությունը։ Կյանքի փորձը ցույց է տալիս, որ ֆիզկուլտուրայով և սպորտով սիստեմատիկ զբաղվելը մարդկանց դարձնում է առնական, ուժեղ կամքի տեր, դժվարությունները հաղթահարող, կենսուրախ, իրենց ուժերին վստահ։ Պարտիան ու կառավարությունը հսկայական ուշադրություն են դարձնում սպորտի զարգացմանը, որը գնալով ավելի մասսայական է դառնում, իր մեջ ընդգրկելով սովետական միլիոնավոր մարդկանց։ Հենց միայն մեր ռեսպուբլիկայում այսօր հաշվվում է ֆիզկուլտուրայի ավելի քան 1500 կոլեկտիվ, որոնց շարքերում կա 200 հազարից ավելի մարդ։

Սպորտային միջոցառումները գնալով դառնում են ավելի բազմազան։ Նրանց մեջ հատկապես մեծ զարգացում է ստանում տուրիզմը, քանի որ դա միաժամանակ և՛ սպորտ է, և՛ հանգիստ, հնարավորություն է տալիս շատ բան տեսնել, իմանալ և ամրապնդել իր ուժերը։ Դրա համար էլ ապագայում, ըստ երևույթին, յուրաքանչյուր առողջ մարդ կլինի ինչ-որ չափով տուրիստ։

Աշխատավոր մարդուն անհրաժեշտ է ավելի շատ ազատ ժամանակ, որպեսզի զբաղվի իր աճի ու զարգացման հարցով։ Այդ տեսակետից հսկայական նշանակություն ունի աշխատանքային օրը և շաբաթը կրճատելու մասին պարտիայի նախատեսած ծրագրի կենսագործումը։ Անհրաժեշտ է հասնել այն բանին, ասել է ընկեր Խրուշչովը, որպեսզի մարդիկ, զբաղվելով հասարակության մեջ հանրօգուտ աշխատանքով, աշխատանքից ազատ ժամանակ հնարավորություն ունենան, ցանկության դեպքում, սովորելու այնպիսի ուսումնական հաստատություններում, որտեղ ուսումնասիրեն արվեստը, երաժշտությունը, հումանիտար գիտությունները և այլն։

Արդեն 1960 թվականին ավարտվում է բանվոր ծառայողների փոխադրումը 7 և 6 ժամյա աշխատանքային օրվա։ 1964 թվականից նախատեսվում է անցնել 35 և 30 ժամյա աշխատանքային շաբաթվա։ Աշխատանքային օրվա կրճատումը մեծ քանակությամբ ուժեր ու էներգիա է ազատում մարդու մոտ. նա ավելի շատ ժամանակ կունենա հանգստանալու, զվարճանալու, ուսումնասիրելու գիտությունները, արտադրությունը, զբաղվելու նորարարությամբ ու գյուտարարությամբ։ Ազատ ժամանակը կհանդիսանա աշխատանքի արտադրողականության բարձրացման, կոմունիստական արտադրության աճի ու կատարելագործման հզոր գործոն։

Սովետական մարդկանց դաստիարակության կազմակերպական բոլորովին նոր և արդյունավետ ձև է դարձել մեր ժամանակի ամենաառաջադիմական շարժումը՝ կոմունիստական աշխատանքի կոլեկտիվի կոչման համար մղվող պայքարը, որը գնալով ավելի մասսայական բնույթ է ընդունում։ «Կոմունիստական աշխատանքի հարվածայիններին և բրիգադաները իրավամբ կարելի է անվանել ապագայի պիոներները» (Խրուշչով)։

Այդ պիոներների թիվն այսօր մեր երկրում հասնում է միլիոնների։ Միայն մեր ռեսպուբլիկայում կոմունիստական աշխատանքի բրիգադաների ու հարվածայինների կոչման համար ծավալվող շարժման մեջ, այս տարվա հուլիսի 5-ի տվյալներով, ընդգրկված են ավելի քան 1500 կոլեկտիվներ, այդ թվում՝ գործարաններ, ֆաբրիկաներ, ցեխեր, հերթափոխություններ, տեղամասեր, ֆերմաներ, բրիգադաներ և այլն։

Սովետական մարդը ազատ ստեղծագործ աշխատանքի մարդ է, նոր հասարակարգի ակտիվ կառուցող, առաջավոր կոմունիստական բարոյականություն կրող։ Ստեղծագործ աշխատանքի պրոցեսում բացահայտվում ու կատարելագործվում են նրա բնավորության լավագույն գծերը, հոգեկան աշխարհի հարստությունը։

---

# ՄՈՆՈՊՈԼԻՍՏԱԿԱՆ ԿԱՊԻՏԱԼԻ ԳԱՂԱՓԱՐԱԿԱՆ ՋԻՆԱԿԻՐՆԵՐԸ

## Ա. ԲՋՆՈՒՆԻ

1959 թ. նոյեմբերի կեսերին Արևմտյան Գերմանիայի Բադ Գոդեսբերգ ոչ նշանավոր քաղաքում մեծ շտապողականությամբ կայացավ Գերմանիայի սոցիալ-դեմոկրատական պարտիայի (ԳՍԴՊ) արտակարգ համագումարը՝ նվիրված նոր ծրագրի քննարկմանն ու հաստատմանը։ Պարտիայի նախագահությունը ձեռք էր առել բոլոր միջոցները համագումարի աշխատանքները ցանկալի հունով վարելու համար։ Սակայն, չնայած դրան, ծրագրի հաստատումը հարթ ու խաղաղ չընթացավ։

Նոր ծրագրի քննարկման ընթացքում շատ պատգամավորներ համառ պահանջ էին դնում վերանայելու ծրագրում շարադրված մի շարք սկզբունքային կետեր, որոնք, այդ պատգամավորների բնորոշմամբ, միանգամայն ընդունելի են յուրաքանչյուր բուրժուա-ազգայնական, այդ թվում նաև Ադենաուերի պարտիայի համար։ Բացահայտ վրդովմունքով դիմավորվեց ծրագրի «Սեփականություն և իշխանություն» հատվածի մասին զեկուցող Հ. Դեյստի պաշտպանողական ճառը մոնոպոլիաների օգտին։ Այստեղ իսկ խոշոր արդյունաբերության հանրայնացման սոցիալիստական պահանջը իր տեղը զիջել էր «ազատ նախաձեռնությանն» ու «ազատ մրցակցությանը», որ ամոթաբար ծածկված էին «խոշոր արդյունաբերության իշխանության սանձահարման» թվենու թափանցիկ տերևով։

Չնայած ուժեղ օպոզիցիային, այնուամենայնիվ ԳՍԴՊ նախագահության ճնշման տակ ծրագիրը հաստատվեց համագումարի կողմից։ Սոցիալ-դեմոկրատական պարտիայի նախագահության հետ միասին լիակատար ցնծության մեջ էին բուրժուա-կառավարական շրջանները։ Քրիստոնեական-դեմոկրատական միության մոտ կանգնած «Քիլեր Նախրիխտեն» թերթը ողջունեց համագումարի ընդունած ծրագիրը հետևյալ խոսքերով. «Ծրագիրն ուղղված է բուրժուազիայի օգտին, դա զգացվում է ակնառու կերպով... Նույնիսկ Մարքսը արտաքսված է այս ծրագրից»։ Գնահատելով համագումարի արդյունքները, մի այլ թերթ՝ «Քյոլնիշե Ռունդշաու», ընդգծում էր, որ դասակարգային պայքարի և արտադրության միջոցների հանրայնացման գաղափարները պարտություն կրեցին կառավարության տնտեսության մինիստր Էրհարդի կողմից։ Ինքը՝ Էրհարդը, Արևմտյան Գերմանիայի «տնտեսական հրաշագործության» այդ հեղինակը, յուրովի գնահատեց Գոդեսբերգյան համագումարի նոր ընդունած ծրագիրը, նշելով՝ «այն բոլորը, ինչ որ լավ է այնտեղ, ինձնից է վերցված»։

ԳՍԴՊ-ի նոր ծրագիրը ըստ արժանվույն ընկալվեց հակասովետական

բանակում. նույնիսկ դաշնակների թերթուկ «Հուսաբերը» առիթը բաց չթողեց ողջունելու նոր ծրագիրը որպես «նոր ուղի մը», որ հատուկ է գերմանական սոցիալ-դեմոկրատիային։

Ո՞րն է այդ ծրագրի էությունը։

## Մարքսիզմն արխիվ են հանձնել

Ինչպես ապացուցեց համագումարը, ներկա ռեֆորմիստական գաղափարախոսությունը ելնում է այն, իբր անհերքելի, փաստից, թե կապիտալիզմը այժմ այն չէ, ինչպիսին նա եղել է Մարքսի օրոք և, հետևաբար, կապիտալիստական հասարակության զարգացման օրինաչափությունների մարքսիստական անալիզը լրիվին հնացել է։ Որ կապիտալիզմը վերջին շրջանում որոշակի փոփոխություններ է կրել՝ դա կասկածից դուրս է մարքսիստների համար։ Հենց այդ փոփոխությունների էությունն է ընդհանրացրել Վ. Ի. Լենինը՝ բնորոշելով ներկա ժամանակաշրջանը, որպես կապիտալիզմի նեխման ստադիա և սոցիալիստական ռևոլյուցիայի նախօրյակ։ Բայց քանի դեռ բուրժուազիան արտադրության միջոցների սեփականատեր է և շահագործում է պրոլետարիատին, կապիտալիզմը իր հիմքում մնում է նույնը, ինչպես և Մարքսի օրոք։

Գիտական այս ճշմարտության դեմ մեղանչում են ռեֆորմիստները։ Նրանց ասելով կապիտալիզմը ոչ միայն ապացուցել է իր կենսունակությունը և չի խճճվել դասակարգային հակասություններում, այլև հաջողությամբ հաղթահարում է դասակարգերի բևեռացումը, հարթում սոցիալական տարբերությունները։ Ժամանակակից կապիտալիզմը, պնդում են նրանք, զարգանում է սոցիալիստական ուղղությամբ, սահունորեն ներաճում սոցիալիզմի մեջ։

Սա բավականին տաղտկալի և հին երգ է։

Ռեֆորմիստները տասնյակ տարիների ընթացքում փորձում էին արատավորել մարքսիստական տեսության դրոշը, պառակտում մտցնել միջազգային բանվորական շարժման մեջ։ Եթե անցյալի ռևիզիոնիստները՝ «ուղղելով» Մարքսին քողարկվում էին մարքսիստական ֆրազաբանությամբ կամ հակադրում էին Մարքսին Էնգելսին, իսկ Էնգելսին՝ Մարքսին, ապա մեր օրերի ռեֆորմիստներն ուղղակի հրաժարվել են մարքսիզմից, փոխարինել այն բուրժուա-կղերական գաղափարախոսության զինանոցից վերցրած՝ կապիտալիզմի գովաբանության ուսմունքով։ Պաշտպանելով մասնավոր կապիտալիստական սեփականությունը, մոնոպոլիաների տիրապետությունը, ժամանակակից ռեֆորմիստները կատաղորեն հարձակվում են հաղթանակած մարքսիզմի՝ Սովետական Միության և սոցիալիստական լագերի մյուս երկրների վրա։

Գոդեսբերգի համագումարում սոցիալ-դեմոկրատական աղմկարարները վահանի վրա բարձրացրին այսպես կոչված դեմոկրատական սոցիալիզմը՝ ռեֆորմիստական մտքի այդ օրապակաս պտուղը՝ ռեկլամելով դա որպես «սոցիալիստական սկզբունքների ընդլայնում»։ Ո՞րն է սակայն այդ կասկածելի ընդլայնումը։

«Գերմանիայի սոցիալ-դեմոկրատական պարտիան,— ասում է նոր՝ Գոդեսբերգի ծրագիրը,— ոգու ազատության պարտիա է։ Այն՝ տարբեր հավատ և աշխարհայացք ներկայացնող մարդկանց ընկերակցություն է։ Նրանց ընդհանրությունը միատեսակ բարոյական սկզբունքների և քաղաքական նպա-



տակների վրա է հիմնված»։ Այնուհետև ծրագիրը նշում է, որ «ոչ քաղաքական պարտիան, ոչ էլ պետությունը չեն կարող նախորոշել» մարդու աշխարհայացքի և կրոնական համոզմունքների բովանդակությունը։

Սոցիալ-դեմոկրատիայի աջ լիդերների, առաջին հայացքից, այսպիսի «համբերատար» վերաբերմունքը փիլիսոփայական հարցերի նկատմամբ ունի իր վաղեմի պատմությունը։ Չխոսելով արդեն է. Բեռնշտեյնի մասին, որը ժխտում էր միասնական աշխարհայացքի անհրաժեշտությունը քաղաքական պարտիայի համար, հիշենք, որ Կ. Կաուցկին նույնպես գտնում էր, թե սոցիալիստական ուսմունքը հնարավոր է միացնել ուզածդ աշխարհայացքի, ինչպես և մատերիալիստական փիլիսոփայության հետ։ Բայց, ինչպես ասում են, այդ ժամանակներից շատ ու շատ ջուր է հոսել, և սոցիալ-դեմոկրատիայի այժմյան աջ ղեկավարները մարքսիզմը աուտոդաֆեի են ենթարկել։ Այսպես, օրինակ, Էրիխ Օլենհաուերը արդեն վճռաբար բողոքում է այն կարծիքի դեմ, թե ԳՍԴՊ-ն իբր դավանում է փիլիսոփայական մատերիալիզմը, իսկ մի ուրիշ աջ սոցիալիստական տեսաբան՝ Կարլո Շմիդը, խոր ափսոսանքով է խոսում ծանր վնասների մասին, որ ունեցել է սոցիալ-դեմոկրատական պարտիան մարքսիստական գաղափարախոսությունը դավանելու հետևանքով։ Հարկավոր է,—ասում է Կ. Շմիդը,—որ ԳՍԴՊ-ն արմատապես խզի իր կապերը Մարքսից ու մարքսիզմից և ապացուցի իր լիակատար ազատամտությունը աշխարհայացքի հարցերում։

Դժվար չէ եզրակացնել, որ նման տեսաբանների զարգացրած չեզոքության սկզբունքը, աշխարհայացքի ապադասակարգային լինելու հակամարքսիստական դրույթը ոչ միայն նշանակում են վճռական հրաժարում գիտական սոցիալիզմի հիմունքներից, այլև ուղղակի կապիտուլյացիա իմպերիալիստական գաղափարախոսության հանդեպ։ Չեզոք աշխարհայացքի առկայությունը բացառված է դասակարգային հասարակության մեջ, որտեղ մարդիկ ապրում և գործում են տարբեր սոցիալական պայմաններում, ուստի մարքսիզմի դեմ պայքարող և աշխարհայացքի չեզոքություն քարոզող աջ սոցիալ-դեմոկրատիան նույնպես ունի իր որոշ և, իհարկե, ոչ չեզոք աշխարհայացքը, որը գլխովին մատնում է իրեն։ Իսկապես, այդ ի՜նչ տարօրինակ չեզոքություն է, որ բարեհամբույր լինելով մյուս բոլոր աշխարհայացքների նկատմամբ, մարտնչում է միմիայն մարքս-լենինյան աշխարհայացքի դեմ։

Լիբերալ-բուրժուական շաղակրատանքը ոգու ազատության մասին չի կարող սքողել այն իրողությունը, որ աջ սոցիալ-դեմոկրատիան ակտիվ պայքարի կոչ է անում մեր ժամանակի ամենաառաջադեմ ուսմունքի՝ մարքսիզմ-լենինիզմի դեմ, որի ամենահաղթ դրոշի ներքո մարդկության մեկ երրորդը վերափոխում է ժամանակակից հասարակությունը։

Գոդեսբերգյան ծրագրի իմաստը մարտական զորասյունի կազմակերպումն է ընդդեմ կոմունիզմի։ Ծրագիրը սոցիալ-դեմոկրատիայի դռները լայնորեն բացում է ամեն տեսակ ռեակցիոն տարրերի առաջ, անկախ նրանց սոցիալական, կրոնական և աշխարհայացքի տարբերություններից։ Բոլոր գույնի իդեալիստների հետ սրտառուչ միասնություն կազմելով, աջ սոցիալ-դեմոկրատները պայքարում են պրոլետարիատի աշխարհայացքի՝ դիալեկտիկական մատերիալիզմի դեմ, անսաստված կերպով աղավաղելով և զրպարտելով այն։ «Մարքսիզմը որպես փիլիսոփայական, տնտեսագիտական և սոցիալիստական ուսմունք սոցիալ-դեմոկրատները արխիվ են հանձնել»,— համագումարից

հետո թեթևացած սրտով հայտարարել է Լոմարը՝ սոցիալ-դեմոկրատական մի ուրիշ տեսաբան։

Բայց որովհետև բնությունը դատարկություն չի հանդուրժում, ապա աջ սոցիալ-դեմոկրատները շտապում են նշել այն շրջանակները, որոնց մեջ կարող է տեղավորվել նրանց «չեզոք», «ապադասակարգային» աշխարհայացքը։ Գոդեսբերգի ծրագիրն այդ մասին ազդարարում է հետևյալը.

«Եվրոպայում դեմոկրատական սոցիալիզմը արմատավորված է քրիստոնեական բարոյագիտության, հումանիզմի և կլասիկ փիլիսոփայության մեջ»։

Յուրաքանչյուր մարքսիստի համար շշմեցուցիչ այս հայտնագործությունում նախ և առաջ նկատելի է այն, թե ծրագրի հեղինակները ինչպիսի խնամքով ժխտում են դեմոկրատական սոցիալիզմի կապը մարքսիզմի և բանվորական շարժման հետ։ Մարքսիզմին հատուկ և յուրաքանչյուր մարքսիստին քաջ հայտնի բաղկացուցիչ մասերից և ոչ մեկը չի մտնում դեմոկրատական սոցիալիզմի մեջ։ Վերջինս հանդես է գալիս որպես քրիստոնեական կրոնի և իդեալիստական փիլիսոփայության մի խառնուրդ՝ համեմված կասկածելի հումանիզմի անախորժ բույրով։

Մարքսիզմից հրաժարվելը սոցիալ-դեմոկրատիայի աջ ղեկավարության համար միահյուսված է մոնոպոլիստական կապիտալի գաղափարախոսությունը տարածելու և պրոպագանդելու հետ։ Եվ բոլորովին զարմանալի չէ, որ այս խնդրի իրագործման ճանապարհին աջ սոցիալ-դեմոկրատները ձգտում են միասնություն հաստատել կաթոլիկական եկեղեցու հետ՝ քրիստոնեական բարոյագիտության հիման վրա։ Այդ մասին դեռ համագումարից առաջ խորհել է ծրագրի հոգևոր հայր Բեննեդիկտ Կաուցկին, որն իր մի ելույթում՝ դիմելով եկեղեցու հեզ ծերունիներին, ասել է հետևյալը. «Դեմոկրատական սոցիալիզմը և եկեղեցին, որպես մեր ժամանակի խոշոր ուժեր, պետք է որ ժամանակի հարցերին ընդհանուր պատասխան տան և միացյալ ուժերով հաղթահարեն կոմունիզմը»։ Մի՞թե սա է աշխարհայացքի այն չեզոքությունը, որով ցանկանում են խաբել միամիտներին։

Կաթոլիկական քարոզիչները, իհարկե, ջերմորեն ողջունեցին Գոդեսբերգի նոր ծրագիրը, ուր սևով սպիտակի վրա նշվում է «եկեղեցու առանձնահատուկ դերը պետության շրջանակներում», իսկ կաթոլիկական «պարոնյորին» հատուցվում ըստ արժանվույն։ Նույնիսկ ամենամոլեռանդ կղերականները այլևս առիթ չունեն դժգոհելու իրենց կամակատար սոցիալիստներից։ Իզուր չէ, որ աջ սոցիալ-դեմոկրատները հրաժարվելով մարքսիզմից՝ անամոթաբար հայտարարում են, թե Աստվածաշնչի «սիրո» և «գթության» գաղափարները յուրաքանչյուր սոցիալ-դեմոկրատի համար այսօր ավելի կարևոր են, քան Մարքսի և Էնգելսի գրվածքները։

Դեմոկրատական սոցիալիզմը իր ակունքներից մեկը համարում է կլասիկ փիլիսոփայությունը։ Սակայն Գոդեսբերգում ընդունած ծրագիրը ամբողջությամբ տոգորված է էկլեկտիցիզմի ոգով և արտահայտում է իդեալիստական փիլիսոփայության տարբեր կոնցեպցիաներ, ընդհուպ մինչև Հունաստանի ստրկատիրական դասակարգի փիլիսոփա Պլատոնի իդեաները։ Մեծ փիլիսոփաներից աջ սոցիալ-դեմոկրատիան փոխ է առել նրանց ուսմունքի ոչ թե ուժեղ, առաջադիմական կողմերը, որոնք մտել են համամարդկային կուլտուրայի ոսկե ֆոնդի մեջ, այլ նրանց հակասական, անհետևողական, հակամատերիալիստական տարրերը, որոնք ռեակցիոն բուրժուազիայի ձեռքին զենք են ծառայում բանվորական շարժման դեմ պայքարելու գործում։



Աջ սոցիալ-դեմոկրատներին առանձնապես հրապուրում է նեոկանտական փիլիսոփայությունը։ Վտարելով Կանտի փիլիսոփայությունից մատերիալիստական էլեմենտները՝ աջ սոցիալիստները մեծ փիլիսոփայի աբստրակտ ֆորմուլաների օգնությամբ փորձում են հիմնավորել այսպես կոչված էթիկական սոցիալիզմը, որի վերացական և անպտուղ սկզբունքները ապակողմնորոշում, խափանում են բանվոր դասակարգի գործողությունները շահագործող դասակարգերի դեմ ուղղված պայքարում։ Աջ սոցիալ-դեմոկրատ տեսաբաններին հատկապես հրապուրում է գիտության կողքին կրոնին և եկեղեցուն ընդարձակ տեղ հատկացնելու Կանտի փորձը, գիտությունը կրոնով սահմանափակելու և կրոնը մեծարելու նրա ձգտումը։ Այդ երկու իրարամերժ կողմերի բռնազբոսիկ հաշտեցումը նեոկանտականների մոտ ավարտվում է իռացիոնալիզմի, սուբյեկտիվ իդեալիզմի հաղթանակով։ Աջ սոցիալ-դեմոկրատները ոչ թե առաջ են նայում փիլիսոփայական առաջադեմ մտքի զարգացման ուղղությամբ, այլ լույս աշխարհ հանում ռեակցիոն փիլիսոփայության հնոտին, որը վաղուց ի վեր մերկացվել և դեն է շպրտվել Մարքսի, Էնգելսի կողմից։

Փիլիսոփայական առաջավոր մտքի օրինական ժառանգորդն է հանդիսանում Մարքսի ուսմունքը, որը, Լենինի արտահայտությամբ, «անհաշտելի է որևէ նախապաշարմունքի, որևէ ռեակցիայի, բուրժուական ճնշման որևէ պաշտպանության հետ»։ Այդ ուսմունքի անկապտելի մասն է կազմում պատմական մատերիալիզմը, «...որը ցույց է տալիս, թե ինչպես հասարակական կյանքի մի կացութաձևից, արտադրական ուժերի աճման հետևանքով զարգանում է մյուսն, ավելի բարձրը,—ճորտատիրությունից, օրինակ, աճում-զարգանում է կապիտալիզմը» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 19, էջ 5)։

Գոդեսբերգի ծրագիրը չի ընդունում պատմական մատերիալիզմը որպես գիտություն, այլ այն փոխարինում է նեոկանտական սուբյեկտիվ սոցիոլոգիայով և դրանով իսկ ժխտում առաջադեմ հասարակական զարգացման օրինաչափությունը։ Սոցիալ-դեմոկրատական աջ լիդերների համար սոցիալիզմը բնական-պատմական անհրաժեշտություն չէ, նա չի բխում հասարակության զարգացման ներքին օրենքներից, այլ վերացական բարոյական սկզբունքների «մաքուր իմացության» ակտ է։ Բայց, եթե սոցիալիզմը հասարակական-տնտեսական օրինաչափ զարգացման արդյունք չէ, ապա նա կարող է և իրագործվել և չիրագործվել։ Սոցիալիզմը մնում է որպես իդեալ, որպես «հարատև խնդիր», ինչպես ծրագրում է ասված։

Սոցիալիզմը փոխարինվում է մշտնջենական բարոյական օրենքների սրբագործմամբ, Կանտը դառնում է սոցիալիստական տեսության առաջնատեղծողը։

## Սոցիալիզմի ոչ մի նշույլ

«Մեր ծրագիրը գիտական փաստաթուղթ չէ»,—այդպես է հայտարարել համագումարում սոցիալ-դեմոկրատական պարտիայի վարչության նախագահ Էրիխ Օլենհաուերը։ Թերևս դրանով պետք է բացատրել այն հանգամանքը, որ այդ ծրագրում անզուսպ շաղակրատում են տխրահռչակ դեմոկրատական սո-

ցիալիզմի երեք հիմնական սկզբունքների՝ ազատության, արդարության և համերաշխության մասին։ Այդ սկզբունքների վերամբարձ ազդարարումը փաստորեն խորամանկամտություն է, որով ցանկանում են սքողել, բթացնել դասակարգային սուր ներհակությունները։

Ծրագրում հռչակված ազատության, արդարության և համերաշխության սկզբունքները լոկ վերացական խոսքեր են՝ որևէ սոցիալական բովանդակությունից զուրկ, սոցիալական պայմաններից և հասարակական հարաբերություններից անկախ վերցված։ Հարց է ծագում. ո՞ւմ համար են քարոզում ազատությունը։ Եթե բանվորների համար է, ապա ինչո՞ւ այդ մասին խոսք չկա պարտիայի ծրագրի մեջ, պարտիա, որը, ի դեպ, արդեն ոչ թե բանվորական, այլ ժողովրդական պարտիա է իրեն հորջորջում։ Միգուցե ընդհանրապե՞ս մարդու համար։ Բայց ազատություն բոլորի համար գոյություն չունի։ Կա՛մ բանվորների և աշխատավորության ազատություն, կա՛մ ազատություն ձեռնարկատերերի համար։ Քանի դեռ գոյություն ունի արտադրամիջոցների մասնավոր սեփականություն և դրա հետ կապված վարձու աշխատանք, քանի դեռ բանվորը կախում ունի ձեռնարկատերից, նրա համար ազատություն չկա, ազատությունը մնում է որպես կապիտալիստների մենաշնորհ։

Այդ կարգի ազատության հետ մենք ծանոթ ենք Արևմտյան Գերմանիայի Բոննի կառավարության պրակտիկայից։ Այստեղ կապիտալիստը իսկապես ազատ է իր գործողությունների մեջ՝ աշխատանքից զրկելու և փողոց շպրտելու հազարավոր բանվորների, իջեցնելու նրանց աշխատավարձը, բարձրացնելու կենսամթերքների գները և այլն, և այլն, մինչդեռ բանվորի «ազատությունը» շահագործման ենթարկվելու ազատություն է միայն։ Արևմտյան Գերմանիայում ֆաշիստներն ու հակասեմիտները օգտվում են լիակատար ազատությունից իրենց ոճրագործ նպատակների համար, մինչդեռ խաղաղության և գերմանական ազգի շահերի համար պայքարի մարտիկները նստած են մեղադրյալների աթոռին։ Հիտլերյան ֆաշիզմի դեմ անձնվիրաբար մարտնչող Գերմանիայի Կոմունիստական պարտիան օրենքից դուրս է հայտարարված, բայց դրա փոխարեն երկրում գործում է պրոֆաշիստական և միլիտարիստական կազմակերպությունների լայն ցանց, որը ձգտում է իրականացնել Ադենաուերի կառավարության ռևանշիստական գաղափարները։

Այդպիսին է ազատությունը Բոննի ռեսպուբլիկայում, որի կոնստիտուցիան աջ սոցիալ-դեմոկրատները պաշտպանում են, մեծարելով այն որպես «ազատ-դեմոկրատական հասարակարգ»։ Սոցիալ-դեմոկրատների քաղաքական ղեկավարների համար Բոննի ռեսպուբլիկան «ոչ միայն անցումային շրջան է դեպի սոցիալիզմ, այլև պետական հասարակարգի մի ձև, որին նրանք ձգտում էին»։

Ինչպես ասում են, ճաշակի մասին չեն վիճում...

Նույնքան կեղծ և դեմագոգիկ են դեմոկրատական սոցիալիզմի այլ երկու սկզբունքները՝ արդարությունն ու համերաշխությունը։ Ծրագրի հեղինակների կարծիքով արդարության սկզբունքի իրականացումը՝ հասարակական պրոդուկտի արդարացի բաշխման հետևանքով կհասցնի «ժողովրդի ընդհանուր բարեկեցության»։ Բայց նրանք ընդամենը մի բան են մոռացել՝ հուշելու բանվորներին, թե ինչպես կարելի է հասնել հասարակական պրոդուկտի, եկամուտների այդ արդարացի վերաբաշխմանը, երբ դասակարգային պայքարի մեթոդը լիովին անընդունելի է սոցիալ-դեմոկրատիայի համար։ Բաշխման



պրոբլեմը արտադրության պրոբլեմից, կապիտալիստական հասարակության արտադրական հարաբերություններից խզելո՛վ, Գոդեսբերգի ծրագիրը կրկնում է վուլգար էկոնոմիստների վաղուց սնանկացած գաղափարները։ Սոցիալ-դեմոկրատական լիդերների այս տարօրինակ տեսական մարզանքները կարելի կլիներ բացատրել նրանց արհամարհական վերաբերմունքով դեպի մարքսիստական քաղաքատնտեսությունը, եթե այս հարցի շուրջը չլիներ կասկածելի նմանություն աջ սոցիալ-դեմոկրատների և Արևմտյան Գերմանիայի բուրժուական շրջանների հայացքների միջև։

Եկամուտների արդարացի բաշխման և ընդհանուր հասարակական շահերի համերաշխության մասին շաղակրատելով, սոցիալ-դեմոկրատական նոր ծրագիրը փորձում է հաճելի դարձնել պետական-մոնոպոլիստական կապիտալիզմի գիշատիչ քաղաքականության դեմքը։ Հրաժարվեցե՛ք ձեր արդարացի պահանջներից, կարգապահ եղեք կապիտալիստների նկատմամբ, բարձրացրե՛ք աշխատանքի արտադրողականությունը, մի՛ մոռացեք, որ ձեր շահերը համընկնում են կապիտալիստների շահերին,— այս հորդորանքով է դիմում բանվորներին նոր ծրագիրը։ Սոցիալ-դեմոկրատական վերնաշերտը այս դավաճանական քաղաքականությունն ակտիվ կերպով անց է կացնում Արևմտյան Գերմանիայի բանվոր դասակարգի շրջանում։ Որպես կանոն այդ պարտիայի ղեկավարները խոշոր, լավ վարձատրվող պաշտոններ են գրավում բաժնետիրական ընկերությունների դիտող խորհուրդներում և կոնցեռնների ու մոնոպոլիաների վարչություններում։ Այսպես, օրինակ, սոցիալ-դեմոկրատական պարտիայի տնտեսական գծով էքսպերտ Հ. Դեյստը որպես բաժնետիրական երկու ընկերությունների դիտող խորհրդի անդամ տարեկան մոտ 20.000 մարկ է ստանում, Արևմտյան Գերմանիայի արհմիությունների նախագահ Վիլլի Ռիխտերը՝ 23.000 մարկ և այլն, և այլն։ Էլ ինչպե՞ս դասակարգային հակասությունների անհաշտելիության մարքսիստական սկզբունքը նրանց մոտ չփոխարինվի դասակարգային շահերի և դասակարգերի համագործակցության սկզբունքով։ Մինչդեռ որակյալ բանվորի միջին տարեկան աշխատավարձը 4000 մարկից չի անցնում։

Գոդեսբերգի արտակարգ համագումարի ընդունած փաստաթուղթը վերացնում է 1925 թ. Հայդելբերգի ծրագիրը, որը թեև մշուշապատ և ջրիկացած ձևով, այնուամենայնիվ, պահանջ էր դնում մի քանի բնագավառների արտադրության միջոցները հանրայնացնելու մասին։ Նոր ծրագիրը այդպիսի խնդիր չի դնում բանվոր դասակարգի առաջ։ Այժմ այն փոխարինվում է բուրժուական ռեֆորմների նեո-լիբերալ պահանջներով, որոնք իբր մեղմացնելու են սրվող հակասությունները աշխատանքի և կապիտալի միջև։ Ծրագիրը փարիսեցիորեն պնդում է, թե «սոցիալ-դեմոկրատական տնտեսական քաղաքականության նպատակն է բոլորի աճող բարեկեցությունն ու արդարացի մասնակցությունը ժողովրդական տնտեսության եկամուտներին»։ Այդ քաղաքականությունը բնորոշող հիմնական գծերն են՝ «ձեռնարկատերերի ազատ նախաձեռնությունը», «ազատ մրցակցությունը», «ազատ սոցիալական շուկան» և բազում այլ ազատություններ։ Մասնավոր սեփականությունն ու մրցակցությունը աջ սոցիալ-դեմոկրատիայի տնտեսական կոնցեպցիայի անկյունաքարն են կազմում։ Արտադրության միջոցների մասնավոր սեփականությունը, ասում են ծրագրի հեղինակները, պետք է աջակցություն ստանա և խթանվի, «որքանով որ նա չի խոչընդոտում արդարացի սոցիալական կարգի կառուցմանը»։ Ճիշտ է,

ծրագիրը նշում է, թե եկամուտներն ու ունեցվածքը անարդարացի են բաժան-
ված, բայց դա իբր ստեղծվել է գլխավորապես տնտեսական և հարկային
սխալ քաղաքականության շնորհիվ և, հետևաբար, հեշտ ուղղելի է։ Ծրագրի
հեղինակները թաքցնում են, որ ոչ թե պարզապես տնտեսական քաղաքակա-
նությունն է այս դրությունը առաջացնում, այլ արտադրության միջոցների
մասնավոր սեփականությունը և պետության ենթարկվելը խոշորագույն մոնո-
պոլիաներին։

Բոննի կառավարության տնտեսական քաղաքականության ղեկավարները
հեշտությամբ կարող են ստորագրել սոցիալ-դեմոկրատիայի այս «սկզբուն-
քային-ծրագրային» կետերի տակ, ամենևին վտանգի չենթարկելով իրենց
տնտեսական գծի իմաստն ու ոգին։ Հենց անմիջապես համագումարից հետո
Բոննի տնտեսության մինիստր Էրհարդը գոհունակությամբ հայտարարեց, թե
սոցիալ-դեմոկրատիայի լիդերները «հանգեցին այնպիսի ձևակերպումների,
որոնք... իմ սեփական տնտեսական դրույթների ընդօրինակումն են»։

## Ռեֆորմիզմը ծառայում է մոնոպոլիստական կապիտալին

Նոր ծրագրի տնտեսական կոնցեպցիան ձգտում է արմատավորել բանվոր
դասակարգի շրջանում քեյնսականության վնասակար գաղափարները որպես
հակաթույն աշխատավորական մասսաների այն ուժեղացող զայրույթի դեմ,
որ Բոննի կառավարության մոնոպոլիստական քաղաքականությունն է առա-
ջացնում։ Անգլիական բուրժուական տնտեսագետ Ջ. Մ. Քեյնսի դրույթները
շատ հարմար զենք են ամեն տեսակ ռեֆորմիստների ձեռքին, այսպես կոչ-
ված «երրորդ ուղու» տեսությունը հաստատելու համար։ Այդ տեսության
համաձայն արտադրության միջոցների մասնավոր սեփականության պայման-
ներում միանգամայն հնարավոր է սոցիալիստական կարգերի ստեղծում՝
հարկավոր է միայն նեոկապիտալիզմի քեյնսական դեղատոմսը կիրառել։ Հա-
նուն այդ փրկարար դեղատոմսի անգլիական լեյբորիստները, գերմանական և
ավստրիական սոցիալ-դեմոկրատները, տարբեր գույնի սոցիալիստները բան-
վորական շարժման վզին են փաթաթում կապիտալիզմը բարելավելու իրենց
ռեֆորմիստական տակտիկան։

Համաձայնելով Քեյնսի տեսությանը՝ ԳՍԴԿ-ի աջ տեսաբաններն ու ղե-
կավարները կապիտալիստական տնտեսության ճգնաժամային երևույթները
վերագրում են տնտեսական քաղաքականության թերություններին։ Բուրժուա-
կան տեսաբանների հետ միասին նրանք ճգնում են վստահություն ներշնչել
դեպի մոնոպոլիաները և դրանց ենթարկվող Բոննի կառավարությանը, թաքցը-
նել աշխատավորական մասսաների թշվառ դրության իսկական պատճառ-
ները։

Այսպես, օրինակ, նոր ծրագրում տեղ է գտել Քեյնսի տխրահռչակ դրույ-
թը ազգաբնակչության լրիվ զբաղվածության մասին կապիտալիզմի պայման-
ներում։ «Կայուն վալյուտայի հիման վրա,— ասում է ծրագիրը,—տնտեսական
քաղաքականությունը պետք է ապահովի լրիվ զբաղվածություն»։ Բայց այս-
պես ասել ու գրել կարող են միայն մարդիկ, որոնք գիտակցաբար աչքերը
փակում են գործազուրկների բազմամիլիոն բանակի առջև, որ գոյություն ունի
կապիտալիստական երկրներում, այդ թվում նաև Արևմտյան Գերմանիայում։
Մարքսիզմի քաղաքատնտեսությունը վաղուց արդեն ապացուցել է, որ կա-



պիտալիզմի օրոք գործազրկությունը կապված է արտադրության միջոցների
մասնավոր սեփականության հետ, որն արգելակում է հասարակության ար-
տադրողական ուժերի զարգացումը։ Եվ ո՛չ մի պետական կարգավորում կա-
պիտալիզմի օրոք չի կարող վերացնել ճնշումներն ու գործազրկությունը և
ապահովել ազգաբնակչության լրիվ զբաղվածությունը։ Դա հնարավոր է դար-
ձել միայն պլանային սոցիալիստական տնտեսություն վարող երկրներում՝
Սովետական Միությունում և սոցիալիստական լագերի մյուս երկրներում,
որոնց փորձը սակայն լռության է մատնված ռեֆորմիստների ծրագրում։

Գերմանական աջ սոցիալիստական լիդերները թմբկահարում են ժամա-
նակակից մոնոպոլ-կապիտալիստական պետության արտադասակարգային
էությունը։ Այդ հակամարքսիստական թեորիան ցենտրիստ Ռ. Հիլֆերդինգը
մանրամասն մշակել է 1927 թ. սոցիալ-դեմոկրատիայի Քիլի համագումարում։
Այն ժամանակ Հիլֆերդինգը պետության հետ կապիտալիստական տնտեսա-
կան կազմակերպությունների սերտաճման պրոցեսը «պլանաչափ արտադրու-
թյան սոցիալիստական սկզբունքի» հաղթանակ էր համարում և կապիտա-
լիստական պետությունից պահանջում՝ միջամտել տնտեսությունը ղեկավա-
րելու գործին։ Նա կոչ էր անում սոցիալ-դեմոկրատիային՝ պայքարել պե-
տության համար և «պետությունը դարձնել քաղաքական լավագույն գործիք»։
Հիլֆերդինգի և Ընկ. նման հայացքները օգնում էին կապիտալիզմին հաստա-
տապես ոտքի կանգնելու, զինաթափում բանվոր դասակարգին սոցիալիզմի
համար մղվող պայքարում։

Այն ժամանակ սոցիալ-դեմոկրատիան իր քաղաքականությամբ նպաս-
տեց ֆաշիզմի հաղթանակին ամբողջ Գերմանիայում։ Այժմ այդ նույն բուր-
ժուա-ռեֆորմիստական տեսությունը զարգացնելով՝ աջ սոցիալ-դեմոկրա-
տիան ճանապարհ է հարթում նեո-ֆաշիստական կարգերի հաստատմանը
Արևմտյան Գերմանիայում։

Այդ ուղին արդեն նշված է Գոդեսբերգի փաստաթղթում։

Ծրագիրն «ընդունում է Գերմանիայի ֆեդերատիվ ռեսպուբլիկայի հիմ-
նական օրենքը», այսինքն՝ ճանաչում է բուրժուական ռեսպուբլիկան, որտեղ
ֆաշիզմը, օգտվելով կառավարության բարեհաճ պատրաստակամությունից,
անպատիժ կերպով իր թունոտ գլուխն է բարձրացնում։ Թե կառավարությու-
նը և թե օպոզիցիան, նշում է ծրագիրը, «երկուսն էլ պատասխանատվություն
են կրում պետության համար»։ Շաղակրատելով փոխադարձ պատասխանա-
տվության մասին, աջ սոցիալ-դեմոկրատները դրանով իսկ սքողում են Բոն-
նի պետության դասակարգային բնույթը, ներկայացնում են այն որպես արտա-
դասակարգային պետություն, որն իր գործունեությամբ իբր արմատապես փո-
խում է կապիտալիզմի էությունը։ Իսկ իրականում պետության դերի բարձ-
րացումը էլ ավելի ուժեղացնում է մոնոպոլիաների տնտեսական-քաղաքական
դիրքերը։ Կապիտալիստական մոնոպոլիաները պետական ապարատը իրենց
են ենթարկում և օգտագործում իրենց շահերի համար։ «Երբ մոնոպոլիան ա-
ռաջացել է արդեն,— գրել է Վ. Ի. Լենինը,— և միլիարդների հետ է խաղում,
նա բացարձակ անխուսափելիությամբ թափանցում է հասարակական կյանքի
բոլոր կողմերը, անկախ քաղաքական կառուցվածքից և որևէ այլ «մասնա-
վորություններից»» (Երկեր, հ. 22, էջ 312)։

Մոնոպոլիաների ներթափանցումը հասարակական կյանքում, մոնոպո-
լիաների և կառավարության ներկայացուցիչների «անձնական ունիան» չա-

փազանց ակնառու է ԳՖՌ-ում։ Բավական է նշել, որ արևմտագերմանական 17 կոնցեռններ ունեն 22,6 մլրդ հիմնական կապիտալ կամ տիրում են ամբողջ ակցիոներական կապիտալի 80 տոկոսը։ Այդ կոնցեռնների թվին են պատկանում Մաննեսմանի, Տիսսենի, Սիմենսի, Ստիննեսի, Ֆլիկի, Կլենկների «Ի. Գ. Ֆարբենինդուստրի» կոնցեռնները, որոնք Հիտլերի հետ միասին նախապատրաստեցին 2-րդ համաշխարհային պատերազմը և այժմ՝ դենացիֆիկացիայի և դեկարտելիզացիայի ֆարսից հետո ոչ միայն վերադարձրել են իրենց հին դիրքերը, այլև տնտեսապես ավելի են հզորացել։

Արևմտա-գերմանական 8 կոնցեռն և պետական 2 ձեռնարկություն արտադրում են պողպատի արտադրության 45 տոկոսից ավելին, քարածխի հանույթի 70 տոկոսը, կոքսի՝ 75 տոկոսը և այլն։ «Ի. Գ. Ֆարբեն» կոնցեռնի 3 ձեռնարկություններ արտադրում են բոլոր քիմիկատների գրեթե կեսը։ Խոշորագույն մոնոպոլիաներն իրենց են ենթարկել արևմտա-գերմանական տնտեսության բոլոր բնագավառները և իրենց կամքն են թելադրում երկրի քաղաքական կյանքում։ ԳՖՌ կառավարության մինիստրներից շատերը երկրի խոշորագույն կոնցեռններն ու բանկերն են անմիջականորեն ներկայացնում։ Ինքը՝ կանցլեր Կ. Ադենաուերը երկար տարիներ Գերմանական բանկի դիտող խորհրդի անդամ է եղել։ Մինիստրներից մի քանիսը՝ ներքին գործոց մինիստր Շրեդերը, պաշտպանության մինիստր Շտրաուսը, տնտեսության մինիստր Էրհարդը, մինիստրներ՝ զինվորական ոճրագործ Օբերլենդերը, Լեմմերը, Շեֆֆերը և ուրիշներ նախկին նացիստներ են։ Զորքը ամբողջապես գտնվում է հիտլերյան նախկին գեներալների ձեռքում։ Արդարադատության օրգաններում և պետական այլ կարևոր պոստերում մասսայաբար նստոտած են նացիստական պարտիայի նախկին անդամներ։

Ուստի և զարմանալի չէ, որ ռեակցիայի այդ ուժերը կատաղի հարձակում են սկսել ազգաբնակչության դեմոկրատական իրավունքների դեմ, հետապնդում են երկրի պրոգրեսիվ ուժերը։ ԳՖՌ-ում տասնյակներով փակվում են դեմոկրատական կազմակերպությունները։ 1956 թ. օգոստոս ամսին արգելվեց Գերմանիայի Կոմունիստական պարտիան։ 1951 թ. սկսած արգելվել է ավելի քան 200 դեմոկրատական կազմակերպությունների գործունեությունը։ Ամբողջ երկրով մեկ տարածվեց դատական հետապնդումների ալիքը, որ պսակվեց Դյուսսելդորֆի ամոթալի պրոցեսով խաղաղության և դեմոկրատիայի համար պայքարող մարտիկների դեմ։ «Նացիստներն ու հակասեմիտները բարձր և բարձրագույն պոստեր են գրավում, խաղաղության մարտիկները նստած են դատապարտյալի աթոռին,— ահա Ադենաուերի, Շրեդերի և Շտրաուսի հասկացած դեմոկրատիան»,— զայրույթով ասում են արևմտա-գերմանական բանվորները։

Այսպիսի անհրապույր լույսի տակ է երևում Բոննի «ապադասակարգային» պետությունը, որի պատասխանատվությունն ու պաշտպանությունն իր վրա է վերցրել աջ սոցիալ-դեմոկրատիան Գոդեսբերգի ծրագրի համաձայն։

Արևմտյան Գերմանիայի բանվոր դասակարգն ու ժողովրդական մասսաները սեփական փորձով համոզվում են, թե ինչ է ներկայացնում մոնոպոլիաների և կոնցեռնների գիշատիչ քաղաքականությունը, որ դիմակավորված է «ժողովրդական կապիտալիզմի», «համընդհանուր բարեկեցության», «ժողովրդական բաժնետոմսերի» վերաբերյալ խաբեյական ֆրազներով։ Այս բոլոր սնահոդ առասպելները չեն կարող վերացնել այն տխուր իրականությունը, որ



1957 թ. սկսած արևմտա-գերմանական արդյունաբերության ճգնաժամային երևույթները ուժգնորեն խփեցին բանվոր դասակարգի շահերին։ Միայն Ռուրի շրջանում փակվել են 40-ից ավելի հանքահորեր, տասնյակ հազարավոր բանվորներ փողոց են նետվել։ Պահեստներում կուտակվել է 20 միլիոն տոննա ածուխ։ Գործազրկության աճը, Ռուրի ածխագործների պայքարը, գործադուլային շարժման ուժեղացումը ԳՖՌ-ում վկայում են բուրժուազիայի և պրոլետարիատի միջև դասակարգային հակասությունների սրման մասին։ Այս երևույթներին զուգընթաց լայն մասսաների աչքում գնալով սնանկանում է «դեմոկրատական» կամ «ժողովրդական կապիտալիզմի» կոնցեպցիան, որպես նոր տնտեսական կացութաձև կապիտալիզմի և սոցիալիզմի միջև։ Սոցիալիզմի շինարարության բուռն վերելքը ժողովրդական դեմոկրատիայի երկրներում և, առաջին հերթին, Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկայում, ինչպես նաև Սովետական Միության աննախընթաց նվաճումները բոլոր բնագավառներում, ամենից լավ են ներգործում Արևմտյան Գերմանիայի բանվորության դասակարգային գիտակցության վրա, ռևոլյուցիոն ոգով զարգացնելով այն։

***

Գոդեսբերգի արտակարգ համագումարը տեղի ունեցավ այն ժամանակ, երբ պարզորոշ նկատվում էին միջազգային լարվածության մեղմացման նշանները՝ հակառակ «սառը պատերազմի» սնանկացած կուրսը պաշտպանելու Ադենաուերի կառավարության բոլոր ձգտումներին։ Սակայն այդ նույնպես չի արտացոլվել համագումարի ընդունած ծրագրում, այլև վերջինիս դրույթները «հայրենիքի պաշտպանության», այսինքն՝ Բոննի պետության վերաբերյալ, ըստ էության սատարում են Ադենաուերի կառավարության իմպերիալիստական քաղաքականությունը՝ զինված ուժերի հետագա ընդարձակման, ատոմային սպառազինման բնագավառում ներառյալ ջրածնային ռումբի արտադրությունը և տերիտորիալ պահանջներ առաջադրելը։ Ծրագրի հեղինակները «մոռացության» են մատնել բոլոր ժողովուրդների համար այնպիսի պրոբլեմներ, ինչպիսիք են ընդհանուր և լիակատար զինաթափման և տարբեր սիստեմների խաղաղ գոյակցության պրոբլեմները։ Գոդեսբերգի փաստաթղթում մի բառ անգամ չկա գերմանական հարցի լուծման այն ծրագրի մասին, որով մի ժամանակ հանդես եկավ հենց ինքը՝ սոցիալ-դեմոկրատիան։ Ադենաուերի «սառը պատերազմի» քաղաքականությունը, որ հենվում է ԱՄՆ-ի ռեակցիոն-միլիտարիստական շրջանների վրա, պաշտպանվում է աջ սոցիալ-դեմոկրատների կողմից, որոնք, ինչպես, օրինակ, Բրանդտն ու Կնյորինգենը նոր ծրագիրը բնորոշել են որպես «պայքարի ծրագիր ընդդեմ կոմունիզմի»։

Նոր ծրագրի ոգուն և իմաստին հավատարիմ մնալով սոցիալ-դեմոկրատական պարտիայի նախագահությունը այս տարվա փետրվարին հրապարակեց իր «Սոցիալիզմ թե՞ կոմունիզմ» խայտառակ փաստաթուղթը։ Արևմտա-գերմանական միլիտարիստներին մերկացնելու փոխարեն նրանք գերադասել են օգնության հասնել Ադենաուերի քաղաքականապես և բարոյապես վարկաբեկված կառավարությանը և իրենց կրակն ուղղել միջազգային դրության լարվածության թուլացման և խաղաղության հետևողական մարտիկների՝ կոմունիստների դեմ։

Գոդեսբերգի ծրագրի հետևողական կենսագործումն է 1960 թ. հունիսի 30-ի հայտնի ակտը, երբ «ձախի» համբավ վայելող Հ. Վեհները սոցիալ-դեմոկրատական ֆրակցիայի լռելյայն համաձայնությամբ Բունդեստագում պաշտպանեց Ադենաուերի ռազմատենչ քաղաքականությունը։ Վեհների ելույթը բացահայտ դավաճանություն էր բանվոր դասակարգի շահերին։ «Զինված ուժերի ատոմային սպառազինումը ռազմական անհրաժեշտություն է... Գերմանիայի սոցիալ-դեմոկրատական պարտիան չի լքի ֆեդերատիվ ռեսպուբլիկային»,— պաթետիկորեն հայտարարեց Վեհները, արդարացնելով Ադենաուերի նվիրվածությունը ՆԱՏՕ-ի գործին։

Գերմանական աջ սոցիալ-դեմոկրատիայի կապիտուլյանտական գիծը խիստ դժգոհություն է առաջացնում շարքային անդամների և բանվորության շրջանում։ Դրա հետևանքով վերջին կոմունալ ընտրությունների ժամանակ, ինչպես հայտնում է «Նոյես Դոյչլանդ» թերթը հոկտեմբերի 25-ի համարում, ԳՍԴՊ-ն նախորդ ընտրությունների համեմատությամբ շատ շրջաններում ավելի քիչ ձայներ է ստացել։

Գերմանական սոցիալ-դեմոկրատիայում կատարվող խմորումների տեսակետից չափազանց նշանակալից է մետաղագործների խոշորագույն արհմիության համագումարը, որը կայացավ այս տարվա հոկտեմբերի վերջերին։ Չնայած աջ պարագլուխների բոլոր ջանքերին, համագումարը կտրուկ արտահայտվեց ընդդեմ ատոմային սպառազինումների ու դասակարգերի համերաշխության, առաջադրելով արդյունաբերության վճռական ճյուղերի հանրայնացման պահանջը։

Ատոմային սպառազինումների հարցի շուրջը աջ ղեկավարության և օպոզիցիայի միջև նոր, սուր բախումներ տեղի ունեցան սոցիալ-դեմոկրատիայի վերջին՝ Հաննովերի համագումարում, որը կայացավ այս տարվա նոյեմբերի երկրորդ կեսերին։ Բազմաթիվ սոցիալ-դեմոկրատական պատգամավորներ՝ արտահայտելով տեղական կազմակերպությունների խիստ դժգոհությունը, համագումարից պահանջում էին վճռական պայքար հայտարարել Ադենաուերի «ատոմային մահվան» քաղաքականությանը։ Վեհների—Բրանդտի—Էրլերի աջ ղեկավարությանը զանազան մեքենայությունների շնորհիվ հաջողվեց խեղդել օպոզիցիայի ձայնը և անցկացնել մի որոշում, որը խոսում է Բունդեսվերը «ժամանակակից և գործուն (հասկացիր՝ ատոմային—Ա. Բ.) զենքով» զինելու մասին։ Բայց արդյոք դա երկա՞ր կտևի։

Արևմտա-գերմանական բանվոր դասակարգը անձնատուր չի եղել։ Նրա մեջ ուժեղ են սոցիալիստական տրադիցիաները։ Հարյուր հազարավոր շարքային բանվորներ ու սոցիալ-դեմոկրատներ երես են դարձրել աջ լիդերների դավաճանական քաղաքականությունից։ Արևմտյան Գերմանիայում՝ կապիտալի հարձակման պայմաններում գնալով հասունանում է բանվոր դասակարգի գործողությունների միասնության գաղափարը՝ հանուն խաղաղության, դեմոկրատիայի և աշխատավորության շահերի։ Միայն այդ միջոցով է հնարավոր վճռական հաղթանակը իմպերիալիստական ուժերի դեմ մղվող պայքարում։

---

# ՊՐՈՊԱԳԱՆԴԵՆՔ ԳԻՏՈՒԹՅԱՆ ՆՎԱՃՈՒՄՆԵՐԸ

*Մ. ՄԵԼԻՔՅԱՆ*

Սոցիալիստական հասարակությունը, ավելի, քան որևէ այլ հասարակարգ, շահագրգռված է գիտության ամենալայն զարգացման, գիտական գիտելիքները ամենալայն մասսաներին հասցնելու մեջ։ Մեր երկրում անցումը սոցիալիզմից կոմունիզմին պահանջում է արտադրողական ուժերի և աշխատանքի արտադրողականության աննախընթաց աճ, որի կարևորագույն պայմաններից մեկը գիտության և տեխնիկայի հետագա բուռն զարգացումն է։

Գիտությունը սոցիալիստական հասարակության մեջ ոչ միայն ամբողջովին ծառայում է աշխատավոր մասսաներին, այլև դառնում է համաժողովրդական, բառիս բուն իմաստով մասսայական երևույթ։ Արդեն իսկ այժմ մեր երկիրը գիտական կադրերի պատրաստման և՛ տեմպերով, և՛ քանակով առաջ է անցել ամենազարգացած կապիտալիստական երկրներից, և դա մեկն է այն կարևոր գործոններից, որոնք հնարավորություն են տվել սովետական գիտությանը մի շարք հիմնական բնագավառներում ընթանալ համաշխարհային գիտության առջևից։

Սակայն գիտությունը, ավելի քան որևէ այլ բնագավառ, անընդհատ վերընթաց զարգացում է ապրում և նրան խորթ է քարացածությունը։ Գիտության մեջ ոչ միայն զարգանում ու նոր աստիճանի են հասնում արդեն հայտնի բնագավառներն ու ճյուղերը, այլև առաջանում են նոր բնագավառներ, նոր ճյուղեր։ Այսպես, վերջին երկու տասնամյակում սկիզբ առան և բուռն թափով զարգացան միջուկային ֆիզիկան, կիբեռնետիկան, նոր աստիճանի հասան պոլիմերների քիմիան, կիսահաղորդիչների ֆիզիկան, բիոքիմիան և գիտության բազմաթիվ այլ ճյուղեր։

Գիտության առաջընթացը ոչ միայն գիտությամբ զբաղվող մարդկանց՝ գիտնականների քրտնաջան ու նպատակասլաց հետազոտությունների, տարիների համառ որոնումների արգասիքն է, այլև այն բանի արդյունքը, որ հազարներ ու տասնյակ հազարներ հետաքրքրվում են գիտական պրոբլեմներով, փորձում ըմբռնել դրանք, խորանալ դրանց մեջ։ Հենց այդ տասնյակ հազարներից են ելնում այն ոչ սակավաթիվ անհատները, որոնք իրենց ամբողջ կյանքը նվիրաբերում են գիտական հետազոտությանը, նոր խոսք են ասում գիտության մեջ։

Այս իսկ տեսակետից ակնհայտ է, թե որքա՜ն կարևոր և անհրաժեշտ է լայն մասսաներին, մասնավորապես երիտասարդ սերնդին գիտության ամենաբազմազան բնագավառներով հետաքրքրելը, նրանց միտքը դեպի գիտության այս կամ այն առավել հեռանկարային, հասարակության զարգացման

տվյալ ժամանակաշրջանի համար առավել անհրաժեշտ ճյուղերի, պրոբլեմների հետազոտությունն ուղղելը։

Մարքսիզմ-լենինիզմի կլասիկները խոշոր նշանակություն են տվել գիտության մասսայականացմանը։ Վ. Ի. Լենինը գտնում էր, որ գիտության նվաճումների մասսայականացման համար սոցիալիստական հասարակարգում պետք է կիրառել ամենաբազմազան միջոցներ։

Մեր երկրում գիտական գիտելիքների հաղորդումը երիտասարդ սերնդին, ինչպես արդեն նշվեց, վիթխարի չափեր է ընդունել։ Այդ կատարվում է ամենից առաջ, իհարկե, հանրակրթական դպրոցների և բուհերի միջոցով, որոնք երիտասարդությանը տալիս են սիստեմատիկ գիտելիքների որոշակի մինիմում գիտության հիմնական բնագավառներից։ Սակայն գիտելիքների հաղորդումը և պատվաստումը, նախ, չի սահմանափակվում միայն դպրոցով և բուհով և, երկրորդ, այնտեղ ձեռք բերված գիտելիքները պետք է լրացվեն, հարստացվեն ու խորացվեն գիտության նոր ճյուղերի ու հարցերի, ինչպես և նորագույն տվյալների իմացությամբ, տվյալներ, որոնք տեղ չեն գտել և հիմնականում չեն էլ կարող տեղ գտնել դասագրքերում։ Մյուս կողմից, կան զգալի թվով երիտասարդներ, որոնք համեմատաբար սահմանափակ սիստեմատիկ կրթություն են ստացել, զբաղված են անմիջապես արտադրական գործունեությամբ և գիտա-տեխնիկական գիտելիքների խիստ պահանջ են զգում։

Այսպիսով պարզ է, որ հասարակության մեջ հատկապես երիտասարդության համար անհրաժեշտ են գիտության յուրացման ասպարեզում դպրոցներին, բուհերին և կրթող ու դաստիարակող մյուս կազմակերպություններին լրացնող գործոններ։ Մեր երկրում այդպիսի գործոններից մեկը քաղաքական և գիտական գիտելիքների տարածման ընկերություններն են, որոնք հիմնականում բանավոր՝ զեկուցումների ու զրույցների, և մասամբ էլ գրավոր՝ գրքույկների միջոցով պրոպագանդում են գիտության նվաճումները, դրանք մատչելի դարձնում լայն մասսաներին։ Գիտություն տարածողների այդ մեծ բանակի մեջ մտնում են ինչպես մի քանի տասնյակ կամ հարյուր որակյալ դասախոսներ՝ գիտական հետազոտությամբ զբաղված մարդիկ, այնպես էլ հազարավոր համեմատաբար, ավելի ցածր որակավորման տեր մարդիկ՝ ուսուցիչներ, բժիշկներ, ինժեներներ և այլն։ Եվ ոչ միայն երկրորդները, այլ նաև առաջինները միշտ զգում են գիտության այս կամ այն բարդ պրոբլեմների և նրա նորագույն նվաճումների հանրամատչելի շարադրանքի կարիքը։ Նրանց համար անտարակույս լավագույն աղբյուր են, առաջին հերթին, գիտության տարբեր բնագավառների ու պրոբլեմների մասին հրապարակի վրա եղած գիտական մենագրություններն ու ամսագրային հոդվածները։ Բայց դրանք հաճախ մատչելի չեն ոչ միայն ընթերցող լայն մասսաների և դասախոսների հիմնական, ավելի բազմամարդ մասի համար, այլև երբեմն նույնիսկ գիտությամբ անմիջապես զբաղվողների մի մասի համար։

Գիտության ականավոր շատ գործիչներ մեծ ուշադրություն են նվիրել գիտության խոշոր և բարդ պրոբլեմները հանրամատչելի շարադրելու և ընթերցողների համեմատաբար լայն շրջաններին հասցնելու գործին։ Այսպես, Էյնշտեյնը իր ստեղծած հարաբերականության տեսության մասին հատուկ հանրամատչելի գիրք է գրել։ Ցիալկովսկին գիտական հանրամատչելի հոդվածներ է գրել միջմոլորակային ճանապարհորդությունների տեսության մասին, ակադեմիկոս Վավիլովը հանրամատչելի գիրք է գրել լույսի տեսության, ակադեմի-



կոսներ Ֆերսմանն ու Օբրուչևը՝ երկրաբանության տարբեր հարցերի մասին։ Գիտության չտեսնված բուռն զարգացումը XX դարում առաջացրեց բոլորովին նոր մի երևույթ՝ գիտական պրոբլեմները մասսայականացնող հատուկ գործիչներ։ Ամբողջ աշխարհում լայնորեն հայտնի Պերելմանը, Ռուբակինը, Իլյինը, Պոլ դե Կրյուին իրենց ամբողջ կյանքը նվիրելով գիտության նվաճումների հանրամատչելի պրոպագանդային, բազմաթիվ արժեքավոր աշխատություններ են գրել՝ ֆիզիկայի, մաթեմատիկայի, քիմիայի, կենսաբանության, բժշկության նվաճումները հասկանալի դարձնելով միլիոնների համար։ Դրանցից մեկի՝ Ռուբակինի գործունեությունը շատ բարձր է գնահատել Ն. Ս. Խրուշչովը։

Ռուսաց լեզվով գիտա-հանրամատչելի գրականությունը մի հսկայական ծով է, որն անընդհատ լցվում է ոչ միայն ռուս գիտնականների և ժողովրդականացնողների (պոպուլյարիզատորների) գրքերով, այլև թարգմանական գրականությամբ։ Անգլերեն, ֆրանսերեն, չեխերեն, բուլղարերեն և այլ լեզուներով հրապարակ եկած գիտա-հանրամատչելի գրքերը արագ թարգմանվում են ռուսերեն և մասսայական տիրաժներով հրամցվում ընթերցողին։ Հայոց լեզվով հրատարակված գիտա-հանրամատչելի գրքերի քանակն անհամեմատ քիչ է։ Դրա պատճառներից մեկն այն է, որ մեր գիտնականներից միայն մի քանի հոգի են զբաղվում այդ կարևոր գործով, այն էլ դեպքից-դեպք։ Գիտա-հանրամատչելի գրքույկներով վերջին տարիներին հանդես են եկել հիմնականում պրոֆ. Հր. Բատիկյանը, Ռ. Գաբրիելյանը, դոցենտ Բ. Թումանյանը (նա ամենից բեղմնավորն է, հրապարակել է հինգ գրքույկ աստղագիտության հարցերի մասին), պրոֆ. Տ. Ղազանչյանը և դոցենտ Լ. Գյուլբուդաղյանը։ Ահա և հեղինակների համարյա թե ամբողջ ցուցակը։

Երկրորդ պատճառը թարգմանական գրքերի չափազանց փոքր քանակն է։ Ճիշտ է, վերջին տարիներս հայերեն թարգմանվել և հրատարակվել են այնպիսի նշանակալից երկեր, ինչպես՝ Պերելմանի «Հետաքրքրաշարժ ֆիզիկան» և «Աշխույժ մաթեմատիկան», Լիպսի «Իրերի ծագումը», Լոուկոտկայի «Գրի զարգացումը», Էնշլենի «Կրոնի ծագումը», Տիմիրյազևի «Դարվինի տեսության համառոտ ուրվագիծը», իսկ բոլորովին վերջերս նաև Էյնշտեյնի «Հարաբերականության սկզբունքը», Պայերլսի «Բնության օրենքները», Լաուէի «Ֆիզիկայի պատմությունից», Շտերնֆելդի «Արհեստական արբանյակները», ինչպես և մի քանի տասնյակ գրքույկներ գիտության և տեխնիկայի տարբեր հարցերի մասին։ Բայց համարյա թե այսքանով էլ հրատարակվածների ցուցակը լրանում է, իսկ դա մի կաթիլ է ծովի մեջ (ի միջի այլոց հիշված համարյա թե բոլոր գրքերն էլ արագ սպառվել են)։

Անհրաժեշտ է մտածել հայերեն լեզվով հրատարակվող գիտա-հանրամատչելի գրքերի թիվն ավելացնելու մասին՝ ավելի լայնորեն ընդգրկելով հատկապես ֆիզիկայի, քիմիայի, կենսաբանության, կիբեռնետիկայի, աստղագիտության ժամանակակից պրոբլեմները և այդ գործին մասնակից դարձնել Հայպետհրատին, Գիտությունների ակադեմիայի և Պետական համալսարանի հրատարակչություններին։ Հարկավոր է թարգմանել և հրատարակել ռուսական հեղինակների մի շարք հիանալի երկեր. ինչպես, օրինակ, ակադեմիկոս Վավիլովի «Глаз и солнце», Կորրինսկու և Պեկելիսի «Быстрее мысли», Գլադկովի «Энергия атома», «Что такое радиоэлектроника», ինչպես և Վիների «Кибернетика и общество», Պոլ դե Կրյուիի «Борьба с безумием»,

և մի շարք այլ, արդեն հանրահայտ գրքեր։ Հարկավոր է, այնուհետև, պլանավորել գոնե մի քանի տարվա համար գիտա-հանրամատչելի գրականության հրատարակությունը և, որ շատ կարևոր է, տեղական կարող ուժերին (իսկ այդպիսի ուժեր կա՞ն) ներգրավել այդ գործում։

Բայց դա հարցի դեռևս լրիվ լուծումը չէ, որովհետև գրքերն ու գրքույկները հիմնականում ընդգրկում են արդեն հանգամանորեն մշակված հարցերը, այնինչ գիտության բուռն զարգացումն անընդհատ նորություններ է բերում, նորություններ, որոնք երբեմն զգալիորեն փոխում են մեր պատկերացումը այս կամ այն կարևոր հարցի և նույնիսկ ամբողջ բնագավառի մասին։ Այնուհետև, կյանքը պահանջում է, որ կատարված քիչ թե շատ խոշոր գիտական հայտնագործությունների մասին ընթերցողին տրվեն մատչելի համառոտ տեղեկություններ, հանձնարարվեն գրքեր։ Նոր հայտնագործությունները գիտնականների կողմից կմշակվեն և գրքերում, նամանավանդ դասագրքերում, կարտացոլվեն համեմատաբար ուշ։ Դա անկասկած որոշակի ժամանակ է պահանջում, սակայն գիտության նոր խոսքը անհրաժեշտ է ընթերցողին, հատկապես երիտասարդ ընթերցողին։ Էլ չենք խոսում գիտական նոր հիպոթեզների՝ հավանական ենթադրությունների մասին, որոնք հարկավոր է հաղորդել ընթերցողների լայն շրջանի, որ նրանց միտքը գրգռեն, հրեն այն դեպի նոր հետազոտություններ, գիտական նոր սխրագործություններ։

Մեր երկրում մեծ ուշադրություն է նվիրվում գիտության նորագույն նվաճումների հանրամատչելի գրավոր պրոպագանդային։ Մամուլի կենտրոնական օրգանները բավականին հաճախակի հաղորդումներ են տպագրում գիտության նորագույն նվաճումների մասին, հրապարակում են ականավոր գիտնականների ծավալուն հոդվածները գիտության կարևորագույն պրոբլեմների մասին։ Բայց գիտության նորագույն նվաճումների պրոպագանդայի հիմնական օջախը, այնուամենայնիվ, հատուկ գիտա-հանրամատչելի ամսագրերն են, որոնք լույս են տեսնում ամեն ամիս արդեն տասնյակ տարիներ։ Այդպիսիք են «Природа» (ՍՍՌՄ Գիտությունների ակադեմիայի օրգան), «Техника молодежи» և «Юный техник» (ՀամԼԿԵՄ Կենտկոմի օրգան), «Знание сила» (ՍՍՌՄ Մինիստրների Սովետի Պրոֆեսիոնալ-տեխնիկական կրթության պետական կոմիտեի օրգան), «Наука и жизнь» և «Наука и религия» (Քաղաքական և գիտական գիտելիքների տարածման համամիութենական ընկերության օրգան), «Вокруг света» (ՀամԼԿԵՄ Կենտկոմի օրգան) ամսագրերը։

Այդ ամսագրերը մեծ ժողովրդականություն են վայելում և թեև տպագրվում են խոշոր տպաքանակներով («Наука и жизнь»-ը լույս է ընծայվում 210 հազար, իսկ «Техника молодежи»-ին նույնիսկ 600 հազար օրինակ), բայց բաժանորդագրվելը բավականին դժվար է, այնքան մեծ է պահանջը։

Վերոհիշյալ բոլոր ամսագրերը, սակայն լույս են տեսնում միայն ռուսերեն լեզվով և, հասկանալի է, մատչելի չեն ռուսերենին վատ տիրապետողների համար։ Առաջ, երբ մեր երկրի ժողովուրդները ետ էին մնացել կուլտուրայի և գիտության զարգացման ասպարեզում, ազգային լեզուներով գիտա-հանրամատչելի և ոչ էլ նույնիսկ գիտական ամսագրերի առանձին պահանջ չկար։ Բայց այժմ, երբ Սովետական Միության Կոմունիստական պարտիայի լենինյան ազգային քաղաքականության իրականացման շնորհիվ սովետական երկրի սոցիալիստական ազգերը տնտեսության, կուլտուրայի և գիտության զարգացման մակարդակով հասել են ամենաառաջավոր երկրներին, ազգային լեզուներով գիտա-հանրամատչելի ամսագրերի հրատարակությունը անհրաժեշտություն է դարձել։ Մի քանի ռեսպուբլիկաներում՝ Ուկրաինայում, Ադրբեջանում, Ուզբեկստանում, Լատվիայում արդեն մի քանի տարի է, ինչ ազգային լեզուներով հրատարակվում են «Գիտությունը և կյանքը» խորագրով գիտա-հանրամատչելի ամսագրեր, Վրաստանում հրատարակվում է «Գիտություն և տեխնիկա» վերնագրով ամսագիրը։

Մեր ռեսպուբլիկայում նույնպես հասունացել է հայոց լեզվով գիտա-հանրամատչելի ամսագիր հրատարակելու հարցը։ Գործարանների երիտասարդ բանվորները, կոլտնտեսական երիտասարդությունը, բուհերի ուսանողներն ու դպրոցների բարձր դասարանների աշակերտները վաղուց արդեն պահանջում են այդպիսի ամսագիր։ Եվ նրանք իրավացի են։ Մեր թերթերը լավագույն դեպքում տպագրում են կցկտուր հաղորդումներ այս կամ այն գիտական հայտնագործության մասին, սակայն, չգիտես ինչու, խուսափում են հատկապես գիտության բարդ հարցերի լուսաբանումից։ Երբեմն նրանք լռությամբ են անցնում նույնիսկ տեղում կատարված գիտական խոշոր հայտնագործությունների կողքով, այնինչ դրանց մասին գրում է կենտրոնական մամուլը։ Այսպես, օրինակ, ակադեմիկոս Համբարձումյանի և դոցենտ Սահակյանի կողմից հիպերոնային աստղերի հայտնագործության մասին գրեցին «Комсомольская правда», «Юный техник», իսկ մեր թերթերը լռեցին։ Մեր պարբերականներից միայն «Պիոներ» ամսագիրն է, որ ընդառաջելով պատանեկության պահանջին այս տարվա համարներում հրապարակել է մի ամբողջ շարք գիտա-հանրամատչելի հոդվածներ՝ նվիրված գիտության տարբեր բնագավառներին։ Բայց, ցավոք սրտի, «Պիոները» կարող է բավարարել սոսկ համեմատաբար ցածր տարիք ունեցողներին, այնինչ խոսքը երիտասարդության մասին է։ Պահանջվում է հատուկ գիտա-հանրամատչելի ամսագիր, որի հրատարակման բոլոր պայմանները մեզ մոտ կան։ Պետհրատի, Գիտությունների ակադեմիայի և Համալսարանի հրատարակչությունների, ինչպես և «Պիոներ» — ամսագրի վերջին տարիների փորձը ցույց է տալիս, որ մեզ մոտ արդեն հասունացել են անհրաժեշտ կադրեր, իսկ դա ամենակարևորն է նման գործում։

Ոչ մեծ ծավալով (5—6 հեղինակային մամուլ) գիտա-հանրամատչելի ամսագիրը, գործի լավ դրվածքի դեպքում, մեզ մոտ կունենա մի քանի տասնյակ հազար մշտական սպառող։ Այն լուրջ օգնություն ցույց կտա մեր կրթող և դաստիարակող կազմակերպություններին և, որ շատ կարևոր է, կհանդիսանա գիտա-աթեիստական պրոպագանդայի լավագույն և նպատակասլաց օջախ։

Հայոց լեզվով գիտա-հանրամատչելի ամսագրի հրատարակության անհրաժեշտությունն այնքան ակնբախ է, որ կարիք չկա ապացույցներ փնտրել դրա օգտին։ Անհրաժեշտ է նախաձեռնել և սկսել գործը։ Հուսով ենք, որ պարտիական օրգանները, նկատի ունենալով ամսագրի անվերապահ նշանակությունը երիտասարդ սերնդի կոմունիստական դաստիարակության և կրթության համար, նրա դերը գիտա-աթեիստական պրոպագանդայի ծավալման մեջ, իրենց ձեռքը կվերցնեն նախաձեռնությունը և գործը կհասցնեն հաջող վախճանի։

---

# ՆՈՐ ՔԱՅԼ ՄԵԾ ՃԱՆԱՊԱՐՀԻՆ

**Բ. ԽԱՉԱՏՐՅԱՆ**

ՀԿՊ Վեդիի շրջկոմի քարտուղար

Այս տարի Վեդիի շրջանի պարտիական կազմակերպությունները սկսեցին ավելի մոտիկից զբաղվել կոլտնտեսությունների և սովխոզների առջև դրված կոնկրետ խնդիրներով, նրանց առօրյա գործունեությամբ։ Շրջանում լայն թափ ստացավ սոցիալիստական մրցությունը։

Ձեռնարկած այդ և մյուս միջոցառումները, բերքատվության բարձրացման և անասնաբուծության մթերատվության ավելացման ուղղությամբ ստանձնած պարտավորությունների կատարման ու գերակատարման համար մղվող պայքարը լավ արդյունք տվեցին։ Դա հատկապես ակնառու է յոթնամյակի երկրորդ տարում։ Այսպես, հացահատիկային կուլտուրաների ցանքատարածությունների յուրաքանչյուր հեկտարից այս տարի ստացվեց 22,7 ցենտներ բերք, որը 2 ցենտներով ավելի էր վերցրած սոցիալիստական պարտավորությունից։ Չնայած նրան, որ հացահատիկի ցանքատարածությունները կիսով չափ կրճատվել են, այս տարի ստացվեց երկու անգամ ավելի շատ համախառն բերք, քան 1955 թվականին։ Առանձին կոլտնտեսություններ (Թայթան, Այգևան, Ենգիջա, Ք. Վեդի, Նոր Կյանք) հասան ավելի բարձր ցուցանիշների և յուրաքանչյուր հեկտարից ապահովեցին 30—35 և ավելի ցենտներ բերք։

Տարեցտարի շրջանի այգեգործներն ավելացնում են խաղողի արտադրությունը։ Անցյալ տարի արտադրվեց 11 919 տոննա խաղող կամ 1958 թվականի համեմատությամբ՝ 2 անգամ ավելի։ Չնայած անբարենպաստ պայմաններին, այս տարի ևս բարվոք էր խաղողագործության վիճակը։ Ժամկետից շուտ կատարվեց ու գերակատարվեց պետությանը խաղողի վաճառքի պլանը։ Դա խաղողագործների անխոնջ աշխատանքի, այգիների մշակության կուլտուրան բարելավելու և հեկտարները լիարժեք դարձնելու արդյունք է։

Վերջին հինգ տարում մոտ 2000 հեկտար այգիներ տնկելու հետ միասին շրջանում խոշոր գործ կատարվեց հին այգիները լիարժեք դարձնելու ուղղությամբ։ 1955—56 թվականներին Արարատի կոլտնտեսությունը 211 հեկտար բերքատու այգիների յուրաքանչյուր հեկտարից ստանում էր ընդամենը 26—29 ցենտներ բերք։ Դրա պատճառը հեկտարների ոչ լիարժեքությունն էր. 211 հեկտարի վրա կային միայն 130—140 հեկտարի համար նախատեսված վազեր։ Երբ անդալիզների ու արմատակալների միջոցով լրացվեցին



բաց տարածությունները, կոլտնտեսությունը 1960 թվականին յուրաքանչյուր հեկտարից ստացավ 64 ցենտներ բերք։ Այգիները լիարժեք դարձնելու ուղղությամբ քիչ ջանքեր չթափեցին նաև Բ. Վեդու, Ավշարի, Խալիսայի, Շիրազլուի, Ք. Վեդու և այլ կոլտնտեսություններ։

Վեդիի շրջանում հնարավոր է մեծ չափով ընդարձակել խաղողի և պտղատու այգիների տարածությունները։ Այդ ուղղությամբ, իհարկե, քիչ աշխատանք չի կատարվել։ Եթե 1955 թվականին կար 1572 հեկտար խաղողի այգի, ապա այժմ այն հասնում է 3406 հեկտարի։ Այս տարի շրջանի այգեգործները կատարեցին նոր այգիների տնկման յոթնամյա պլանով սահմանված առաջադրանքը և այժմ աշխատում են այգիների ու ծառաստանների վերածել խոպան ու անմշակ տարածությունները։ Անմշակ ու ամայի տարածություններից վերջին չորս-հինգ տարվա ընթացքում Սպանդարյանի անվան և Արմաշի սովխոզների աշխատողները 500 հեկտար վերածել են խաղողի և պտղատու այգիների։

Շրջանում լայնորեն արմատավորվում է եգիպտացորենի մշակությունը։ Այս տարի այդ արժեքավոր կուլտուրան մշակվել է 1500 հեկտար տարածության վրա։ Եգիպտացորենի մշակության բնագավառում այս տարի Ավշարի, Բ. Վեդու, Ենգիջայի, Շիրազլուի կոլտնտեսությունները կիրառեցին անվանի մեխանիզատորներ Գիտալովի և Մանուկովսկու փորձը, դրանով իսկ կրճատեցին ձեռքի աշխատանքը, բարձրացրին բերքատվությունը և իջեցրին ստացվող կանաչ մասսայի ինքնարժեքը։ Բնորոշ է Շիրազլուի կոլտնտեսության մեխանիզատոր Մուրթուզովի նախաձեռնությունը։ Նա 40 հեկտար եգիպտացորեն մշակեց Գիտալովի մեթոդով և ծախսեց ընդամենը 188 մարդ-օր, հեկտարից ստանալով 350 ցենտներ կանաչ մասսա։ Մինչդեռ սովորական եղանակով կատարված 40 հեկտար եգիպտացորենի մշակության վրա ծախսվեց 7—8 անգամ ավելի մարդ-օր և հեկտարից ստացվեց 150 ցենտներ կանաչ մասսա։ Այս օրինակը ցույց է տալիս, թե բերքատվության բարձրացման գործում որքան մեծ նշանակություն ունի առաջավոր փորձի կիրառումը։ Եգիպտացորենի ցանքատարածությունների ավելացումն ու բերքատվության բարձրացումը հնարավորություն տվեցին այս տարի կուտակելու 26 400 տոննա լավորակ սիլոս, 1955 թվականի 4065 տոննայի դիմաց, կամ յուրաքանչյուր կովի համար շրջանը պատրաստել է 8,1 տոննա սիլոս։

Անասուններին լավ կերակրելու, խնամելու և զոոտեխնիկական կանոնները ճշտությամբ կիրառելու շնորհիվ Կիրովի, Սպանդարյանի անվան սովխոզների, Այգևանի, Թայթանի կոլտնտեսությունների անասնապահները այս տարի յուրաքանչյուր կովից արդեն ստացել են 2100—2700 կիլոգրամ կաթ։ Անցյալ տարվա միևնույն ժամանակամիջոցի համեմատությամբ շրջանում կաթի արտադրությունն ավելացել է 12,1, մսինը՝ 44 տոկոսով։ Հենց դրա շնորհիվ էլ կոլտնտեսությունները ժամկետից 2 ամիս շուտ կատարեցին ու գերակատարեցին պետությանը կաթ, միս, բուրդ, ձու վաճառելու սոցիալիստական պարտավորությունները։

Վերջին հինգ տարվա ընթացքում կոլտնտեսություններն ու սովխոզները լուրջ ուշադրություն դարձրին խոզաբուծության զարգացման վրա և այն դարձրին մսի արտադրության ավելացման հուսալի ռեզերվը և հանրային տնտեսության եկամտաբեր ճյուղերից մեկը։

Եկամտաբեր ճյուղ է դառնում նաև թռչնաբուծությունը։ Պլանով նախա-

տեսված 23000-ի դիմաց այժմ շրջանում կա 41400 թևթռչուն։ Անցյալ տարվա համեմատությամբ այս տարի զգալիորեն ավելացել է թռչունի մսի արտադրությունը, իսկ ձվի արտադրությունն ավելացել է մոտ 2,6 անգամ։ Թռչնաբուծության զարգացման ասպարեզում խրախուսելի աշխատանք է կատարում Նոր Կյանք գյուղի կոլտնտեսությունը։ Հետևելով Էջմիածնի շրջանի Աղավնատուն գյուղի կոլտնտեսության օրինակին, Նոր Կյանքի կոլտնտեսությունը այս տարի կրկնապատկեց թռչունների թիվն ու որոշեց եկող տարի ստանալ մեկ միլիոն ձու։

Յոթնամյակի երկրորդ տարում շրջանի անասնապահները խոստացել էին ավելացնել նաև անասունների գլխաքանակը։ Նրանք ժամկետից շուտ և պատվով կատարեցին այդ խոստումը։ Նոյեմբերի 20-ի դրությամբ շրջանում խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակը անցյալ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ կազմում է 107, ընդ որում կովերինը՝ 108,4, խոզերինը՝ 116, թռչուններինը՝ 147 տոկոս։

Անասնաբուծության զարգացման գործում, բացի կերի կայուն բազայի ստեղծումից, չափազանց կարևոր դեր խաղացին նաև առաջավոր փորձի կիրառումը, կադրերի պատասխանատվության բարձրացումը, անասնապահության աշխատատար պրոցեսների մեքենայացումը։ Վերջին հինգ տարվա ընթացքում շրջանում կառուցվել են 16 կովանոց, 18 հորթանոց, 6 ոչխարանոց, ինչպես նաև բազմաթիվ այլ անասնապահական օբյեկտներ։ Բոլոր կովանոցներում տեղադրված են ավտոմատ խմոցներ, իսկ անասունների կերակրումը, աղբի դուրսբերումը և այլ աշխատանքներ մեքենայացվել են։

Տարիներ շարունակ Վեդիի շրջանը սիստեմատիկաբար թերակատարում էր պետությանը բամբակի վաճառքի առաջադրանքը։ Հումքի հանձնման տարեկան պլանը կատարող կոլտնտեսությունների թիվը շատ փոքր էր։ Շրջանի պարտիական կազմակերպությունները լուրջ եզրակացություն անելով իրենց հասցեին արված իրավացի քննադատությունից, գործնական պայքար ծավալեցին բամբակենու պլանտացիաների մշակությունը բարելավելու, բերքատվությունը բարձրացնելու և պետության հանդեպ իրենց պարտավորությունները կատարելու ու գերակատարելու համար։

Ինչի՞ց պետք էր սկսել բարձր բերքի համար մղվող պայքարը։ Պարտիայի շրջանային կոմիտեն գտավ, որ ամենից առաջ պետք է աշխատել լայնորեն օգտագործել մեքենաները և համարձակորեն արմատավորել աշխատանքի առաջավոր մեթոդները։ Այդ տեսակետից դրական օրինակ ցույց տվեց Ղարալարի կոլտնտեսությունը, որը 72 հեկտար բամբակի ցանք կատարեց քառակուսի-բնային եղանակով, զգալիորեն բարձրացրեց հեկտարի բերքատվությունը և իջեցրեց հումքի ինքնարժեքը։ Առաջավոր մեթոդները արմատավորելու, ինչպես նաև հեկտարները լիարժեք դարձնելու ուղղությամբ լավ աշխատանք կատարեցին նաև Նոր Կյանքի, Ավշարի, Ք. Վեդու և մյուս կոլտնտեսությունները։ Այդ բոլորի շնորհիվ 1958 թվականին շրջանը առաջին անգամ կատարեց բամբակի հումքի հանձնման տարեկան առաջադրանքը և պլանից ավելի Հայրենիքին տվեց մոտ 220 տոննա հումք։

1959 թվականին գրեթե բոլոր կոլտնտեսություններն էլ համառ ու քրտնաջան աշխատանքով բամբակի առատ բերք աճեցրին և հաջողությամբ ավարտեցին բերքահավաքը։ Բամբակագործները ժամկետից շուտ կատարեցին պետությանը բամբակ վաճառելու առաջադրանքը և, 1958 թվականի հա-



մեմատությամբ, 550 տոննայով ավելի բամբակ վաճառեցին։ Վեդիի շրջանը հաղթեց սոցիալիստական մրցության մեջ և նվաճեց ՀԿՊ Կենտկոմի և Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետի փոխանցիկ դրոշը։ Ոգևորված ձեռք բերված հաջողություններով՝ շրջանի բամբակագործներն ավելի բարձր պարտավորություն վերցրին յոթնամյակի երկրորդ տարում։ Նրանք որոշեցին բամբակենու պլանտացիաների յուրաքանչյուր հեկտարից հավաքել և պետությանը հանձնել 25 ցենտներ բերք։

Խոստումը գործի վերածելու համար դեռ վաղ գարնանից բամբակագործները գործի անցան։ Խնամքով կատարվեց հողի նախացանքային մշակությունը և ցանքը։ Այս տարի քառակուսի-բնային եղանակով ցանվեց շրջանի բամբակենու պլանտացիաների 41 տոկոսը, իսկ մի շարք կոլտնտեսություններ (Նոր Կյանք, Ենգիջա, Ղարալար) այդ եղանակով ցանեցին բամբակենու բոլոր տարածությունները։

Բերքահավաքի հենց առաջին օրվանից կոլտնտեսային դաշտերի անխոնջ մշակները սոցիալիստական լայն մրցություն ծավալեցին օրվա առաջադրանքները կատարելու և գերակատարելու համար։ Մրցության մեջ ընդգրկվեցին բոլոր կոլտնտեսությունները, բրիգադները, օղակները, առանձին չանաքավորներ։ Շրջանը օրական հավաքում և մթերակայան էր ուղարկում 200—230 տոննա բամբակ, որը կազմում էր տարեկան պարտավորության 3—3,5 տոկոսը։

Բամբակի բերքահավաքի օրերին ավելի լայնորեն ծավալվեց պարտիական-քաղաքական և կազմակերպական աշխատանքը։ Մրցությունը խթանելու նպատակով բոլոր կոլտնտեսություններում ստեղծվեցին պատվո տախտակներ, լույս էին տեսնում խլիչովկաներ, կայծակ-թերթիկներ, ամեն օր ամփոփվում ու հրապարակվում էին աշխատանքի արդյունքները։ Պարտիայի շրջկոմը և սկզբնական կազմակերպությունները յուրաքանչյուր տասնօրյակ ամփոփում էին մրցության արդյունքները և խրախուսում առաջավորներին։ Դրա շնորհիվ օրեցօր լայն ծավալ էր ստանում 200 կիլոգրամ բամբակ հավաքողների շարժումը։ Բնորոշ է այն, որ դաշտ դուրս եկած յուրաքանչյուր չանաքավորի օրվա միջին արտադրողականությունը անցավ 110 կիլոգրամից, իսկ 50—60 չանաքավորներ օրական հավաքում էին 230—250 կիլոգրամ բամբակ։

Բերքահավաքի հաջող կատարման շնորհիվ շրջանի բամբակագործները հոկտեմբերի 31-ին զեկուցեցին Հայրենիքին՝ ստանձնած սոցիալիստական պարտավորության կատարման մասին։ Պետությանը վաճառելով 6163 տոննա բարձրորակ հումք՝ շրջանը երկրորդ անգամ նվաճեց Հայաստանի Կոմպարտիայի Կենտկոմի ու Մինիստրների Սովետի փոխանցիկ դրոշը։

Բամբակի հումքի հանձնման պարտավորությունը կատարելուց հետո կոլտնտեսականները չհանգստացան և մեծ եռանդով շարունակեցին բերքահավաքը, խոստանալով պարտավորությունից ավելի երկրին տալ ևս 1000 տոննա բամբակ։ Շրջանի բամբակագործները պատվով կատարեցին իրենց այդ խոստումը։ Արդեն մթերակայան է ուղարկված 7760 տոննա բամբակ, որը 1710 տոննայով ավելի է վերցրած սոցիալիստական պարտավորությունից և 2360 տոննայով ավելի՝ սահմանված պլանից։ Բնորոշ է այն, որ այս տարի շրջանի 13 բամբակացան կոլտնտեսությունները գերակատարել են սոցիալիստական մրցությամբ ստանձնած իրենց պարտավորությունները։

Լուրջ գործ է կատարվել բամբակի որակի բարելավման ուղղությամբ։ Եթե անցյալ տարիներին պետությանը հանձնված հումքի մեծ մասը երկրորդ և երրորդ տեսակի էր, ապա այս տարի պետությանը վաճառված առաջին և երկրորդ տեսակի հումքը գրեթե 90 տոկոսից անցնում է։ Բամբակագործությունից 1959 թվականին ստացված 15,4 միլիոն ռուբլու դիմաց այս տարի ստացվեց մոտ 24 միլիոն ռուբլու եկամուտ։

Շրջանի Ջիմանի, Շաղափլուի կոլտնտեսությունները և Սովետաշենի սովխոզը զբաղվում են ծխախոտագործությամբ։ Պետք է ասել, որ ծխախոտագործները նույնպես հաջողությունների են հասել հումքի արտադրության ավելացման ուղղությամբ։ Եթե չորս-հինգ տարի առաջ նրանք հեկտարից ստանում էին 8—10 ցենտներ բերք, ապա այժմ ստացվում է 2 անգամ ավելի։ Ջիմանցիները արդեն կատարել են հումքի հանձնման պլանը և կապահովեն հեկտարից 22 ցենտներ բերքի ստացումը։ Յուրաքանչյուր հեկտարից 16 ցենտներից ոչ պակաս բերք կստանան նաև Շաղափլուի ու Սովետաշենի ծխախոտագործները։ Շրջանը գերակատարել է պետությանը ծխախոտի վաճառքի տարեկան պլանը։

Յոթնամյակի երկրորդ տարին Վեդիի շրջանի աշխատավորների համար հանդիսացավ նոր հաջողությունների ու նվաճումների տարի։ Գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման հետ միասին մեծ չափով ավելացել են կոլտնտեսությունների և սովխոզների դրամական եկամուտները։ Շրջանի սովխոզների օգուտներն ամեն տարի կազմում են տասնյակ միլիոն ռուբլի։ Կոլտնտեսությունների դրամական եկամուտները, անցյալ տարվա համեմատությամբ, ավելացել են մոտ 8 միլիոնով, իսկ 1955 թվականի համեմատությամբ՝ մոտ 2 անգամ։ Այդ ամենը հնարավորություն են տվել ունենոր ու երջանիկ դարձնելու կոլտնտեսականների և սովխոզների բանվորների կյանքը։

Ձեռք բերված հաջողությունները, անտարակույս, ավելի մեծ կլինեին, եթե շրջանի բոլոր կոլտնտեսություններում լիովին օգտագործվեին եղած ռեզերվները, գործողության մեջ դրվեին բոլոր հնարավորությունները։ Շաղափլուի, Շիդլուի, Գոռավանի կոլտնտեսություններում դեռևս ետ է մնում անասնաբուծությունը, չափազանց թանկ են նստում արտադրվող մթերքները։ Նշված կոլտնտեսություններում դեռևս բավարար ուշադրություն չի հատկացվում կերի բազայի ստեղծմանը, անհրաժեշտ պայքար չի մղվում անասունների անկումների ու կորուստների դեմ։ Այդ տեսակետից դրությունն առանձնապես վատ է Ջովաշենի և Սովետաշենի անասնապահական սովխոզներում։

Շրջանի պարտիական, սովետական կազմակերպությունները ձգտում են վերացնել այդ թերությունները, անասնաբուծության մթերատվության ավելացման ասպարեզում հասնել այդ բնագավառում առաջավոր շրջաններին։ Չի կարելի տարակուսել, որ անասնաբուծության ասպարեզում էլ Վեդիի շրջանի աշխատավորները էլ ավելի բարձր ցուցանիշների կհասնեն մոտ ապագայում։

---

# ԱՎԵԼԻ ԲԱՐՁՐ ՑՈՒՑԱՆԻՇՆԵՐԻ ՀԱՄԱՐ


## Մ. ՄԵԼՔՈՆՅԱՆ

ՀԿՊ Սիսիանի շրջկոմի քարտուղար


Սիսիանի պարտիական, սովետական կազմակերպությունները, գյուղատնտեսական օրգանները, կոլտնտեսություններն ու սովխոզները հաշվի առնելով դեռևս չօգտագործված հնարավորություններն ու ռեզերվները, միջոցառումներ մշակեցին՝ 1960 թվականին նշանակալից չափով ավելացնելու գյուղատնտեսական մթերքների արտադրությունը և դրանց վաճառքը պետությանը։

Շրջանի կոլտնտեսությունները պարտավորվեցին 1959 թվականին արտադրած ու վաճառած 4950 ցենտների դիմաց 1960 թվականին արտադրել և պետությանը վաճառել 5650 ցենտներ ծխախոտ։ Առանձնապես բարձր պարտավորություններ ստանձնեցին անասնաբուծական մթերքների արտադրությունն ավելացնելու ուղղությամբ։ Կոլտնտեսություններն ու սովխոզները պարտավորվեցին արտադրել 26 950 ցենտներ միս, նախորդ տարվա 20 290-ի դիմաց և պետությանը վաճառել 19 500 ցենտներ միս, անցյալ տարվա 14 600-ի դիմաց. այսպիսով, 1960 թ., 1959 թ. համեմատությամբ, մսի արտադրությունը պետք է ավելանար 33, վաճառքը՝ 34 տոկոսով։ Նրանք պարտավորվեցին նաև արտադրել 102 հազար ցենտներ կաթ, որից պետությանը վաճառել 54 630 ցենտներ, կամ նախորդ տարվա համեմատությամբ կաթի արտադրությունն ավելացնել 24, իսկ վաճառքը՝ 20 տոկոսով։ Բարձր պարտավորություններ ստանձնեցին նաև գյուղատնտեսական մյուս մթերքների արտադրության ավելացման համար։

Ստանձնած սոցիալիստական պարտավորությունների կատարումն ապահովելու համար պարտիայի շրջանային կոմիտեն անհրաժեշտ օգնություն ցույց տվեց կոլտնտեսությունների ու սովխոզների ղեկավարներին. բարձր հիմքերի վրա դրեց նրանց գյուղատնտեսական գիտելիքներով զինելու գործը, պրակտիկայում սովորեցրեց տնտեսությունը օրինակելիորեն վարելու պրոգրեսիվ ձևերն ու մեթոդները, սովետական, կոլտնտեսային ու պարտիական ակտիվի հետ միասին ճշտվեցին կոլտնտեսությունների և սովխոզների ստանձնած պարտավորությունները, ինչպես և յուրաքանչյուր կթվորի, հովվի, անասնապահի, ծխախոտագործի անելիքներն ըստ ամիսների և տասնօրյակների։ Կթվորների համար սահմանվեցին նաև ամենօրյա առաջադրանքներ։

Սկզբնական պարտիական կազմակերպությունները քաղաքական ու կազմակերպական աշխատանքն ամբողջապես ի սպաս դրին այն բանին, որ ամեն

մի կոլտնտեսական ու բանվոր ժամանակին կատարի առաջադրանքները և ստանձնած պարտավորությունները: Յուրաքանչյուր տասնօրյակի և ամսվա վերջում ամփոփվում էին արտադրական ցուցանիշները և արդյունքները քննարկվում բրիգադայի կամ ֆերմայի արտադրական խորհրդակցությունում:

Կոլտնտեսություններում սահմանվեց դրամական լրացուցիչ վարձատրություն այն ծխախոտագործների համար, որոնք գերակատարում էին տերևաքաղի և շարի առաջադրանքները. ընդ որում լրացուցիչ վարձատրությունը տրվում էր յուրաքանչյուր հնգօրյակի վերջում՝ աշխատանքի արդյունքներն ամփոփելուց հետո: Ծխախոտի սածիլման, մշակության, տերևաքաղի և հումքի հանձնման գործում բարձր ցուցանիշների հասած կոլտնտեսությանը տրվում էր միջկոլտնտեսային փոխանցիկ դրոշը:

Անասնաբուծության բնագավառի առաջավորներին ևս խրախուսելու համար պարտիայի շրջկոմը և աշխատավորների դեպուտատների շրջսովետի գործկոմը որոշեցին ունենալ փոխանցիկ դրոշ, որն ամսվա վերջում հանձնվում էր ստանձնած պարտավորությունները ժամանակին ու բարձր ցուցանիշներով կատարած կոլտնտեսությանը:

Նկատի ունենալով, որ կադրերը վճռական դեր են կատարում գյուղատնտեսության վերելքն ապահովելու գործում, պարտիայի շրջանային կոմիտեն հատուկ ուշադրություն նվիրեց կադրերի ընտրությանն ու վերապատրաստմանը: Փետրվար, մարտ ամսին շրջանի Նորոգման-տեխնիկական կայանում պատրաստվեցին և վերապատրաստվեցին 70 մեխանիզատորներ: Անասնապահական ֆերմաները կոմպլեկտավորվեցին մասնավորապես երիտասարդ կադրերով: Այժմ ֆերմաներում աշխատում են 1200 կոմերիտականներ և երիտասարդներ:

Բարելավվեց նաև կոլտնտեսությունների ղեկավար աշխատողների կազմը: Շաղաթի կոլտնտեսության նախագահ ընտրվեց շրջսովետի գործկոմի գյուղտեսչության գլխավոր զոոտեխնիկ Ռ. Գալստյանը, Հացավանում՝ կրտսեր գյուղատնտես Հ. Սարգսյանը, Սպանդարյանում՝ զոոտեխնիկ Պ. Դանիելյանը, Դարբասում՝ շրջկոմի հրահանգիչ Ս. Սահակյանը և ուրիշներ: Ղզլջուղի Թույլ, ետ մնացող կոլտնտեսությունը միացվեց Շաքիի կոլտնտեսությանը, իսկ Ուղի կոլտնտեսությունը՝ Շրջկենտրոնի կոլտնտեսությանը: Շրջկենտրոնի, Անգեղակոթի, Թազագյուղի և այլ կոլտնտեսություններում խոշորացվեցին դաշտավարական բրիգադները:

Մշակված միջոցառումների կենսագործման և գյուղատնտեսական աշխատանքները ժամանակին ու որակով կատարելու շնորհիվ շրջանի կոլտնտեսությունները ընթացիկ տարում զգալի հաջողությունների հասան ստանձնած պարտավորությունների կատարման գործում: Սոցիալիստական մրցությամբ ստանձնած պարտավորությունների կատարման ու գերակատարման համար մղվող պայքարն ավելի լայնորեն ծավալվեց ՍՄԿԿ Կենտրոնական Կոմիտեի պլենում հրավիրելու մասին եղած հաղորդագրությունից հետո: Կոլտնտեսություններում և սովխոզներում մշակվեցին լրացուցիչ միջոցառումներ, արտադրության շատ աշխատողներ ստանձնեցին նոր, ավելի բարձր պարտավորություններ:

Ավարտվում է 1960 թվականը: Նախնական արդյունքները վկայում են, որ սիսիանցիները պատվով են կատարել ստանձնած պարտավորությունները:

Շաղաթի կոլտնտեսությունը ծխախոտի պլանտացիաների յուրաքանչյուր



հեկտարից ստացել է 24 ցենտներ բարձրորակ հումք և պետությանը ծխախոտ վաճառելու սոցիալիստական պարտավորությունը կատարել է 134 տոկոսով: Այդ կոլտնտեսության առաջավոր ծխախոտագործ, պարտիայի շրջանային կոմիտեի անդամ Շողիկ Մկրտչյանի ղեկավարած օղակը 5 հեկտար ծխախոտի յուրաքանչյուր հեկտարից ստացել է 26 ցենտներ բերք, պլանով նախատեսված 16 ցենտների դիմաց: Շաքիի կոլտնտեսության անվանի ծխախոտագործ Վանո Մկրտումյանի օղակը 7 հեկտար տարածության յուրաքանչյուր հեկտարից ստացել է 32 ցենտներ բարձրորակ բերք: Միայն Մկրտումյանի օղակի արտադրած ծխախոտի վաճառքից կոլտնտեսությունը պետությունից ստացավ մոտ 400 հազար ռուբլի:

Շրջանի ծխախոտագործները պատվով կատարեցին իրենց խոստումը: Հայաստանում սովետական կարգերի հաստատման 40-րդ տարեդարձի նախօրյակին նրանք մթերակայան հանձնեցին ավելի քան 6200 ցենտներ ծխախոտ՝ ստանձնած սոցիալիստական պարտավորությունները կատարելով 110, իսկ պլանային առաջադրանքը՝ 120 տոկոսով: Նախորդ տարվա համեմատությամբ շրջանում ծխախոտի արտադրությունն ավելացավ 1300 ցենտներով, իսկ նրա վաճառքից ստացվող դրամական եկամուտը՝ 3 միլիոն ռուբլով:

Մսի և կաթի արտադրության ու վաճառքի ուղղությամբ ստանձնած սոցիալիստական պարտավորությունները կատարելու գործում լավագույն ցուցանիշների հասան անասնապահության բազմաթիվ առաջավորներ և շատ կոլտնտեսություններ:

Ընթացիկ տարում ձմռան և արոտային շրջանը այնքան էլ նպաստավոր չէր անասնաբուծական մթերքների արտադրության ավելացման համար: Ձմեռը ձգձգվեց, սովորականից մոտ մեկ ամիս ուշ բացվեց գարունը, արոտային շրջանում եղավ երկարատև երաշտ, այդ ամենը խիստ բացասաբար անդրադարձավ անասունների մթերատվության վրա: Կլիմայական անբարենպաստ պայմանները չէին կարող արդարացնել անասնաբուծության աշխատողներին՝ տված խոստումը չկատարելու համար: Պարտիական կազմակերպություններն ու անասնաբուծության բնագավառի աշխատողները ձեռնարկեցին հնարավոր բոլոր միջոցները պարտավորությունները կատարելու ուղղությամբ:

Մսի արտադրության ավելացման համար յուրաքանչյուր կոլտնտեսությունում ու սովխոզում առանձնացվեցին համապատասխան քանակությամբ անասուններ, որոնց մի մասը դրվեց բտման տակ՝ առաջին և երկրորդ եռամսյակում պետությանը վաճառելու համար: Արոտի շրջանի սկզբից հենց սկսեցին գիրացնել մատղաշներին: Գիրացվող խոշոր և մանր եղջերավոր անասունները փոխադրվեցին հեռավոր, փարթամ բուսականություն ունեցող և ջրառատ արոտներ: Դրա շնորհիվ գիրացվող 4500 գլուխ խոշոր և 7500 գլուխ մանր եղջերավոր անասուններ միջակ և բարձր գիրությամբ վաճառվեցին պետությանը: Նորավանի, Սառնակունքի, Բալաքի, Շաղաթի, Անգեղակոթի, Բարձրավանի կոլտնտեսությունները և Սոֆլուի սովխոզը պետությանը հանձնեցին միայն միջակ և միջակից բարձր գիրությամբ անասուններ: Շրջանի՝ պետությանը վաճառած խոշոր եղջերավոր անասունների 80 և մանր եղջերավոր անասունների 90 տոկոսը ունեին միջակ և միջակից բարձր գիրություն: Վաճառված յուրաքանչյուր ցենտներ մսից (որակի բարձրացման շնորհիվ), նախորդ տարվա համեմատությամբ, 20 ռուբլով ավելի եկամուտ ստացվեց:

Մսի արտադրության ավելացման գործում լավ հաջողությունների հասան Աղուդիի, Բռնակոթի, Բնունիսի, Անգեղակոթի, Սպանդարյանի, Ախլաթյանի, Սառնակունքի կոլտնտեսությունները և Սոֆլուի սովխոզը, որոնք, նախորդ տարվա համեմատությամբ, մսի արտադրությունն ավելացրին մեկ և կես—երկու անգամ։

Մսի արտադրության ավելացումը շրջանի կոլտնտեսություններին հնարավորություն տվեց ժամկետից շուտ կատարելու պետությանը մսի վաճառքի տարեկան պարտավորությունները։ Պլանով նախատեսված 15 810 ցենտների դիմաց շրջանի կոլտնտեսությունները և սովխոզները մինչև 1960 թվականի դեկտեմբերի 1-ը պետությանը վաճառել են 19 550 ցենտներ միս։ Շրջանում մսի արտադրությունը, նախորդ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ, ավելացել է 6200 ցենտներով, կամ 35 տոկոսով, խոզի մսի արտադրությունը՝ 68 տոկոսով։

Կաթի արտադրության գործում շրջանի կոլտնտեսությունները և սովխոզները նույնպես հասել են որոշակի հաջողությունների։ Նախորդ տարվա համեմատությամբ Շաղաթի, Անգեղակոթի, Բռնակոթի, Բնունիսի, Տոլորսի, Աղուդիի, Գետաթաղի կոլտնտեսությունները և Սոֆլուի սովխոզը կաթի արտադրությունն ավելացրին 20—35 տոկոսով։ Այս տարվա անցած 11 ամիսների ընթացքում շրջանում կաթի արտադրությունը, նախորդ տարվա նույն ժամանակամիջոցի համեմատությամբ, ավելացել է 7200 ցենտներով։ 52 200 ցենտներ վաճառքի պլանի դիմաց մինչև այս տարվա դեկտեմբերի 1-ը պետությանը վաճառված է 53 400 ցենտներ կաթ, կամ պլանը կատարված է 102,1 տոկոսով։ Նախորդ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ պետությանը ավելի է վաճառվել 8500 ցենտներ կաթ։ Պետությանը կաթի վաճառքի սոցիալիստական պարտավորությունը շրջանի կոլտնտեսությունները կատարեցին ժամկետից 3 ամիս շուտ՝ հոկտեմբերի մեկին։

Այժմ շրջանի պարտիական կազմակերպությունները ողջ աշխատավորությանը մոբիլիզացրել են՝ արտադրական լավագույն ցուցանիշներով դիմավորելու ՍՄԿՊ Կենտկոմի առաջիկա պլենումը և գյուղատնտեսական տարին ավարտելու կաթի արտադրության սոցիալիստական պարտավորությունը կատարած։

Շրջանում նշանակալից աշխատանք կատարվեց կերի բազայի ամրապնդման և ոռոգելի տարածությունների ավելացման ուղղությամբ։ 1960 թվականի գարնանը կատարվեց 2800 հեկտար բազմամյա խոտաբույսերի ենթացանք և կուտակվեց 3500 ցենտներ սերմացու, որը հնարավորություն կտա 1961 թվականի գարնանը կատարելու ևս 3200—3500 հեկտար բազմամյա խոտաբույսերի ցանք։ Դրա շնորհիվ կկրկնապատկվի խոտի կուտակումը և պայմաններ կստեղծվեն՝ ավելացնելու անասունների գլխաքանակը և անասնաբուծական մթերքների արտադրությունը։

Ընթացիկ տարում ձեռնարկվեց և կավարտվի Բռնակոթի ջրամբարի շինարարությունը, որի շնորհիվ 1961 թվականից ոռոգելի կդառնա ավելի քան 110 հեկտար վարելահող։

Այս բոլորի հետ միասին պետք է ասել, որ շրջանի որոշ կոլտնտեսություններ սոցիալիստական պարտավորությունների կատարման գործում թեթացան։ Այսպես՝ ծխախոտի մշակության և տերևաքաղի աշխատանքները վատ կազմակերպելու հետևանքով Անգեղակոթի, Աղուդիի, Բնունիսի կոլտնտեսությունները թերակատարեցին ծխախոտի արտադրության և վաճառքի ուղղությամբ ստանձնած պարտավորությունները։ Արավուսի, Ուռուտի, Աշոտավանի, Լորի և Հացավանի կոլտնտեսությունները անասունների գլխաքանակի աճման, զիրացման ու բտման գործը վատ կազմակերպելու հետևանքով 10—15 տոկոսով թերակատարեցին մսի արտադրության ու վաճառքի պլանը։ Կովերի կերակրման և խնամքի գործը վատ կազմակերպելու պատճառով Հացավանի, Թազագյուղի, Արավուսի, Ջոմարթլուի և Բորիսովկայի կոլտնտեսությունները նախորդ տարվա համեմատությամբ ո՛չ միայն չավելացրին, այլ պակասեցրին կաթի արտադրությունը։

Պարտիայի Սիսիանի շրջանային կոմիտեն և սկզբնական կազմակերպությունները, ամփոփելով ընթացիկ տարվա գյուղատնտեսական աշխատանքների արդյունքները, վեր են հանում աշխատանքներում տեղ գտած թերությունները և միջոցառումներ մշակում՝ 1961 թվականին ավելի բարձր ցուցանիշների հասնելու։ Եթե ռեսպուբլիկական գերատեսչություններից, մատակարարող կազմակերպություններից կախված խնդիրները ժամանակին լուծվեն և ավելի ռացիոնալ օգտագործվեն շրջանում եղած հնարավորությունները, մեծ չափերով կավելանա գյուղատնտեսական մթերքների արտադրությունը։

Այժմ շրջանի կոլտնտեսությունները դժվարին կացության մեջ են շինանյութերի, մասնավորապես շինափայտի և աբրոշիֆերի պակասության պատճառով։ Շրջանին հատկացված այդ շինանյութերի տարեկան ֆոնդերը կբավականացնեն միայն 15—20 անասնապահական շենքերի կառուցմանը. մինչդեռ շրջանը առաջիկա մի քանի տարիների ընթացքում տարեկան պետք է կառուցի միայն անասնապահական 50—60 շենք, չհաշված արտադրական և կուլտուրական այլ օբյեկտների կառուցումը (ծխախոտի չորանոցներ, պահեստներ, ակումբներ, դպրոցներ և այլն)։ ՀՍՍՌ Պետպլանը և Հայկոոպը պետք է մտահոգվեն այս հարցով։ Արտադրության խոշոր ծավալ ունեցող շրջանը պետք է ունենա համապատասխան մատակարարում։

Նոր օբյեկտները հետագայում տեղական շինանյութերով կառուցելու և շինարարությունը ինդուստրիալ հիմքերի վրա դնելու նպատակով շրջանի Անգեղակոթ գյուղի նախկին ՄՏԿ-ի բազայի վրա կազմակերպվել է երկաթբետոնե կառուցվածքների հրապարակ։ Սակայն ՀՍՍՌ Գյուղատնտեսության մինիստրությունը, Գյուղշինտրեստը դրա համար մինչև այժմ էլ անհրաժեշտ մեքենաներ և նյութեր չեն տրամադրել։

Անասնաբուծական մթերքների արտադրությունն ավելացնելու և դրանց ինքնարժեքն իջեցնելու վճռական միջոցներից մեկը աշխատատար պրոցեսների մեքենայացումն է։ Բայց առայժմ այդ ուղղությամբ քիչ գործ է կատարված՝ մեքենաներ ու սարքավորումներ չլինելու պատճառով։

Սիսիանի շրջանի պարտիական ու սովետական կազմակերպությունները, կոլտնտեսությունների և սովխոզների ողջ աշխատավորությունը լի են յոթնամյա պլանով սահմանված գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման առաջադրանքը ժամկետից շուտ կատարելու վճռականությամբ։

# ԱՌԱՋԸՆԹԱՑ ՔԱՅԼԵՐՈՎ

Ա. ԿԻՐԱԿՈՍՅԱՆ

ՀԿՊ Հոկտեմբերյանի շրջկոմի քարտուղար

Գյուղատնտեսական մթերքների արտադրության հետագա վերելքի համար ծավալված սոցիալիստական մրցության մեջ Հոկտեմբերյանի աշխատավորությունն ընթացիկ տարում ձեռք բերեց զգալի հաջողություններ։ Հաջողությունները հատկապես նշանակալից են անասունների գլխաքանակի աճման, անասնաբուծական մթերքների արտադրության, հացահատիկային կուլտուրաների, առվույտի բերքատվության ավելացման բնագավառներում։ Պարտիայի շրջանային կոմիտեն սկզբնական կազմակերպությունների, կոլտնտեսությունների վարչությունների հետ միասին մշակեց ամեն մի տնտեսության սոցիալիստական պարտավորությունները, որոնք քննարկվեցին և ընդունվեցին կոլտնտեսականների ընդհանուր ժողովներում, այնուհետև՝ գյուղատնտեսության առաջավորների շրջանային խորհրդակցությունում։

Սոցիալիստական պարտավորությունները պրոպագանդելու նպատակով սկզբնական պարտիական կազմակերպությունները դիագրամների, աղյուսակների, պլակատների միջոցով լայն ցուցադրական ագիտացիա կազմակերպեցին։ Այդ ուղղությամբ բավականին աշխատանք կատարեց շրջանային «Դեպի կոմունիզմ» թերթը, որն իր էջերում սիստեմատիկաբար լուսաբանում էր ստանձնած պարտավորությունների կատարման ընթացքը։

Պարտիայի շրջանային կոմիտեն և շրջսովետի գործկոմը կոլտնտեսային և սովխոզային ակտիվի հետ միասին տարեկան սոցիալիստական պարտավորությունների կատարումը բաժանեցին ըստ ամիսների, եռամսյակների և կիսամյակների, որը հնարավորություն տվեց գործնական հսկողություն սահմանելու, որպեսզի ժամանակին կատարվեն պարտավորությունները։ Այդ իսկ նպատակով շրջկոմը, սկզբնական պարտկազմակերպությունները կազմակերպչական լուրջ աշխատանք ծավալեցին։ Շրջանում ամիսը մեկ անգամ ամփոփվել է սոցիալիստական պարտավորությունների կատարման ընթացքը, անցկացվել պարտավորությունների կատարման փոխադարձ ստուգումներ։

Զգալի աշխատանք կատարվեց նաև առաջավոր փորձի պրոպագանդման ու արմատավորման ուղղությամբ։ Օրինակ, մարտ ամսին շրջանի 27 կոլտնտեսություններից 25 կոլտնտեսականներ գործուղվեցին Ուզբեկստան՝ ուսումնասիրելու բամբակի քառակուսի-բնային ցանքսի ու մշակության առաջավոր եղանակները։ Այդ ուսումնասիրությանը հետևեց բամբակի քառակուսի-բնային ցանքսի զգալի ավելացումը։ Այսպես՝ եթե 1959 թվականին բամբակի



քառակուսի-բնային եղանակով շրջանում ցանքս էր կատարվել մոտ 350 հեկտար տարածության վրա, ապա 1960 թվականին կատարվեց մոտ 1400 հեկտարի վրա։

Պարտիական կազմակերպությունները լրջորեն զբաղվեցին ինչպես շրջանի, այնպես էլ ռեսպուբլիկայի առաջավոր անասնապահների փորձի տարածման ու արմատավորման գործով։ Այդ նպատակով հանգամանորեն ուսումնասիրվեցին Էջմիածնի շրջանի Աղավնատան կոլտնտեսության թռչնաբույծների և մեր շրջանի Նորապատի կոլտնտեսության անասնապահների փորձը, որի տարածումը նպաստեց անասնաբուծության բնագավառում ստանձնած պարտավորությունների կատարմանը։

Պարտիական կազմակերպությունների հետևողական աշխատանքի շնորհիվ շրջանում զգալի չափով գերակատարվեցին բոլոր տեսակի անասունների գլխաքանակի ավելացման ուղղությամբ ստանձնած սոցիալիստական պարտավորությունները։ Շրջանի կոլտնտեսությունները և սովխոզները պարտավորվել էին 1961 թվականի հունվարին ունենալ 11 518 գլուխ խոշոր եղջերավոր անասուններ, 37 760 գլուխ մանր եղջերավոր անասուններ, 5753 գլուխ խոզ։ Խոշոր և մանր եղջերավոր անասունների գլխաքանակի ավելացման ուղղությամբ ստանձնած պարտավորությունները կատարված են 100—102,6 տոկոսով, իսկ խոզերի գլխաքանակը հասել է 7570-ի, կամ պարտավորությունը կատարված է 131,6 տոկոսով։ Թռչունների ավելացման գծով սոցիալիստական պարտավորությունը կատարված է 127,5 տոկոսով։

Սովխոզներում և կոլտնտեսություններում անասունների գլխաքանակի ավելացումը լայն հնարավորություններ ստեղծեց անասնաբուծական մթերքների արտադրությունն ու վաճառքը զգալիորեն ավելացնելու։ Այսպես, օրինակ՝ ըստ պարտավորության պետությանը պետք է վաճառվեր մոտ 12 500 ցենտներ միս. այդ պարտավորությունը կատարվել է մինչև դեկտեմբերի 1-ը և շարունակվում է մսի վաճառքը։ Զգալի չափով ավելացել է կաթի վաճառքը։ Շրջանի կոլտնտեսությունները կաթի վաճառքի իրենց պարտավորությունները կատարել են 106 տոկոսով։

Անասնաբուծության զարգացման և անասնաբուծական մթերքների ավելացման շնորհիվ, անցյալ տարվա համեմատությամբ, անասնաբուծությունից ստացված եկամուտները կոլտնտեսություններում ավելացան մոտ 6 միլիոն ռուբլով։ Ընդ որում շրջանի բոլոր կոլտնտեսությունները բարձրացրել են անասնաբուծության եկամտաբերությունը։

Հայտնի է, որ անասնաբուծության հետագա զարգացման կարևորագույն պայմաններից մեկը կերի կայուն բազայի ստեղծումն է։ Այդ նպատակով շրջանի կոլտնտեսությունները և սովխոզները ժամկետից շուտ կատարեցին այդ ուղղությամբ ստանձնած պարտավորությունները և կուտակեցին բավարար քանակությամբ կեր։ Միայն շրջանի կոլտնտեսություններում պատրաստված է 30 112 տոննա սիլոս, որը 7000 տոննայով ավելի է նախորդ տարում պատրաստված սիլոսից։ Ընթացիկ տարում յուրաքանչյուր կովի համար պատրաստված է 9 տոննա սիլոս։ Շրջանում կուտակված է 23 661 տոննա խոտ. այսպիսով, խոտի կուտակման պարտավորությունը կատարված է 102, ծղնոտինը՝ 107 տոկոսով։

Բավարար քանակությամբ կերի կուտակումը լայն հնարավորություններ կստեղծի ո՛չ միայն բարելավելու կթու կովերի խնամքը, այլև բոման տակ

ձնելու և գիրացնելու մեծ քանակությամբ անասուններ, որը կնպաստի անասնաբուծական մթերքների արտադրության ավելացմանը։

Անասնապահության զարգացման բնագավառում ձեռք բերած հաջողությունների կողքին կան նաև լուրջ թերություններ։ Դրանցից աչքի զարնողը անասունների անկումն է և սեփական հոտի վերարտադրության անբավարար վիճակը։ Անցած 10 ամիսների ընթացքում խոշոր եղջերավոր անասունների անկումը կազմել է 2,6, մանր եղջերավոր անասուններինը՝ 9,5, խոզերինը՝ 3,4 տոկոս։ Ցածր է 100 մայրերից ստացվող մատղաշների քանակը։ Յուրաքանչյուր 100 կովից ստացվել է 81 հորթ, 100 մայր ոչխարից՝ 71 գառ, 100 մայր խոզից՝ 821 խոճկոր։ Դրությունը վատ է, հատկապես, Բերքաշատի, Շենավանի, Խերիբեկլուի, Բախչալարի, Հայկավանի կոլտնտեսություններում և Ստալինի անվան սովխոզում։ Հիշյալ տնտեսություններում վատ են խնամվում ու պահպանվում մատղաշները։

Անասնաբուծության հետագա զարգացման համար չափազանց կարևոր նշանակություն ունի կովերի գլխաքանակի ավելացումը։ Չնայած վերջին 2—3 տարում հոտում կովերի գլխաքանակն զգալի չափով ավելացել է և այժմ կազմում է 31,5 տոկոս, բայց դա չի կարող բավարարել ներկա պահանջները։ 1961 թվականի համար անասնաբուծության ուղղությամբ սոցիալիստական պարտավորություններ մշակելիս պետք է հաշվի առնել այդ հանգամանքը և այնպես անել, որ մոտակա տարիներում կովերի գլխաքանակն ընդհանուր հոտում ավելանա 45—50 տոկոսով։

Շրջանի կոլտնտեսությունները և սովխոզները ընթացիկ տարում անհամեմատ բարձր պարտավորություններ ստանձնեցին դաշտավարության բնագավառում։ Կոլտնտեսությունների և սովխոզների ճնշող մեծամասնությունը ապահովեց պարտավորությունների կատարումը և ստացավ հացահատիկային, բանջարա-բոստանային, խաղողի, պտղի և մյուս կուլտուրաների ռեկորդային բերք։ Այսպես, օրինակ՝ շրջանում ցանված 2674 հեկտար հացահատիկային կուլտուրաների (ինչպես և եգիպտացորենի) բերքատվության ուղղությամբ ստանձնած պարտավորությունը կատարվեց, և մեկ հեկտարի միջին բերքատվությունը կազմեց 33,1 ցենտներ, իսկ առանձին կոլտնտեսություններում (Նորապատի, Սովետականի, Այգեշատի, Փշատավանի, Վարդանաշենի, Շախվառուտի)՝ 40—52,9 ցենտներ։

Չնայած այգեգործության համար անբարենպաստ պայմաններին, շրջանի մի շարք կոլտնտեսություններում ու սովխոզներում ստացվեց խաղողի և պտղի բարձր բերք։ Այսպես, օրինակ՝ Տանձուտի կոլտնտեսությունը 62 հեկտար խաղողի այգիների յուրաքանչյուր հեկտարից միջին հաշվով ստացավ 118 ցենտներ բերք։ Առանձին կոլտնտեսություններ, անցյալ տարվա համեմատությամբ, կարողացան ավելի շատ բերք ստանալ։ Օրինակ՝ Արգավանդի կոլտնտեսությունը 38 հեկտար բերքատու այգու յուրաքանչյուր հեկտարից ստացավ 117,4 ցենտներ խաղող, ստանձնած պարտավորությունը գերակատարելով 42 ցենտներով (1959 թ. խաղողի միջին բերքը այդ կոլտնտեսությունում 1960 թվականի բերքից կիսով չափ պակաս էր)։ Նորապատի կոլտնտեսությունը 70 հեկտար խաղողի այգիների մեկ հեկտարից ստացավ 95,4 ցենտներ բերք, 90 ցենտների փոխարեն։

Բարձր բերք ստացող կոլտնտեսությունների կողքին կան նաև այնպիսիք, որոնք ո՛չ միայն չկատարեցին ստանձնած սոցիալիստական պարտավո-



րությունները, այլև, նախորդ տարվա համեմատությամբ, ցածր բերք ստացան։ Այդպիսի կոլտնտեսություններից են Սովետականը, որը խաղողի յուրաքանչյուր հեկտարից 85-ի դիմաց ստացավ 42 ցենտներ, Գետաշենը՝ 60-ի դիմաց 27 ցենտներ, Շենավանը՝ 60-ի դիմաց 43 ցենտներ, Մարգարան՝ 80-ի դիմաց 54 ցենտներ և այլն։

Շրջանի էկոնոմիկայում որպես առաջատար կուլտուրա խոշոր նշանակություն ունի բամբակը։ Յոթնամյա պլանով նախատեսված է 1960 թվականին արտադրել և պետությանը վաճառել 11 300 տոննա բամբակ. շրջանի բամբակագործները պետական այդ պլանը կատարեցին 100 տոկոսով, սակայն 200 տոննայով թերակատարվեց ստանձնած սոցիալիստական պարտավորությունը։ Բամբակի արտադրության բնագավառում լավն այն է, որ պետությանը վաճառված բամբակի 75 տոկոսը առաջին և երկրորդ տեսակի է, նախորդ տարվա 55 տոկոսի դիմաց, որի շնորհիվ բամբակից ստացված եկամուտները կազմեցին 34 միլիոն ռուբլի, կամ մոտ 6 միլիոնով ավելի, քան 1959 թվականին։

Բամբակագործության բնագավառում լավագույն ցուցանիշների հասան Հոկտեմբերյանի, Տանձուտի, Նոր Արմավիրի, Նոր Ամասիայի, Շախվառուտի Երասխահունի, Վարդանաշենի և մի շարք այլ գյուղերի կոլտնտեսություններ։ Հոկտեմբերի կոլտնտեսությունը, որը մշակում է 438 հեկտար բամբակ, կիրառելով ցանքսի ու մշակության առաջավոր մեթոդները, գերակատարեց սոցիալիստական պարտավորությունը և պետությանը վաճառեց 1200 տոննա բարձրորակ բամբակի հումք, յուրաքանչյուր հեկտարից ստանալով 28,5 ցենտներ բերք, Տանձուտի կոլտնտեսությունը պարտավորությունը կատարեց 123 տոկոսով, յուրաքանչյուր հեկտարից ստանալով 30 ցենտներ բերք, Վարդանաշենի կոլտնտեսությունը՝ 133 տոկոսով, յուրաքանչյուր հեկտարից ստանալով 32,1 ցենտներ բերք և այլն։

Սակայն չի կարելի չնշել, որ շրջանի մի շարք կոլտնտեսությունների վարչությունները և պարտկազմակերպությունները անհրաժեշտ միջոցներ չձեռնարկեցին սոցիալիստական պարտավորությունները կատարելու համար։ Իսկ այնպիսի բամբակացան խոշոր կոլտնտեսություններ, ինչպիսիք են՝ Նալբանդյանինը, Գետաշենինը, Շենավանինը, ձգձգեցին բերքահավաքի աշխատանքները, խախտեցին բամբակենու մշակման ագրոկանոնները, բամբակենու ցանքատարածության մոտ կեսի վրա ցանվեց բամբակի այնպիսի տեսակ, որը Հոկտեմբերյանի պայմաններում չէր կարող ցանկալի արդյունք տալ։

Օրերս շրջանային կոմիտեն հրավիրեց բոլոր բրիգադավարների, ֆերմաների վարիչների, գյուղատնտեսության մասնագետների, մեխանիզատորների, կոլտնտեսությունների վարչությունների նախագահների շրջանային խորհրդակցություն, որտեղ քննարկվեցին սոցիալիստական պարտավորությունների կատարման նախնական արդյունքները և նշվեցին կոլտնտեսությունների անելիքները 1961 թվականի տնտեսական տարվա նախապատրաստման գործում։

Շրջանի աշխատավորությունը խորապես գիտակցում է պարտիայի կողմից գյուղատնտեսության աշխատողների առջև դրված խնդիրների նշանակությունը և ջանք չի խնայի արտադրական բարձր ցուցանիշներով դիմավորելու ՍՄԿԿ Կենտկոմի առաջիկա պլենումը։

---

# ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ

## ԾԱՆՐ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ ՃՅՈՒՂԵՐԻ ՆԵՐՌԵՍՊՈՒԲԼԻԿԱԿԱՆ ԿԱՊԵՐԸ

Զ. ՍԻՄՈՆՅԱՆ, ՅԱ. ՀԱԿՈԲՅԱՆ

Հայկական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկայում արդյունաբերության բոլոր ճյուղերից առավել բարձր տեմպերով է զարգանում մեքենաշինությունը, որի արտադրության ծավալը յոթնամյակում կավելանա 4,5 անգամ, այդ թվում սարքաշինությանը՝ մոտավորապես 7 անգամ, իսկ հաստոցագործիքաշինական արդյունաբերության արտադրանքը՝ 8 անգամ։

Ռեսպուբլիկայի արդյունաբերության, մանավանդ նրա այնպիսի ճյուղերի բուռն աճը, ինչպիսիք են՝ էլեկտրատեխնիկական, սարքաշինական, հաստոցաշինական և գործիքաշինական արտադրությունը, հրամայաբար պահանջում են հատուկ ուշադրություն հատկացնել մետալուրգիայի զարգացմանը՝ գունավոր մետաղների և նրանց համաձուլվածքների արտադրության ծավալի ու ասորտիմենտի ընդլայնմանը, ինչպես նաև սև մետաղների արտադրության ստեղծմանը։

ՍՍՌՄ-ում մեքենաշինության, սարքաշինության և մետաղամշակման մեջ վերջին տարիներս գործածվել է մետաղագլանվածքի ընդհանուր թողարկման 40, իսկ չուգունի, պողպատի ու գունավոր համաձուլվածքների ընդհանուր թողարկման 80 տոկոսը։ Ընդ որում մեքենաշինության մեկ միլիոն ռուբլու արտադրանքի համար գործածվում էին գլանվածքից պատրաստված 37 տոննա և 35 տոննա ձուլված դետալներ, ընդամենը՝ 72 տոննա։ Իհարկե, տեխնիկայի կատարելագործման, արտադրության կազմակերպման և մեքենաների կոնստրուկցիայի բարելավման հաշվին հնարավոր կլինի ապագայում զգալի չափով կրճատել գործածվող մետաղի տեսակարար կշիռը և բարձրացնել նրա օգտագործման կոեֆիցիենտը, մեքենաշինության և մետաղամշակման մեկ միլիոն ռուբլու արտադրանքի համար օգտագործվող մետաղե գլանվածքի դետալների միջին քաշը կրճատել և 37 տոննայից հասցնել 27-ի, ձուլված դետալներինը՝ 35 տոննայից 19-ի, կամ ընդհանուր առմամբ կրճատել 36 տոկոսով։ Չնայած դրան, վիթխարի է մեքենաշինության մեջ գործածվող սև ու գունավոր մետաղների քանակը։ Մեր խնդիրն է՝ ապահովել գունավոր մետաղների արտադրության զարգացման բարձր տեմպեր և կազմակերպել սև մետաղների արտադրությունը մեր ռեսպուբլիկայում։ Դրանով իսկ մենք կապահովենք նյութական բազա մեքենաշինության աննախընթաց զարգացման համար և, հետևապես՝ բոլոր նախադրյալները կստեղծվեն ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի կոմպլեքսային-մեքենայացման ու ավտոմատացման համար։



Ժողովրդական տնտեսության հեռանկարային զարգացման ժամանակաշրջանում անընդհատ ընդլայնվելու են մեքենաշինության արտադրական կապերը ռեսպուբլիկայի ներսում, կբարձրանա մեքենաշինության ազդեցությունը արդյունաբերության մի շարք խոշոր ճյուղերի զարգացման տեմպերի վրա։

Մինչև 1959 թվականը, այսինքն մինչև յոթնամյակի սկիզբը, եղբայրական ռեսպուբլիկաներից (2000—5000 կմ. տարածության վրա գտնվող գործարաններից) էին ստացվում մեքենաշինության համար անհրաժեշտ գրեթե ամբողջ հումքն ու բոլոր կիսաֆաբրիկատները՝ բարակաթերթ պողպատը, պղնձի ու ալյումինի գլանվածքը, գունավոր մետաղների բոլոր համաձուլվածքները, մեքենաների ամբողջ էլեկտրական մասերը (բացի փաթույթի հաղորդալարից), էլեկտրատեխնիկական ճենապակին, կաղապարանյութը և կոմպլեկտավորող բազմաթիվ շինվածքներ։ Առաջիկայում արմատապես կըփոխվեն ռեսպուբլիկայի մեքենաշինության զարգացման պայմանները։ Կընդլայնվեն մեքենաշինության արտադրական կապերը ռեսպուբլիկայի արդյունաբերության այնպիսի խոշոր ճյուղերի հետ, ինչպիսիք են՝ պղնձինը, ալյումինինը ու քիմիական արդյունաբերությունը։ Զարգացող մեքենաշինության ազդեցության տակ միաժամանակ կստեղծվեն արդյունաբերության այնպիսի նոր կարևոր ճյուղեր, ինչպիսիք են՝ սև մետալուրգիան, կաղապարանյութի արդյունահանումը, էլեկտրատեխնիկական ճենապակու արտադրությունը և այլն։

Մեքենաշինությունը մեծ չափերով կօգտագործի ռեսպուբլիկայում արտադրվող հումքը, կիսաֆաբրիկատները և այլ նյութեր. այդ կնպաստի ռեսպուբլիկայի արտադրողական ուժերի զարգացմանը և տրանսպորտը կազատի մեծ և աննպատակ փոխադրումներից։

Մոտակա տասնամյակներում մեծ չափերի կհասնի մեքենաշինության պահանջը բարակաթերթ պողպատի, մանավանդ էլեկտրատեխնիկական պողպատի նկատմամբ։ Հեռանկարային ժամանակաշրջանում կփոխվեն մեքենաշինության և ռեսպուբլիկայի գունավոր մետալուրգիայի արտադրական կապերը։ Էլեկտրատեխնիկական արդյունաբերության զարգացման շնորհիվ զգալիորեն կաճի գունավոր մետաղների, գլանվածքի և համաձուլվածքների պահանջը։

Արտադրական լայն կապեր կզարգանան ռեսպուբլիկայի մեքենաշինության և քիմիական արդյունաբերության միջև։ Մեքենաշինությունն այժմ ռեսպուբլիկայի քիմիական գործարաններից ստանում է վինիֆլեքս՝ լաք էլեկտրալարերի արտադրության համար, ինչպես նաև ռետինատեխնիկական ու պլաստմասսայի որոշ շինվածքներ։ Հետագայում անընդհատ ընդլայնվելու է քիմիական արդյունաբերության կողմից մատակարարվող շինվածքների նոմենկլատուրան։ Ռեսպուբլիկայի քիմիական գործարանները մեքենաշինությանը տալու են էլեկտրամեկուսիչ ժապավեն, ապակեթելք, պոլիքլորվինիլի պլաստիկատ, տեխնիկական ռետինի դետալներ՝ փոկեր, օղակներ, փոքրիկ խողովակներ, խտարարներ և պլաստմասսայից պատրաստված բազմաթիվ իրեր՝ սարքաշինության ու ռադիո-տեխնիկական արդյունաբերության համար մատակարարվող մանր դետալներից սկսած մինչև մեզ մոտ նախատեսվող ավտոբեռնիչների արտադրության համար պլաստմասսայից թողարկ-

վող դետալները։ Բացի դրանից, զգալիորեն կընդլայնվի ռեսպուբլիկայի լաքերի արդյունաբերության արտադրանքի ասորտիմենտը։

Այսպիսով, Հայկական ՍՍՌ մեքենաշինությունը բազմաթիվ ուղիներով կապվում է ծանր արդյունաբերության հիմնական ճյուղերի հետ և դրանով իսկ ստեղծվում է խոշոր կոմպլեքս, որը մի ամբողջության մեջ է միավորում հանքագործությունը, սև ու գունավոր մետալուրգիան, ճենապակու, ապակեթելի արտադրությունը և քիմիական արդյունաբերության մի շարք ճյուղեր։ Մեքենաշինությունը դառնում է ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության անխզելի մասը և նրա առաջատար ճյուղը։

Ալյումինի, պղնձի ու նրանց համաձուլվածքների, թանկարժեք մետաղների և կիսահաղորդիչ նյութերի լայն կիրառումը պայմանավորված է տեխնիկայի որակական աճմամբ, արտադրության ավտոմատացմամբ, մեքենաների ու կոնստրուկցիաների քաշի պակասեցմամբ, նրանց դիմացկունության և որակի բարձրացմամբ։

Ապագայում հատուկ ուշադրություն կհատկացվի գունավոր և հազվագյուտ մետաղների արտադրության ավելի արագ զարգացմանը։ Այդ զարգացման մասշտաբները կանխորոշվում են պղնձի, մոլիբդենի, ալյումինի ու մագնեզիումի հումքի, հազվագյուտ և ազնիվ մետաղների պաշարների առկայությամբ։

Կընդլայնվեն ու կվերակառուցվեն Քաջարանի ու Դաստակերտի պղնձի-մոլիբդենի կոմբինատները, ինչպես և Ղափանի, Ախթալայի հանքավայրերը, Ալավերդու պղնձա-քիմիական կոմբինատը ու Քանաքեռի ալյումինի գործարանը. գունավոր մետալուրգիայի արդյունաբերությունը կյուրացնի այնպիսի նոր հանքավայրեր, ինչպիսիք են՝ Հանքավանի մոլիբդենի, Մեղրու շրջանի Լիճքի պղնձի-մոլիբդենի, Զոդի ոսկու հանքավայրը և մի շարք այլ լեռնահանքեր։

Մոտակայում շահագործման կհանձնվի Ագարակի պղնձի-մոլիբդենի կոմբինատը։ Գունավոր մետալուրգիայի և լեռնահանքային արդյունաբերության զարգացման գործում կարևոր տեղ են գրավում Ալավերդու պղնձա-քիմիական կոմբինատի ընդլայնումն ու վերակառուցումը։ Վերակառուցվելուց հետո Ալավերդու պղնձա-քիմիական կոմբինատը կդառնա հումքը կոմպլեքսորեն օգտագործող և արտադրության ավարտված ցիկլով ձեռնարկություն։ Կոմբինատի հումքային հնարավորությունները և բազմազան տեխնոլոգիական պրոցեսների ու մեթոդների արդի մակարդակը թույլ են տալիս ո՛չ միայն ավելացնել արտադրության մասշտաբները տեխնոլոգիական սխեմայի առանձին օղակներում, բարձրացնել հումքի օգտագործման կոմպլեքսայնության աստիճանը, այլև ընդլայնել ժողովրդական տնտեսության մեջ օգտագործվող խիստ անհրաժեշտ կոմպոնենտների նոմենկլատուրան։ Այդ տեսակետից զգալի տեղ է գրավում այնպիսի հազվագյուտ և ցրված տարրերի ստացման հարցը, ինչպիսիք են՝ սելենը, թելուրը, ռենիումը, որոնք մեծ չափերով են պարունակվում այդ հանքանյութերում։

Ըստ նախագծային առաջադրանքի Ալավերդու պղնձա-քիմիական կոմբինատի վերակառուցումից հետո զգալիորեն կավելանա նրա կարողությունը 1959 թվականի համեմատությամբ. այսպես, օրինակ, զտված պղինձը կավելանա 480, ծծմբաթթուն՝ 700, սուպերֆոսֆատը՝ 200, պղնձարջասպը՝ 170



տոկոսով, իսկ հազվագյուտ ու ցրված տարրերի ավելացման չափը հնարավոր չէ ցույց տալ, քանի որ ներկայումս դրանք չեն ստացվում։ Կոմբինատի համախառն արտադրանքը յոթնամյակում կաճի 4 անգամ։ Ըստ պլանի էլեկտրոլիզի, ծծմբաթթվի գծով լրացուցիչ կարողությունների և հազվագյուտ մետաղներ ստանալու համար կոնցենտրատների էլեկտրահալման և մետալուրգիական փոշիների ու մանրահանքերի վերամշակման գծով նոր կարողությունների գործարկումը հիմնականում պետք է ավարտվի 1963 թվականին։ Այդ ժամկետը պայմանավորված է Հայկական ՍՍՌ և հարևան տնտեսական շրջանների լեռնահանքային ձեռնարկություններից ստացվող պղնձի կոնցենտրատի քանակի ավելացմամբ։

Կարողությունների գործարկման պլանը սահմանված ժամկետներում չկատարելը դիսպրոպորցիա կստեղծի կոմբինատի լեռնահանքային ձեռնարկությունների կարողությունների և մետալուրգիական ու քիմիական վերամշակման կարողությունների միջև։ Սակայն հարկ է նշել, որ լուրջ մտահոգություն է պատճառում ծծմբաթթվի առաջնահերթ ցեխի շինարարության վիճակը, քանի որ թերակատարվում են շինմոնտաժային աշխատանքների պլանները։

Եթե ժամանակին չգործարկվի ծծմբաթթվի նոր ցեխը, վտանգի տակ կդրվի ինչպես պղնձի, այնպես էլ ծծմբաթթվի արտադրության պլանի կատարումը։ Ծծմբաթթվի նոր ցեխի շինարարությունն անհրաժեշտ է արագացնել նաև այն պատճառով, որ տարեցտարի ավելանալու է պղնձի կոնցենտրատների արտադրությունը (1965 թվականին այն 4 անգամ ավելի կլինի, քան 1959 թվականին)։ Պղինձ ստանալու համար դրանց վերամշակումը հնարավոր կլինի միայն այն դեպքում, եթե առաջացող ծծմբաթթվային գազը ոչ թե մթնոլորտ արձակվի, այլ օգտագործվի ծծմբաթթու ստանալու համար։ Այդ գազը չօգտագործվելու դեպքում, մի կողմից՝ կվնասվեն բնակչությունն ու բուսականությունը, իսկ մյուս կողմից՝ անթույլատրելիորեն կորստի կմատնվի ծծմբաթթուն։

Ալավերդու պղնձա-քիմիական կոմբինատի վերակառուցման ու ընդլայնման և հումքի կոմպլեքսային օգտագործման շնորհիվ այդ կոմբինատը կթողարկի բազմաթիվ տեսակների արտադրանք՝ վայերբարսի և կատոդի պղինձ, ծծմբաթթու (կոնտակտային մաքուր), պղնձարջասպ, սուպերֆոսֆատ, ֆտորային ալյումին, կրիոլիտ և, վերջապես՝ սելեն, թելուր, ռենիում մետաղները։

Հումքի կոմպլեքսային օգտագործման շնորհիվ Ալավերդու պղնձա-քիմիական կոմբինատը կդառնա ռեսպուբլիկայի առավել շահութաբեր ձեռնարկություններից մեկը՝ առաջավոր տեխնոլոգիայով, և յոթնամյակի համար նախատեսված կապիտալ ներդրումները կփոխհատուցվեն 2—3 տարվա ընթացքում։

Գունավոր մետալուրգիայի հարստացուցիչ շատ ֆաբրիկաներում անբավարար են լուծված հանքամշակման մնացուկների պահեստավորման ու պահպանման, ինչպես նաև կեղտաջրերի զտման խնդիրները, որի հետևանքով կեղտոտվում ու փչանում են շրջակա ջրամբարները և անվերադարձ կորչում մետաղները, որոնք կարող են ստացվել ու օգտագործվել մետաղագործության տեխնիկայի մակարդակի հետագա բարձրացման դեպքում։ Մետաղների մեծ կորուստներ են տեղի ունենում հնոցագազերն անբավարար մաքրելու և խա-

րամը չօգտագործելու հետևանքով։ Հումքի կոմպլեքսային օգտագործումն անբավարար լինելու պատճառով գունավոր մետալուրգիայում անվերադարձ կորչում են մեծ քանակությամբ հումք, գունավոր ու թանկագին մետաղներ։

Յոթնամյա պլանով զգալիորեն կավելանա հանքանյութի արդյունահանման բաց եղանակի տեսակարար կշիռը։ Ստորերկրյա աշխատանքներում կկիրառվի հանքահանույթի բարձր արտադրողական սիստեմը՝ ավելի զորեղ սարքավորման օգտագործմամբ։ Գունավոր մետաղների հանքանյութի հարստացման ասպարեզում նախատեսվում է կիրառել առավել արդիական տեխնոլոգիական սխեմաներ, բազմաստիճան հարստացում, օգտագործել էֆեկտիվ հակաազդակներ և այլն, որոնք թույլ կտան ավելացնել ստացվող մետաղների քանակը։

Նոր օբյեկտների թվում յոթնամյակում հատուկ տեղ է հատկացվում Հրազդանի լեռնահանքային կոմբինատին, որի գործարկումը նախատեսված է յոթնամյակի վերջում։ Այդ կոմբինատը նեֆելինի սիենիտներից, որոնց պաշարները մեզ մոտ անսպառ են, վերամշակելու է կավահող (հումք՝ ալյումինի ստացման համար), պորտլանդ ցեմենտ, մի շարք արժեքավոր քիմիական նյութեր, որոնց մի մասը բոլորովին նոր նյութեր են, բարձրորակ ապակի և ապակյա իրեր, սինթետիկ լվացողական նյութեր և մեծ նշանակությամբ բազմաթիվ այլ տեսակի արտադրանք։ Այդ կոմբինատը գործարկվելուց հետո մեր ալյումինի արդյունաբերությունը կունենա կավահողի ստացման իր մոտիկ բազան։ Մոտակա 10—15 տարում կկրկնապատկվի մետաղե ալյումինի, նրանից ստացվող գլանվածքի և մետաղաթաղանթի թողարկումը։

Ինչպես հայտնի է, ալյումինը հարաճուն կիրառում է գտնում էլեկտրատեխնիկայում, ավտոշինարարության, մեքենաշինության, շինարարության, քիմիական ու սննդի արդյունաբերության և լայն սպառման առարկաների արտադրության մեջ։ Ալյումինը կիրառվում է որպես սուր դեֆիցիտային մետաղների փոխարինող. օրինակ՝ կաբելների, ուժային տրանսֆորմատորների, էլեկտրաշարժիչների փաթույթի հաղորդալարերի արտադրության մեջ պղինձն ալյումինով է փոխարինվում, իսկ կաբելային պատյանում ալյումինով է փոխարինվում կապարը։ Ալյումինը և նրա համաձուլվածքները հաջողությամբ բռնում են բազմաթիվ կոնստրուկցիոն նյութերի տեղը, մասնավորապես սև մետաղների ու փայտանյութի՝ նրանց կիրառման մի շարք բնագավառներում, ընդ որում ապահովում են զգալի խնայողություն մեքենաների և շինվածքների շահագործման ժամանակ։

Ժողովրդական տնտեսության մեջ նույնպես մեծ նշանակություն ունի մետաղե մագնիումը։ Մագնիում պարունակող հումքի (ուլտրա հիմնական հանքատեսակների, դոլոմիտների և այլ հումքի) անսպառ պաշարների առկայությունը ռեսպուբլիկայում թույլ է տալիս կազմակերպելու մետաղե մագնիումի և մագնիումի օքսիդի արտադրություն, որոնք շատ կարևոր են ժողովրդական տնտեսության մի շարք ճյուղերի համար։

Ալյումինի և մագնիումի հիման վրա մյուս գունավոր մետաղների կոմպոզիցիայով կազմակերպվելու է զանազան համաձուլվածքների արտադրությունը էլեկտրատեխնիկական, սարքաշինական, մեքենաշինական և քիմիական արդյունաբերության համար։

Հայաստանում վերջին տարիներս հայտաբերված երկաթի հանքավայրերը հնարավորություն են ընձեռում ռեսպուբլիկայում կազմակերպելու սև



մետաղների արտադրություն։ Սև մետալուրգիայի բազայի ստեղծումը պայմանավորված է մեքենաշինության զարգացման բարձր տեմպերով ո՛չ միայն մեր ռեսպուբլիկայում, այլև Վրաստանում ու Ադրբեջանում։ Մեքենաշինությունը ինչպես Հայաստանում, այնպես էլ անդրկովկասյան մյուս ռեսպուբլիկաներում շատ քիչ չափով է հենվում տեղական մետալուրգիական բազայի վրա։ Ռուսթավիի Անդրկովկասյան մետալուրգիական կոմբինատը արտադրում է մեծ մասամբ վերափոխելի չուգուն, որից ձուլվում է պողպատ՝ նավթարդյունաբերությանն անհրաժեշտ խողովակների արտադրության համար, ինչպես նաև սորտային ու 5 միլիմետրից ավելի հաստության թերթավոր պողպատ։

Յոթնամյակի վերջում և նրանից հետո էլ էլեկտրատեխնիկական մեքենաշինությունը կլինի Հայկական ՍՍՌ արդյունաբերության պրոֆիլային ճյուղը, իսկ էլեկտրատեխնիկական պողպատների պահանջը է՛լ ավելի կաճի. հետևաբար, ժամանակն է մեր ռեսպուբլիկայում կազմակերպելու էլեկտրատեխնիկական պողպատի արտադրություն։ Ռեսպուբլիկայի երկրաբանների կողմից վերջին տարիներս Հայկական ՍՍՌ մի շարք շրջաններում հայտաբերված երկաթի հանքավայրերից հատուկ ուշադրության է արժանի Հրազդանի շրջանի հանքավայրը։ Այդ հանքավայրը պարունակում է 40 տոկոս երկաթ, չկան վնասակար խառնուրդներ, հեշտությամբ հարստացման է ենթարկվում և հեշտությամբ էլ վերականգնվում է։ Այդ հատկություններն առանձնապես արժեքավոր են, եթե նկատի ունենանք հիշյալ հանքանյութի օգտագործումը էլեկտրատեխնիկական պաշարների արտադրության համար։

Ակադեմիկոս Բարդինի տվյալներով արտասահմանյան մետալուրգիայում որակյալ, մասնավորապես էլեկտրատեխնիկական պողպատի արտադրության մեջ վերջին տարիներս կիրառվում է արտահնոցային եղանակը, այսինքն՝ երկաթահանքի անմիջական վերականգնումը։ Շվեդիայում ավելի քան 200 հազար տոննա հատուկ պողպատ ձուլվում է հանքանյութի անմիջական վերականգնման եղանակով։ Երկաթահանքի անմիջական վերականգնման մեթոդների կիրառման ուղղությամբ աշխատանքներ են տարվում նաև ՍՍՌ Միությունում, Կանադայում, Մեքսիկայում, ԳՖՌ-ում և այլ երկրներում։ Այդ եղանակը թույլ է տալիս որոշ չափով ապակենտրոնացնել սև մետաղների արտադրությունը, քանի որ դա տնտեսապես օգտակար է դառնում սև մետաղների ոչ մեծ տարեկան ծավալով՝ 100, 200 և 500 հազար տոննայի չափով արտադրելու պայմաններում, մինչդեռ լրիվ ցիկլով ժամանակակից մետալուրգիական գործարանները նպատակահարմար է կառուցել տարեկան հինգ միլիոն և ավելի տոննա մետաղի արտադրակարողությամբ։

Նպատակահարմար կլինի հիմնել էլեկտրատեխնիկական պողպատ թողարկող մետալուրգիական մի կոմբինատ, որն իր արտադրանքով ապահովի ո՛չ միայն Հայաստանի, այլև անդրկովկասյան մյուս ռեսպուբլիկաների կարիքները։ Այդ կոմբինատը հարկավոր է կազմակերպել Հրազդանի շրջանում, քանի որ այդտեղի հանքավայրի տնտեսական պայմանները շատ բարենպաստ են։ Հրազդանի շրջանը Երևանի հետ կապված է մագիստրալային խճուղով և երկաթգծով։ Հանքավայրն ապահովված է տեխնիկական ու խմելու ջրով։ Հրազդանի շրջանն ունի անհրաժեշտ շինանյութեր և, վերջապես, այդտեղով է անցնում Աղստաֆա—Երևան մագիստրալային գազամուղը. բերովի կոքսի

կամ ածխի փոխարեն բնական գազի կիրառումը զգալիորեն կիջեցնի կոմբինատի թողարկելիք պողպատի ինքնարժեքը։

Ուշագրավ է նաև Գորիսի շրջանի Սվարանցի հանքավայրը։ Այն ունի երկաթահանքի զգալի պաշարներ, և մեծ նշանակություն ունի ապագայում Անդրկովկասյան մետալուրգիական կոմբինատը երկաթի կոնցենտրատով ապահովելու համար։ Երկաթի պարունակությունը հանքանյութում տատանվում է 14-ից մինչև 58 տոկոս, ընդ որում, նախնական տվյալներով, միջին պարունակությունը կարելի է ընդունել առնվազն 25 տոկոս։ Այդ, ինչպես և Հրազդանի շրջանի հանքավայրի հանքանյութը չունի վնասակար խառնուրդներ և հեշտությամբ հարստացման ու վերականգնման է ենթարկվում։

Նպատակահարմար է ապագայում Սվարանցի հանքավայրի շրջանում ձեռնարկել երկաթաքարի և մինչև 60 տոկոս երկաթի օքսիդի պարունակությամբ երկաթի կոնցենտրատ թողարկող հարստացման ֆաբրիկայի շինարարությունը։ Դրանով իսկ Անդրկովկասյան մետալուրգիական կոմբինատը կապահովվի որակյալ երկաթի կոնցենտրատների հուսալի բազայով։

Խոսելով սև ու գունավոր մետալուրգիայի մասին, չի կարելի չանդրադառնալ հրակայուն նյութերի արդյունաբերությանը։ Մեր ռեսպուբլիկայում այժմ գործում է միայն Թումանյանի հրակայուն նյութերի գործարանը, որը թողարկում է երրորդ և մասամբ երկրորդ կարգի հրակայուն աղյուս։ Մինչ ռեսպուբլիկայում կան բարձրորակ կավահողային հրակայուն նյութերի արտադրության զարգացման լայն հնարավորություններ։ Հումքի իր պաշարներով Հայաստանը կարող է այդ հրակայուն նյութերով ապահովել մագնեզիտաբեր հումք և էժան կավահող չունեցող ո՛չ միայն անդրկովկասյան, այլև մյուս շրջանները։

Շորժայի մագնեզիտաբեր հումքի հանքավայրի բազայի վրա կարելի է կազմակերպել բարձրորակ աղյուսի, խեցեգործական իրերի, թրծված դունիտի, խողովակների և այլ շինվածքների արտադրությունը։

Հրազդանի հանքաքիմիական կոմբինատի կավահողի բազայի վրա նախատեսվում է բարձր կավահողային հրակայուն նյութերի արտադրություն, որոնց պահանջը վիթխարի է ՍՍՌ Միությունում։

Հիշյալ միջոցառումների կենսագործումը հնարավորություն կտա Հայաստանում ստեղծելու որակյալ հրակայուն նյութերի մեծ արդյունաբերություն, որոնցով կապահովվի սև ու գունավոր մետալուրգիայի, քիմիական, մեքենաշինական արդյունաբերության պահանջը կաղապարահողերի նկատմամբ, ինչպես և ջերմաէլեկտրակայանների շինարարության ու, վերջապես, կոմունալ տնտեսության պահանջը։

Ռեսպուբլիկայի արդյունաբերության և երկրի մյուս տնտեսական շրջանների լայն կապերի հետ մեկտեղ կան բոլոր հնարավորությունները՝ ընդլայնելու և խորացնելու ռեսպուբլիկայի ծանր արդյունաբերության այնպիսի հիմնական ճյուղերի արտադրական կապերը, ինչպիսիք են՝ մեքենաշինությունը, գունավոր ու սև մետալուրգիան և քիմիական արդյունաբերությունը։

---

# ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ԿԱՏԱՐԵԼԱԳՈՐԾՄԱՆ ՈՒՂԻՆԵՐԸ

Գ. ԹԱԴԵՎՈՍՅԱՆ

ՍՄԿԿ Կենտրոնական Կոմիտեի այս տարվա հուլիսին կայացած պլենումը, որը քննարկեց արդյունաբերության, տրանսպորտի զարգացման և արտադրության մեջ գիտության ու տեխնիկայի նորագույն նվաճումների արմատավորման վերաբերյալ ՍՄԿԿ XXI համագումարի որոշումների կատարման ընթացքը, նշեց, որ սովետական ժողովուրդը, ցուցաբերելով ստեղծագործական նախաձեռնություն, զգալի հաջողությունների է հասել յոթնամյա պլանը կատարելու և գերակատարելու համար մղվող պայքարում։ Արդյունաբերական արտադրանքի աճը ՍՍՌՄ-ում 1959 թ. կազմեց ավելի քան 11 տոկոս, պլանով նախատեսված 7,7 տոկոսի դիմաց, իսկ 1960 թվականի առաջին կիսամյակում՝ 10 տոկոս, տարեկան պլանով նախատեսված 8,1 տոկոսի դիմաց։ Յոթնամյակի առաջին տարիներում զգալիորեն շատ է արտադրված պողպատ, պողպատի գլանվածք, երկաթաքար, մեքենաներ, հաստոցներ և այլ արդյունաբերական ու լայն սպառման ապրանքներ, քան նախատեսված էր կոնտրոլ թվերով։

Նշված հաջողությունները ձեռք են բերվել մեր արդյունաբերության տեխնիկական վերազինման հոյակապ ծրագիրը իրականացնելու, արտադրության հետագա մեքենայացման ու ավտոմատացման, պրոգրեսիվ տեխնոլոգիական պրոցեսների արմատավորման շնորհիվ, որոնք հանդիսանում են տեխնիկական առաջընթացի կարևոր օղակները։ Այս խնդիրների կենսագործումը հնարավորություն տվեց զգալիորեն բարձրացնելու աշխատանքի արտադրողականությունը, իջեցնելու թողարկվող արտադրանքի ինքնարժեքը, բարձրացնելու նրա որակը։

Ինչպես նշեց ՍՄԿԿ Կենտկոմի Հուլիսյան պլենումը, արդյունաբերության և տրանսպորտի անցած մեկ ու կես տարվա աշխատանքի արդյունքներից կարելի է այն հիմնական եզրակացությանը հանգել, որ ՍՄԿԿ XXI համագումարի կողմից ընդունված կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծման հոյակապ ծրագիրը հաջողությամբ է իրականացվում։ Հենց մեզ մոտ, Հայկական ՍՍՌ ժողտնտխորհի արդյունաբերության տարբեր ճյուղերում վերջին մեկ և կես տարում ավտոմատացման ու մեքենայացման գծով կենսագործվել են ավելի քան 300 միջոցառում, արմատավորվել են մոտ 180 պրոգրեսիվ տեխնոլոգիական պրոցեսներ, արտադրության մեջ ներդրվել են 350-ից ավելի միավոր բարձր արտադրողականության հաստոց և մասնագիտացված սարքավորումներ։

Գունավոր մետալուրգիան և լեռնահանքային արդյունաբերությունը հան-

դիսանում են մեր ռեսպուբլիկայի արդյունաբերության առաջատար ճյու-
ղերը, որոնց համախառն արտադրանքի ծավալը յոթնամյակի վերջում, 1959
թվականի համեմատությամբ, կավելանա մոտ 3 անգամ։ Դա տեղի կունենա
ոչ միայն նոր արտադրական ձեռնարկությունների ավելացման հաշվին, այլև
գործող ձեռնարկությունների արտադրական կարողությունների լավագույն
օգտագործման, արտադրության պրոցեսների մեքենայացման ու ավտոմա-
տացման, ինչպես և պրոգրեսիվ տեխնոլոգիական պրոցեսների արմատավոր-
ման շնորհիվ։

Միայն մեկ միջոցառման կիրառումը՝ Քաջարանի պղնձա-մոլիբդենային
կոմբինատում հանքաքարի ստորերկրյա հանույթից բաց հանույթին անցնե-
լը, հնարավորություն տվեց աշխատանքի արտադրողականությունը բարձ-
րացնել երեք անգամ, մեկ տոննա հանքաքարի ինքնարժեքը իջեցնել 50 տո-
կոսով և զգալիորեն բարելավել աշխատանքի պայմանները։ 1961 թվականից
բաց հանույթի տեխնոլոգիայով կաշխատի նաև Դաստակերտի կոմբինատը։
Լեռնահանքային արդյունաբերության ձեռնարկություններում լայնորեն օգ-
տագործվում են օգտակար հանածոյի փլեցման և արագընթաց հանքահատ-
ման բարձր արտադրողականության սիստեմները, հանքաքարի փոխադրա-
կան աշխատանքների մեքենայացումը և այլն։

Քանաքեռի ալյումինի գործարանում տեխնոլոգիական պարամետրերի
ռացիոնալ ընտրման և ղողավորման ուժեղացման շնորհիվ էլեկտրոլիզային
վաննաների վրա հոսանքի ուժը բարձրացել, հասել է 65 հազար ամպերի,
որն ապահովեց աշխատանքի արտադրողականության բարձրացումը 10 տո-
կոսով։

Քիմիական արդյունաբերության աշխատողները ժողովրդական տնտե-
սության համար խիստ անհրաժեշտ քիմիական տարբեր նյութերի՝ պոլիվինիլ
բութիրային թաղանթի, արհեստական կորունդի, նոր տեսակի սինթետիկ
կաուչուկների, վինիֆլեքսի լաքի, պոլիվինիլացետատային սպիրտի և այլ
նյութերի արտադրությունը յուրացնելու հետ մեկտեղ, մեծ աշխատանք են
կատարել արտադրության տեխնիկական կատարելագործման ուղղությամբ։
Այսպես, օրինակ, Կիրովի անվան գործարանում յուրացված է քլորոպրենի
անընդհատ պոլիմերացման պրոցեսը, որն ապահովում է տարեկան 3 միլիոն
ռուբլու տնտեսում։ Տեխնիկա-էկոնոմիական մեծ առավելություններ ունի
գործարանի կոլեկտիվի կողմից մշակված և արմատավորված նոր կոն-
ստրուկցիայի ացետիլենային գեներատորը։

Նոր հեռանկարներ են բացվում քիմիական արդյունաբերության համար
բնական գազի օգտագործման շնորհիվ։ Այժմ արդեն Կիրովի անվան գոր-
ծարանում կաթսայատան բոլոր կաթսաները գազով են աշխատում, ընդ որում
գազի և ջրամատակարարման, ինչպես և այրման պրոցեսներն ու վթարային
ապահովման բոլոր պրոցեսները լրիվ ավտոմատացված են, իսկ առաջնե-
րում մութ ու կեղտոտ կաթսայատունը դարձել է մի լաբորատորիա, որտեղ
աշխատակիցները սպիտակ գոգնոցներով են աշխատում։ Ավտոմատացման
են ենթարկվել նաև կրաքարի թրծման վառարանները, որոնք նույնպես ան-
ցել են բնական գազով աշխատելու։ Մոտ ապագայում կյուրացվի բնական
գազից ացետիլեն ստանալու տերմոպիրոլիզային նոր եղանակը, որը հնարա-
վորություն կտա դադարեցնելու կարբիդի էլեկտրատար արտադրությունը։

Պոլիվինիլացետատ գործարանում կոմպլեքս ավտոմատացման են են-



թարկված քացախաթթվի արտադրության պրոցեսները, կատարելագործված
է ալդեհիդա-բութանոլային ջրի ռեակտիֆիկացիայի տեխնոլոգիան, սկսված է
բնական գազի օգտագործումը տեխնոլոգիական նպատակների համար։

Բուռն տեմպերով են զարգանում մեր ռեսպուբլիկայում մեքենաշինու-
թյունը, սարքաշինությունն ու էլեկտրատեխնիկական արդյունաբերությունը։
Յոթնամյակի վերջում Հայաստանը էլեկտրատեխնիկական արտադրանքի ծա-
վալով միութենական ռեսպուբլիկաների մեջ կգրավի երրորդ տեղը, իսկ մե-
տաղահատ հաստոցների արտադրությունը, 1958 թվականի համեմատու-
թյամբ, կավելանա 11 անգամ։ Միայն վերջին երկու տարում մեր ռեսպուբ-
լիկայում շարք են մտել 12 նոր գործարան՝ հաստոցաշինական գործարաննե-
րը Երևանում, Լենինականում և ուրիշ քաղաքներում, որոնցից շատերի թո-
ղարկած արտադրանքի մեծ պահանջ է զգացվում ոչ միայն մեր երկրում,
այլև նրա սահմաններից դուրս։ Մեծ աշխատանք է կատարված նաև գործող
մյուս ձեռնարկությունների տեխնիկական մակարդակը բարձրացնելու ուղ-
ղությամբ։ Այսպես, հավաքման կոնվեյերներ են ներդրված Ջերժինսկու ան-
վան հաստոցաշինական ու Լենինականի հեծանվի գործարաններում, դետալ-
ների ջերմային մշակման համար բարձր հաճախականությամբ հոսանքի տե-
ղակայանքներ են օգտագործվում Լուսավանի ներտաշ-հորիզոնական հաս-
տոցների, Երևանի ֆրեզերային հաստոցների, Հոկտեմբերյանի հաստոցաշի-
նական գործարաններում։ Գործարանների ձուլային արտադրություններում
մեքենայական ձևավորման տարեկան կարողությունները հասցված են 4500
տոննայի։ Ավտոպահեստամասերի դարբնոցային ցեխն անցել է նախապատ-
րաստուկների տաքացման բարձր հաճախականության ինդուկցիոն եղանակին,
որը տալիս է մոտ 500 հազար ռուբլու տնտեսում, դրա շնորհիվ զգալիորեն
բարելավվել են նաև աշխատանքի պայմանները։ Երևանի մեխանիկական գոր-
ծարանում յուրացվել է գունավոր մետաղներից արմատուրաները հեղուկ
մետաղը դրոշմելու միջոցով ստանալու եղանակը և այլն։

Լենինի անվան էլեկտրամեքենաշինական գործարանում մոնտաժված ու
շահագործման է հանձնված գեներատորների հավաքման երեք կոնվեյեր, ար-
մատավորված է ստատորի թերթակապոցների պատրաստման և ռոտորների
ստեգմենտների հավաքման հոսքային գիծը, ներդրված է ուժային տրանս-
ֆորմատորների կոճերի փորձարկման ավտոմատ տեղակայանքը։ Այժմ գոր-
ծարանում շահագործվում են բավականին երկարությամբ կոնվեյերներ, որոնց
շնորհիվ զգալի չափով բարձրացել է աշխատանքի արտադրողականությունը,
որը պետությանը տալիս է մեծ օգուտ։ Հավաքման կոնվեյերներ և հոս-
քային մեքենայացված գծեր են արմատավորված Երևանի էլեկտրական
ճշգրիտ գործիքների, էլեկտրալամպերի և այլ գործարաններում։ Երևանի
կաբելի գործարանում լայնորեն կիրառվում են անընդհատ վուլկանիզա-
ցիայի ագրեգատները, որոնք ապահովում են մեկ քառակուսի մետր ար-
տադրական տարածություններից ստացվող արտադրանքի քանակի բարձրա-
ցումը և արտադրության բարձր կուլտուրան։ Այդ նույն գործարանում ար-
մատավորված է լարերի քարշման ու թրծման համատեղված տեխնոլոգիան,
էմուլսիաների պատրաստումը ուլտրաձայնի եղանակով և այլն։

Տեխնիկական այդ միջոցառումների կիրառումը հնարավորություն տվեց
1959 թվականին, 1958 թվականի համեմատությամբ, էլեկտրական մեքենա-
ների, ապարատների ու սարքերի արտադրությունը ավելացնելու 25-ից 65

տոկոսով, աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու 8,7 տոկոսով: 1960 թվականի առաջին կիսամյակում այն կազմեց 108,5 տոկոս, 1959 թվականի նույն ժամանակամիջոցի համեմատությամբ:

Տեխնիկական պրոգրեսի կարևոր խնդիրները հաջողությամբ են լուծվում շինանյութերի, փայտամշակման, թեթև, սննդի, մսի ու կաթի արդյունաբերության ձեռնարկություններում, որտեղ արտադրական որոշ պրոցեսների մեքենայացման ու ավտոմատացման, բարձր արտադրողականության ագրեգատների, մեքենայացված հոսքային գծերի, բարձր արտադրողականության հաստոցների ներդրման, տեխնոլոգիական պրոցեսների կատարելագործման շնորհիվ հասել են աշխատանքի արտադրողականության, թողարկվող արտադրանքի որակի բարձրացման ու նրա ինքնարժեքի իջեցման բարձր ցուցանիշների:

Լենինի անվան մետաքսի կոմբինատում ստեղծված է մետաքսի և աստառային կտորների վերջնային մշակման ավտոմատացված հոսքային գիծ, որից ստացված տարեկան տնտեսումը կազմում է մոտ 2 միլիոն ռուբլի. Մյասնիկյանի անվան և «Պոբեդա» կահույքի ֆաբրիկաներում յուրացված է հիդրավլիկ մամլիչների տակ տաք ֆաներապատման նոր եղանակը, որը նպաստում է գնորդների բարձր պահանջներին բավարարող բարձրորակ կահույքի արտադրմանը: Երևանի գինու կոմբինատում, «Արզնի» և «Ջերմուկ» հանքաջրերի գործարաններում ներդրվել են շշերը լցնելու և փակելու ավտոմատ հոսքային գծերը. Երևանի կաթի կոմբինատում կոմպլեքս տեխնիկական մի շարք միջոցառումների իրագործումը հնարավորություն տվեց կոմբինատի կաթի վերամշակման կարողությունը 45 տոննայից հասցնել 85 տոննայի՝ մեկ հերթափոխում:

Մեր արդյունաբերության տեխնիկական պրոգրեսի հարաճուն հարցերը լուծելու գործում մեծ ակտիվություն են ցուցաբերում աշխատավոր լայն մասսաները: Այդ մասին են վկայում Հայաստանի Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի բյուրոյի որոշմամբ 1959 թվականի օգոստոսի 5-ից մինչև սեպտեմբերի 5-ը անցկացված տեխնիկական պրոգրեսի համար ռեզերվներ հայտաբերելու և կենսագործելու միամսյակը, որին մասնակցեցին Ժողտնտխորհի բոլոր արդյունաբերական ձեռնարկությունները, գիտա-հետազոտական ու նախագծային կոնստրուկտորական կազմակերպությունները: Միամսյակի ընթացքում արվեցին 3000-ից ավելի առաջարկություններ, որոնց մեծ մասը արդեն կենսագործված է, իսկ մի շարք միջոցառումներ նախատեսված են 1960—1961 թթ. պլաններում:

Գյուտարարական և ռացիոնալիզատորական առաջարկությունների, ինչպես նաև այլ միջոցառումների կենսագործման շնորհիվ միայն վերջին երեք տարվա ընթացքում արդյունաբերական արտադրանքի աճը Ժողտնտխորհի սիստեմում կազմեց ավելի քան 45 տոկոս, ընդ որում գունավոր մետալուրգիայի արտադրանքի աճը՝ 53 տոկոս, քիմիական արդյունաբերությանը՝ 71 տոկոս, էլեկտրատեխնիկական արդյունաբերությանը՝ 94 տոկոս, մեքենաշինությանը՝ 2 անգամ: 1960 թվականի առաջին կիսամյակում արդյունաբերական արտադրանքի աճը, անցած տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ, կազմեց 15 տոկոս, պլանով նախատեսված 11 տոկոսի դիմաց, իսկ մեքենաշինության, էլեկտրատեխնիկական արդյունաբերության և սարքաշինության գծով աճը կազմեց 26—32 տոկոս:



Ձեռք բերված հաջողությունների հետ միասին պետք է նշել, որ նոր տեխնիկայի զարգացման ու ներդրման գործում դեռ գոյություն ունեն բավականին մեծ թերություններ, որոնք դանդաղեցնում են մեր արդյունաբերության առաջընթացը: Բավական է նշել, որ 1959 թվականին պլանավորված տեխնիկայի ներդրման 396 նոր միջոցառումներից 82-ը չկատարվեցին, իսկ 1960 թվականի առաջին կիսամյակում՝ 129-ից 19-ը անկատար մնացին:

Բանը նրանումն է, որ, ինչպես Ժողտնտխորհի ճյուղային վարչությունների, այնպես էլ արդյունաբերական ձեռնարկությունների որոշ ղեկավարներ իրենց ամբողջ ուշադրությունը կենտրոնացնելով արտադրական պլանները կատարելու հետ կապված հարցերի վրա, աչքաթող են անում նոր տեխնիկայի արմատավորման հարցերը:

ՍՍՌՄ Մինիստրների Սովետի կողմից հաստատված 1960 թվականի ժողովրդատնտեսական պլանով նախատեսված էր մեր ռեսպուբլիկայի հաստոցաշինության ձուլային արտադրության մեջ ներդնել, այսպես կոչված, շուտ չորացող ձևավորող հողային խառնուրդները, որոնք հնարավորություններ են ստեղծում ավելացնելու ձուլային արտադրությունը: Ի դեպ, ձուլային արտադրության ետ մնալը ռեսպուբլիկայում հաստոցաշինության զարգացման գլխավոր խոչընդոտներից մեկն է: Այդ միջոցառումը կենսագործելու համար բարդ սարքավորումների կամ դեֆիցիտային նյութերի կարիքը չկա և բոլոր հիմնական նյութերն արտադրվում են մեր ռեսպուբլիկայի ձեռնարկություններում: Սակայն Ժողտնտխորհի Մեքենաշինության և հաստոցաշինության վարչությունն այդ բնագավառում ցուցաբերում է անտարբերություն և կազմակերպչական-տեխնիկական վճռական միջոցներ ձեռք չի առնում այն իրականացնելու համար: Այդ այն ժամանակ, երբ վարչության ապարատում կա և՛ տեխնիկական բաժին 12 ինժեներով, և՛ գլխավոր տեխնոլոգի հաստիք:

Այդ նույն վարչության ավտոպահեստամասերի գործարանում 3 տարի է, որ ստացվել է և մոտ մեկ տարի է, ինչ դարբնոցային ցեխում հիմքի վրա տեղադրված է 1600 տոննանոց ունիկալ մամլիչը, բայց շահագործման չի հանձնվում: Մինչդեռ ինչպես այդ գործարանը, այնպես էլ ռեսպուբլիկայի մյուս ձեռնարկությունները դրոշմվածքների մեծ կարիք ունեն:

Երևանի Ջերժինսկու անվան հաստոցաշինական գործարանը շարունակում է թողարկել անորակ խառատա-պտուտակահան 1Б61 մոդելի հաստոցներ և չապահովեց ժամանակին նոր տեխնիկայի 1960 թվականի պլանով նախատեսված հաստոցի մոդեռնացումը, չնայած նրան, որ դրա համար կային բոլոր հնարավորությունները:

Երևանի մակարոնի-հրուշակեղենի ֆաբրիկան շատ անգամ քննադատվել է ցածրորակ արտադրանք թողարկելու համար, որի պատճառներից մեկը արտադրական ցեխերի ջերմային ռեժիմի խախտումն է: Ցեխերի համապատասխան ջերմությունն ապահովելու համար նախատեսված է տեղակայել օդի կոնդիցիոներներ: Այդ սարքավորումը ֆաբրիկան վաղուց էր ստացել, բայց գտնվում էր պահեստում և չէր օգտագործվում: Երբ վերադաս օրգանների միջամտությամբ գործարանի ղեկավարությունը սկսեց այդ հիանալի սարքավորման մոնտաժը, այս անգամ էլ պարզվեց, որ ֆաբրիկայի ղեկավարության անպատասխանատվության հետևանքով այդ նպատակի համար գումար չի նախատեսված:

Գունավոր մետալուրգիայի և լեռնահանքային արդյունաբերության վար-

չությունը ժամանակին համապատասխան միջոցներ ձեռք չառավ ձեռնարկությունները տեխնիկական դոկումենտացիայով ու սարքերով ապահովելու համար, որի պատճառով Ալավերդու պղնձա-քիմիական կոմբինատում ու Քաջարանի պղնձա-մոլիբդենային կոմբինատում խափանման վտանգի տակ են կարևոր արտադրական պրոցեսների ավտոմատացման միջոցառումները։

Կան և այնպիսի դեպքեր, երբ արմատավորված նոր տեխնիկան լրիվ և արդյունավետ չի օգտագործվում կամ մերժվում է։

Երևանի էլեկտրալամպերի գործարանում կոմպլեքս-ավտոմատացման ենթարկվեցին ապակու եփման վառարանի բոլոր պրոցեսները և նախատեսված էր նույն ավտոմատացումը կատարել մյուս վառարանների վրա։ Սակայն ավտոմատացված վառարանը գործեց այնքան ժամանակ, քանի դեռ մոնտաժող բրիգադան գտնվում էր գործարանում։ Այդ բրիգադայի գնալուց հետո գործարանի ղեկավարները «հայտաբերեցին», որ ավտոմատիկան իրեն չի արդարացնում և անմիջապես հրաժարվեցին այն օգտագործելուց։

Այսպիսի օրինակները կարելի է շարունակել։ Անհրաժեշտ է, որպեսզի գործարանների, ֆաբրիկաների ու կառույցների ղեկավարներն ու պարտիական կազմակերպությունները լրիվ կերպով օգտագործեն եղած հնարավորությունները, պայքար մղեն ամեն տեսակի կոնսերվատիզմի ու բյուրոկրատիզմի դեմ և ապահովեն տեխնիկական պրոգրեսի խնդիրների ժամանակին լուծումը։

Արդյունաբերության հետագա զարգացման խնդիրներից մեկը՝ նոր մեքենաների, սարքերի ու նյութերի արտադրության յուրացումը և նրանց ներդնումն է արտադրության մեջ։

Վերջին մեկ ու կես տարվա ընթացքում Ժողտնտխորհի արդյունաբերական ձեռնարկություններում նախագծվել ու յուրացվել է ավելի քան 140 նոր մետաղահատ հաստոցների, էլեկտրաչափիչ սարքերի, էլեկտրական մեքենաների ու ապարատների սերիական արտադրությունը, որոնց թվում բարձր արտադրողականության հորիզոնական-ներտաշ, ունիվերսալ ֆրեզերային, բարձր ճշտության շաղափային և այլ մետաղահատ հաստոցներ, մինչև 100 կվտ հզորությամբ նորմալ և բարձր հաճախականության EC տիպի սինխրոն գեներատորներ, կոմպլեկտային-տրանսֆորմատորային տարբեր գաբարիտների ենթակայաններ, ավտոմատ էլեկտրոնային սարքեր՝ ավտոմատիկայի սխեմաներում օգտագործելու համար։ Լենինականի գործարանում Սովետական Միությունում առաջին անգամ յուրացված է ռեդուկտորով միկրոէլեկտրաշարժիչների սերիական արտադրությունը, որոնք լայն կիրառություն են գտել ավտոմատ գործող սարքավորումների մեջ։ Մինչև տարվա վերջը կարտադրվեն 40-ից ավելի սարքավորումների, մեքենաների ու սարքերի առաջին արդյունաբերական սերիաները։

Կատարելով ՍՄԿԿ Կենտկոմի Հունիսյան (1959 թ.) պլենումի որոշումները, ռեսպուբլիկայի Ժողտնտխորհի ձեռնարկությունները բավականին աշխատանք են կատարել թողարկվող արտադրանքի տեխնիկական մակարդակի և որակի բարձրացման ուղղությամբ։ Ինչպես հայտնի է, անցյալ տարի ՍՄԿԿ Կենտկոմի Հունիսյան պլենումի օրերին Մոսկվայում կազմակերպված հնացած տեխնիկայի հատուկ ցուցահանդեսում ցուցադրվեցին ուղղաձիգ շաղափային հաստոցը և 5 տոննանոց մամլիչը, որոնք թողարկում էին Հոկտեմբերյանի հաստոցաշինական և Լենինականի դարբնոցա-մամլիչային սարքա-



վորումների գործարանները։ Կարճ ժամկետում Մեքենաշինության և հաստոցաշինության վարչության հատուկ կոնստրուկտորական-տեխնոլոգիական բյուրոն դրանց փոխարեն նախագծեց նոր կոնստրուկցիայի սարքավորումներ և յուրացվեց նրանց սերիական արտադրությունը։ 1960 թվականի սկզբից Հոկտեմբերյանի և Լենինականի գործարանները անցել են բարձր արտադրողականության շառավղային-շաղափային հաստոցների և ավտոմատ գործող 6,3 տոննանոց մամլիչների սերիական թողարկմանը։

Երևանի վերամբարձ-տրանսպորտային սարքավորումների գործարանը մինչև տարվա վերջը կանցնի նոր 5 տոննանոց ամբարձիչների արտադրությանը, որն այժմ թողարկվող БКСМ—5 ամբարձիչի համեմատությամբ ունի ավելի բարձր արդյունավետություն։

Հայէլեկտրագործարանում արտադրությունից հանված են երկու մոդելի հնացած կոնստրուկցիայի գեներատորներ և դրանց փոխարեն կազմակերպված է կատարելագործված գեներատորների սերիական արտադրությունը։ Դադարեցված է մի շարք հնացած կոնստրուկցիայի էլեկտրաչափիչ գործիքների ու ապարատների արտադրությունը։ Նախատեսված է մինչև 1963 թվականը դադարեցնել 54 սարքավորումների, մեքենաների ու սարքերի արտադրությունը և դրանց փոխարեն անցնել կատարելագործված արտադրանքի թողարկմանը։

Տեխնիկական պրոգրեսի կարևոր խնդիրները լուծելու գործում իրենց անգնահատելի ավանդն են մտցնում Ժողտնտխորհի գիտա-հետազոտական ու նախագծային կազմակերպություններն ու գործարանային լաբորատորիաները, որոնց աշխատակիցների քանակը վերջին երկու տարում կրկնապատկվել է և այժմ կազմում է մոտ 5 հազար մարդ։ Այդ տեսակետից արդյունավետ աշխատանք է տանում Համամիութենական էլեկտրամեխանիկայի գիտա-հետազոտական ինստիտուտի հայկական ֆիլիալը, որը վերջին երկու տարվա ընթացքում մշակել է կատարելագործված էլեկտրական մեքենաների ու ապարատների, էլեկտրաչափիչ սարքերի ու կաբելային իրերի կոնստրուկցիաներ։

Գիտա-հետազոտական լեռնահանքային ինստիտուտը մշակել և Ալավերդու պղնձա-քիմիական կոմբինատում ներդնում է էլեկտրոլիզի շլամներից թանկարժեք և կարևոր էլեմենտների՝ սելենի և թելուրի արտազատման նոր տեխնոլոգիան, որը ժողովրդա-տնտեսական կարևոր նշանակություն ունի։

Սինթետիկ մանրաթելերի արտադրությունն ընդլայնելու մասին պարտիայի XXI համագումարի որոշման կատարման գործում կարևոր նշանակություն ունի Կիրովականի քիմիայի նախագծային և գիտա-հետազոտական ինստիտուտի կողմից մշակված պոլիվինիլային սպիրտի հիմքի վրա նոր «Երևանիտ» կոչվող սինթետիկ մանրաթել ստանալու տեխնոլոգիան՝ բնական գազի օգտագործման միջոցով։ Մշակված տեխնոլոգիան բավականին պարզ է և հնարավորություն է տալիս արտասահմանում կիրառվող տեխնոլոգիայի համեմատությամբ արտադրական ցիկլը կրճատել 8 անգամ, իսկ պրոցեսների թիվը՝ 2 անգամ, որը կապահովի «Երանիտի» ցածր ինքնարժեքը և նրան բամբակի նկատմամբ կդարձնի լրիվ մրցունակ։ Նոր մանրաթել ստանալու կիսաարդյունաբերական սարքավորումը վերջերս շահագործման է հանձնվել պոլիվինիլացետատ գործարանում։ Այս ինստիտուտի կողմից մշակվել է նաև նոր սինթետիկ էլեկտրատեխնիկական թաղանթի պոլիվինիլային

սպիրտից ստանալու տեխնոլոգիան։ Մոտ ժամանակներս այդ նոր նյութի կիսաարդյունաբերական արտադրությունը կսկսվի նույն գործարանում։

Արժեքավոր աշխատանքներ են կատարված նաև Կիրովի անվան գործարանին կից սինթետիկ կաուչուկի Համամիութենական գիտա-հետազոտական ինստիտուտի ֆիլիալի, սննդի, մսի ու կաթի արդյունաբերության գիտա-հետազոտական լաբորատորիաների կողմից։

ՍՄԿՊ Կենտկոմի Հուլիսյան պլենումը խնդիր դրեց՝ ավելի արդյունավետ դարձնել գիտա-հետազոտական ինստիտուտների և կոնստրուկտորական բյուրոների աշխատանքը, կրճատելով կատարվող հետազոտությունների և մշակված սարքավորումների, մեքենաների, սարքերի ու նյութերի արտադրության կողմից յուրացնելու ժամկետները և ստեղծել ժամանակակից էքսպերիմենտալ-լաբորատոր բազաներ։

Այս ուղղությամբ մեր ռեսպուբլիկան շատ անելիքներ ունի։

Կարելի՞ է արդյոք նորմալ համարել, որ բուռն աճող մեքենաշինությունն ու հաստոցաշինությունը մինչև այժմ չունեն մինիմալ էքսպերիմենտալ բազա, այն ժամանակ, երբ ռեսպուբլիկայում այժմ թողարկվում են 50-ից ավելի մետաղահատ հաստոցներ, կոմպրեսորներ, պոմպեր և այլ մեքենաներ ու սարքավորումներ և այդ բազաների բացակայության պատճառով, ստիպված են արտադրանքի նմուշները փորձարկման ուղարկել ռեսպուբլիկայից դուրս, իսկ փորձնական կամ արդյունաբերական նմուշների պատրաստումը ձգձգվում է։

Ռեսպուբլիկայի Ժողտնտխորհի Շինանյութերի արդյունաբերության վարչության նախագծային-կոնստրուկտորային բյուրոն նախագծել է տուֆի հանույթի արտադրական պրոցեսները կոմպլեքսային մեքենայացման ենթարկելու համար մի շարք կատարելագործված սարքավորումների և երկաթբետոնե սյունիկների արտադրման համար՝ կոմպլեքս ավտոմատացված ագրեգատի և այլ կարևոր մեքենաների կոնստրուկցիաներ։ Սակայն դրանք մինչև այժմ չեն ներդրվել արտադրության մեջ՝ էքսպերիմենտալ բազայի բացակայության պատճառով։

Դրա հետ մեկտեղ պետք է նշել, որ Հայաստանի արդյունաբերության ոչ բոլոր ճյուղերն են ապահովված գիտա-հետազոտական և նախագծային-կոնստրուկտորական ծառայություններով, որոնց բացակայությունը դանդաղեցնում է նրանց առաջընթացը։ Այժմ արդեն օրվա կարևորագույն խնդիրներից է դարձել մեքենաշինության, թեթև և սննդի արդյունաբերության գծով գիտա-հետազոտական բազաներ ստեղծելը, որոնց անհրաժեշտությունը թելադրվում է արդյունաբերության այս ճյուղերի բուռն զարգացման հեռանկարներով։

---

# ՆԱՄԱԿՆԵՐ ԵՎ ԹՂԹԱԿՑՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ՊԵՏԱԿԱՆ ԱՊԱՐԱՏԻ ԱՐՀՄԻՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԽՆԴԻՐՆԵՐԸ

Կենսագործելով պարտիայի ցուցումները և արհմիությունների XII համագումարի որոշումները՝ ռեսպուբլիկայի պետական հիմնարկների աշխատողների արհմիութենական կազմակերպությունները որոշ չափով բարելավել են իրենց գործունեությունը։ Մի շարք սկզբնական կազմակերպություններ և քաղկոմ-շրջկոմներ համեմատաբար ավելի մոտիկից են զբաղվում հիմնարկների արտադրական գործունեությամբ և ապարատի աշխատանքի բարելավմամբ։ Արհմիութենական կազմակերպությունների օգնությամբ ու մասնակցությամբ իրականացվեցին պետական ապարատի կրճատման, պարզեցման ու նրա գործունեության ճկունացմանը նպաստող կարևորագույն շատ միջոցառումներ։

Ֆինանսա-բանկային պլանային ու սոցապ օրգանների արհմիութենական կազմակերպությունները այժմ մոբիլիզացնում են ապարատի աշխատողներին՝ նախապատրաստելու և կազմակերպված իրագործելու «Գների մասշտաբի փոփոխման և շրջանառության մեջ եղած դրամները նորերով փոխարինելու մասին» կառավարության կարևորագույն որոշումը։

Ժողովրդատնտեսական պլանների հաջող կատարման մեջ իրենց բաժինն ունեն նաև սովետական հիմնարկների արհմիութենական կազմակերպությունները, որոնք օգնում են մինիստրությունների, գերատեսչությունների և կառավարական մյուս հիմնարկների կոլեկտիվներին՝ իրականացնելու կառավարման ու ղեկավարման իրենց ֆունկցիաները։

Սակայն, պետական ապարատի հստակ ու ճկուն աշխատանքի ապահովման գործում արհմիութենական կազմակերպությունների աշխատանքներում դեռևս կան լուրջ թերություններ. շատ կազմակերպություններ անբավարար են կենսագործում գործարկոմ-տեղկոմների կանոնադրությամբ իրենց տրված իրավունքները, չեն խորանում հիմնարկների գործունեության կարևոր հարցերի մեջ, անհրաժեշտ օգնություն ցույց չեն տալիս ղեկավարությանը՝ աշխատանքի կազմակերպման գործում։ Հենց այս հանգամանքն էլ, թերևս, այն պատճառներից մեկն է, որ պետական ապարատի առանձին օղակներում դեռևս նկատվում են քաշքշուկի, բյուրոկրատիզմի և սովետական ապարատին խորթ երևույթներ։

Մինիստրության, գերատեսչության, կամ այլ հիմնարկների առանձին աշխատողներ հաճախ թույլ են տալիս թափթփվածություն, անփութություն, անբարեխղճորեն են վերաբերվում տրված հանձնարարություններին

կատարմանը, որի հետևանքով էլ հաճախ ոչ ժամանակին կամ թերի են կատարվում հիմնարկի առջև դրված խնդիրները։

Այս տարի կոպիտ խախտումներ ու սխալներ հայտնաբերվեցին ռեսպուբլիկայի պետական ապահովագրության օրգանների գործունեության մեջ, որը, անկասկած, հետևանք է վարչության կենտրոնական ապարատի և շրջանային տեսչությունների անբավարար աշխատանքի. ինչպես իրավացի կերպով նշվել է Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետի և ՍՍՌՄ Ֆինանսների մինիստրության կոլեգիայի որոշումներում, վարչությունում ցածր է աշխատողների տնտեսագիտական մակարդակը, անհրաժեշտ հսկողություն չի եղել տեսուչների ու գործակալների նկատմամբ։

Այժմ արդեն որոշ միջոցներ են ձեռնարկվել եղած թերությունների վերացման ուղղությամբ։

Շինարարական բանկի Հայկական գրասենյակի ապարատի աշխատողների անբավարար հսկողության և տեղերի հետ ունեցած թույլ կապի հետևանքով առանձին կազմակերպություններում տեղի են ունեցել ֆինանսական կարգապահության խախտման դեպքեր։

Չնայած ՍՄԿՊ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի 1958 թվականի օգոստոսի 2-ի՝ Աշխատավորների դիմում-բողոքներին ու նամակներին պատշաճ ընթացք տալու վերաբերյալ հայտնի որոշմանը, մի շարք մինիստրություններում, շրջսովետների գործկոմներում ու այլ հիմնարկներում դեռևս նկատվում է ոչ զգայուն, իսկ երբեմն էլ՝ ուղղակի բյուրոկրատական վերաբերմունք դեպի այդ գործը։

Հոկտեմբերյան քաղաքի բնակիչ Բաղդասարյանը 1958 թվականի ապրիլին բողոքել է Սոցապ մինիստրությանն՝ իր թոշակի չափը շրջանում ոչ ճիշտ որոշելու դեմ։ Այդ դիմումի կապակցությամբ մինիստրության և շրջանային սոցապ բաժնի միջև 2 տարի տևող գրագրություններից հետո միայն պարզվում է, որ Բաղդասարյանի գանգատը հիմնավոր է, և հարցը լուծվում է նրա օգտին։ Դիմումների ձգձգման փաստեր կարելի է բերել աշխատավորների դեպուտատների Երևանի քաղաքային, Աղինի շրջանային Սովետների գործկոմներից և մի քանի այլ հիմնարկներից։

Հիմնարկի արհմիութենական կազմակերպությունն ունի իր աշխատանքի առանձնահատուկ կողմերը։ Սովետական հիմնարկը՝ դա կառավարման ապարատ է։ Յուրաքանչյուր գերատեսչություն ղեկավարում է ժողովրդական տնտեսության մի ամբողջ ճյուղ։ Կան, իհարկե, նաև այնպիսի հիմնարկներ, որոնց հիմնական ֆունկցիան անմիջականորեն բնակչության սպասարկումն է. օրինակ՝ խնայողական դրամարկղը, սոցապ բաժինը և այլն։ Հասկանալի է, որ մինիստրության արհմիութենական կազմակերպությունը չի կարող անմիջական պատասխանատվություն կրել մինիստրությանը ենթակա այս կամ այն ձեռնարկության աշխատանքի կազմակերպման համար. նրա հիմնական խնդիրն է՝ մոբիլիզացնել ապարատի աշխատողներին իր հիմնարկի առջև դրված խնդիրները հաջողությամբ լուծելու։

Բանվոր-ծառայողների լայն մասսաներին արտադրության կառավարման մեջ ներգրավելու և հիմնարկի գործունեության վրա ներազդելու լավագույն միջոցն արտադրական խորհրդակցություններն են։ Պետական ապարատի արտադրական խորհրդակցության խնդիրներն առավել պարզությամբ շարադրվեցին ՌՍՖՍՌ Ֆինանսների մինիստրության և ՍՍՌՄ Պետպլանի արհմիութե-



նական կազմակերպությունների աշխատանքի վերաբերյալ ՀԱՄԿԽ-ի նախագահության որոշման մեջ։ Այդ կազմակերպություններում արտադրական խորհրդակցությունները դարձել են հիմնարկի առջև դրված խնդիրների կատարման համար ծառայողներին մոբիլիզացնելու լավագույն միջոցներից մեկը։

Ռեսպուբլիկայի մի շարք գերատեսչական հիմնարկներում նույնպես որոշ չափով բարելավվել են այդ աշխատանքները. սակայն, ընդհանուր առմամբ, հիմնարկային կազմակերպություններում արտադրական խորհրդակցությունները գործում են անբավարար. դրանք դեռևս չեն գտել իրենց պատշաճ տեղը պետական շատ հիմնարկների ընդհանուր գործունեության մեջ։ Խորհրդակցությունները հրավիրվում են դեպքից դեպք և, համարյա թե, որպես կանոն, քննարկում են միայն եռամսյակների արդյունքները. քննարկվող հարցերը խնամքով չեն նախապատրաստվում, եղած առաջարկությունները լրիվ հաշվի չեն առնվում և, որ կարևորն է, հսկողություն չի սահմանվում մշակված միջոցառումների իրականացման վրա։ Այդ բոլորի հետևանքով էլ խորհրդակցությունների մեծ մասը հաճախ կրում է ձևական բնույթ ու շատ քիչ օգուտ է բերում ընդհանուր գործին։ Օրինակներ կարելի է բերել Ֆինանսների մինիստրության, Շինարարական բանկի, ռեսպուբլիկայի դատախազության, Պետպլանի և այլ հիմնարկների աշխատանքից։

Արհմիութենական կազմակերպությունների կարևոր խնդիրն է՝ հասնել այն բանին, որ սիստեմատիկաբար հրավիրվեն արտադրական խորհրդակցություններ և քննարկվեն աշխատանքային կուլտուրայի բարձրացման, կարգապահության ամրապնդման և այլ կարևոր հարցեր։ Դա կօգնի կոլեկտիվի բոլոր անդամներին՝ իմանալու գործերի վիճակը հիմնարկում և իրենց առաջարկություններով ու ակտիվ մասնակցությամբ բարելավելու աշխատանքը։ Հատկապես հիմա, երբ հիմնարկներն անցել են 7-ժամյա աշխատանքային օրվա, անհրաժեշտ է, որ յուրաքանչյուր հիմնարկում արհմիութենական կազմակերպությունների ակտիվ մասնակցությամբ կոնկրետ միջոցառումներ մշակվեն ու իրականացվեն աշխատանքային օրվա ռացիոնալ օգտագործման, գրագրությունների կրճատման, հաշվետվությունների պարզեցման, տեխնիկական ուսուցման ավելի արդյունավետ կազմակերպման համար։

Այժմ շատ կարևոր նշանակություն է ստացել կառավարչական աշխատանքի, մասնավորապես հաշվային և հաշվետվության պրոցեսների մեքենայացումը։

Վիճակագրական վարչությունում և պետբանկում մեքենա-հաշվարկային կայանների ստեղծումը, ինչպես նաև ձեռնարկված մի քանի այլ միջոցառումներ, զգալիորեն նպաստեցին հաշվային ապարատի կրճատմանն ու էժանացմանը և արտադրողականության բարձրացմանը։

Նախապատրաստական աշխատանքներ է կատարվում Մոսկվա, Լենինգրադ և Իվանովո քաղաքների օրինակով ռեսպուբլիկայի սոցապ բաժիններում հաշվային պրոցեսների մեքենայացման ուղղությամբ։ Սակայն կառավարչական աշխատանքի մեքենայացման մակարդակը դեռևս չի բավարարում կյանքի պահանջները, կան թերություններ ու բացեր։ Զգալի թերություններ կան նաև գյուտարարական ու ռացիոնալիզատորական աշխատանքներում։

Արհմիութենական կազմակերպությունների կարևորագույն խնդիրն է՝ բարձր պահանջկոտությամբ ու գործիմացությամբ խորամուխ լինել այդ հարցերի մեջ, քննարկել դրանք արտադրական-խորհրդակցություններում, կազ-

մակերպության ժողովներում և կոնկրետ միջոցառումներով օգնել աշխա-
տատար պրոցեսների մեքենայացմանը, գյուտարարական ու ռացիոնալիզա-
տորական աշխատանքների լայն ծավալմանը։

Հիմնարկների մեծ մասում գոյություն չունի աշխատանքի արտադրողա-
կանության օրական նորմա, որով հնարավոր լինի չափել մեր ծառայողների
անհատական աշխատանքը։

Դրա համար էլ սոցիալիստական մրցության այն ձևերը, որոնք գոյություն
ունեն արտադրական ձեռնարկություններում, սխալ կլինի մեխանիկորեն տե-
ղափոխել հիմնարկություն։ Արհմիութենական կազմակերպությունները պետք
է ամեն կերպ խրախուսեն ձեռներեց ծառայողներին, որոնք հանձնարարված
գործի նկատմամբ ունեն ազնիվ ու բարեխիղճ վերաբերմունք. պետք է կազ-
մակերպել նրանց մեծարման երեկոներ, տարածել նրանց աշխատանքի փոր-
ձը, քննադատել ու խարազանել ծույլերին, իրենց պարտավորությունների
նկատմամբ անտարբեր ու անհոգ վերաբերմունք ունեցողներին։

Աշխատավորների դեպուտատների Սովետների գործունեության բարելավ-
ման համար մեծ նշանակություն ունի գյուղական ու ավանային Սովետների
ռեսպուբլիկական մրցությունը։ Անցյալ տարի մի շարք գյուղական ու ավանա-
յին Սովետներ որոշակի հաջողությունների հասան մրցության մեջ։ Սակայն
դրա հետ միաժամանակ որոշ շրջաններում (Ապարան, Ալավերդի և այլն) գյու-
ղական Սովետների մի մասը լրիվ չկատարեց վերցրած պարտավորություն-
ները։ Այդ բացատրվում է նրանով, որ ինչպես նշված, այնպես էլ մի քանի
այլ շրջսովետների գործկոմներն ու արհմիութենական շրջկոմներն անհրա-
ժեշտ չափով չզբաղվեցին մրցությամբ ստանձնած պարտավորությունների
կատարման կազմակերպմամբ։

Հայաստանի կոմպարտիայի XXI համագումարը և ռեսպուբլիկայի Գերա-
գույն Սովետի սեսիան լուրջ խնդիրներ դրին Սովետների առաջ։ Արհմիութե-
նական կազմակերպությունները պարտավոր են օգնել աշխատավորների դե-
պուտատների շրջանային Սովետների գործկոմներին՝ բարելավելու գյուղական
ու ավանային Սովետների գործունեությունը։ Անհրաժեշտ է կազմակերպել
սոցմրցությամբ ստանձնած պարտավորությունների կատարման փոխադարձ
ստուգումներ, ընդհանրացնել ու տարածել աշխատանքի լավագույն փորձը և
օգնել ետ մնացող Սովետներին։

Արհմիութենական կազմակերպությունները մասսայական աշխատանքի
բազմազան ձևերի միջոցով պետք է բարձրացնեն իրենց անդամների ստեղծա-
գործական ակտիվությունը։ Չպետք է մոռանալ, որ ժողովրդի կենսամակար-
դակի բարձրացումը կախված է արտադրական հաջողություններից, յուրաքան-
չյուր բանվորի աշխատանքի արտադրողականության բարձրացումից, պետա-
կան ապարատի յուրաքանչյուր աշխատողի ժրաջան ու նվիրված գործունեու-
թյունից։

Հոգատար վերաբերմունքը աշխատողների կարիքների ու պահանջների
նկատմամբ պետք է լինի բոլոր արհմիութենական կազմակերպությունների և
գործիչների ուշադրության կենտրոնում։ Նրանք կոչված են հսկելու ու հե-
տևելու աշխատանքային պայմանների բարելավմանը, աշխատանքային
օրենսդրության անշեղ կենսագործմանը։ Մինչդեռ փաստերը ցույց են տալիս,
որ առանձին տեղերում արհմիութենական կոմիտեները հաճախ լռությամբ են
անցնում խախտումների կողքով, ժամանակին չեն միջամտում ու կանխում



այդպիսի երևույթները։ Դրանով կարելի է բացատրել, օրինակ, այն հանգա-
մանքը, որ պլանային, ֆինանսական ու վիճակագրական որոշ օրգաններում
դեռևս չեն լիկվիդացված զգալի չափերի հասնող արտաժամյա աշխատանքնե-
րը, որոնք մեծ մասամբ տեղի են ունենում առանց արհմիութենական կազմա-
կերպությունների գիտության ու համաձայնության։ Որոշ տեղերում բնակա-
րանների բաշխման ժամանակ չի ապահովվում տեղական կոմիտեների պատ-
շաճ մասնակցությունը։ Արհմիութենական կազմակերպությունները պետք է
բարձրացնեն իրենց պահանջկոտությունը, խստորեն հետևեն աշխատանքա-
յին օրենսդրության կիրառմանը և գործարկոմ-տեղկոմների պարտականու-
թյունների անթերի կատարմանը։

Հիմնարկություններում կատարվող դաստիարակչական ու կուլտ-մասսա-
յական ամբողջ աշխատանքը պետք է ի սպաս դրվի ապարատի գործունեու-
թյան ճկունացմանը և օգնի սովետական ծառայողներին դաստիարակելու ժո-
ղովրդի առաջ իրենց պարտականությունների խոր գիտակցման, հանձնարար-
ված գործի նկատմամբ բարձր պատասխանատվության ոգով։ Պետական ա-
պարատի յուրաքանչյուր աշխատող պետք է խորապես ըմբռնի, որ ինքը ժո-
ղովրդի ծառան է, նրա կատարած աշխատանքը, որքան էլ փոքր լինի, ունի
պետական-քաղաքական նշանակություն։ Գոյություն ունեն կուլտ-մասսայա-
կան ու դաստիարակչական աշխատանքի շատ ձևեր ու մեթոդներ, որոնց մի-
ջոցով էլ կարելի է օգնել ծառայողների քաղաքական գիտելիքների հարստաց-
մանն ու կուլտուրական մակարդակի բարձրացմանը։ Այդ տեսակետից կա-
րևոր նշանակություն ունի նաև աշխատողների հանգստի խելացի կազմակեր-
ինքնագործունեության զարգացումը։
պումն ու գեղարվեստական

Պետական ապարատի գործունեության բարելավման գործում արհմիու-
թենական կազմակերպությունների մասնակցության արդյունավետությունը
կախված է ներմիութենական-կազմակերպական աշխատանքներից։ Մինչդեռ
այդ բնագավառում գոյություն ունեն զգալի թերություններ։ Մի շարք կազմա-
կերպություններում (արհմիության Արթիկի շրջկոմ, ՀՕՊ-ի ռեսպ. շտաբ,
Սպանդարյանի շրջ. դատական օրգաններ) ճիշտ չեն պլանավորվում աշ-
խատանքները, տեղկոմների նիստերը և, հատկապես, ընդհանուր ժողովները
հրավիրվում են մեծ ուշացումներով։ Շատ տեղերում տեղկոմներին կից հանձ-
նաժողովները գործում են խիստ անբավարար։

Արհմիության սկզբնական կազմակերպությունները, ինչպես նաև շրջկոմ-
ները պետք է պլանավորեն իրենց աշխատանքը, սիստեմատիկաբար հրավիր-
ված ընդհանուր ժողովներում, տեղկոմների նիստերում քննարկեն ապարատի
աշխատանքի ճկունացման, պրոֆխմբակների և պրոֆբյուրոների գործունեու-
թյան բարելավման հարցերը։

Արհմիությունների ուժի աղբյուրը եղել ու մնում է պարտիական ղեկավա-
րությունը։ Սովետական հիմնարկների արհմիութենական կազմակերպություն-
ների առջև դրված խնդիրների հաջող լուծումը և նրանց աշխատանքի հետագա
բարելավումը պայմանավորված է ամենից առաջ պարտիական կազմակեր-
պությունների ամենօրյա օգնությամբ ու ղեկավարությամբ։ Նրանք պետք է
հոգ տանեն և օգնեն, որպեսզի ամեն կերպ բարձրացվի յուրաքանչյուր սկզբ-
նական արհմիութենական կազմակերպության մարտունակությունն ու աշխա-
տանքի մակարդակը, և ապահովվի նրանց ակտիվ մասնակցությունը հիմնար-
կի արտադրական-ստեղծագործական ամբողջ գործունեությանը։

Մեր հաղթական առաջընթացն ապահովող խնդիրների լուծման գործում հսկայական դեր է խաղում սովետական պետական ապարատը։ Այժմ ավելի, քան երբեք, կարևոր է, որպեսզի նրա յուրաքանչյուր օղակում իշխի բարձր կուլտուրան և կարգապահությունը, ժամանակին ու ճշտորեն կատարվեն կառավարական ու պարտիական դիրեկտիվները։ Հենց դրան էլ պետք է ուղղված լինի ռեսպուբլիկայի պետհիմնարկների աշխատողների արհմիության բոլոր կազմակերպությունների և ռեսպուբլիկական կոմիտեի գործունեությունը։

Հ. ՍԱԼԻԽԱՆՅԱՆ

## ՍՈՎԵՏՆԵՐԻ [illegible]

Ներկա էտապում, ՍՄԿՊ XXI համագումարում նշեց ընկեր Ն. Ս. Խրուշչովը, էլ ավելի է աճում աշխատավորների դեպուտատների Սովետների, որպես պետական իշխանության օրգանների դերը։ Նրանք պետք է իրենց ամբողջ աշխատանքը կառուցեն հենվելով մասսաների վրա, սոցիալիստական դեմոկրատիայի ավելի լայն ծավալման վրա, ավելի ևս ամրապնդելով բանվոր դասակարգի ու գյուղացիության դաշինքը և մեր բազմազգ Հայրենիքի ժողովուրդների բարեկամությունը։

Վերջին տարիներս մեր Սովետների գործունեությունն զգալիորեն աշխուժացել է, ամրապնդվել են նրանց կապերը մասսաների հետ։ Ընդարձակվել է այն հարցերի շրջանը, որ քննարկում և լուծում են Գերագույն ու տեղական Սովետները։ Ներկայումս Սովետների գործունեության ոլորտում են երկրի տնտեսական ու կուլտուրական կյանքի բոլոր կարևորագույն կողմերը։

Տեղական Սովետների մշտական հանձնաժողովները խոշոր աշխատանք են կատարում նախագծեր պատրաստելու և որոշումների կենսագործման վերահսկողություն իրականացնելու ուղղությամբ։ Նրանք հետազոտում են Սովետին ենթակա ձեռնարկությունների ու հիմնարկությունների աշխատանքը, կոնկրետ առաջարկություններ են անում նրանց գործունեության բարելավման համար, ստուգում են ընտրողների պատվիրանների կատարումը։

Այս պատասխանատու ֆունկցիաների հաջող իրականացման համար մշտական հանձնաժողովների կազմի մեջ ընտրված են այնպիսի դեպուտատներ, որոնք իրենց մասնագիտությամբ, փորձով և աշխատանքի բնույթով ի վիճակի են բարձր որակով մշակելու և նախապատրաստելու ժողովրդական տնտեսության տվյալ ճյուղի վերաբերյալ հարցերը։ Մշտական հանձնաժողովների աշխատանքի մեջ է ներգրավվում լայն ակտիվը, առաջին հերթին՝ արտադրության նորարարներն ու առաջավորները։

Տեղական Սովետների սեսիաներում ու Գործկոմների նիստերում քննարկվում են կոլտնտեսային արտադրության, գյուղի բարեկարգման, ժողովրդական առողջապահության ու լուսավորության վիճակը, բնակչության կուլտուր-կենցաղային պայմանների բարելավման, սոցիալիստական մրցությամբ ստանձնած պարտավորությունների կատարման և այլ կարևոր հարցեր։ Որպես օրինակ, կարելի է նշել Արտաշատի շրջանի Այգեզարդ գյուղի Սովետի Գործկոմի դրական աշխատանքը (նախագահ ընկ. Տ. Հակոբյան)։ Գյուղում կատարվող բոլոր աշխատանքները գտնվում են գյուղսովետի ուշադրության կենտրոնում։ Գյուղսովետի բոլոր դեպուտատներն արձագանքեցին վեդիցինե-



րի կոչին՝ «Թող մեր գյուղերն ու ավանները լինեն բարեկարգ, մաքուր ու գեղեցիկ»։ Բարեկարգման մշտական հանձնաժողովը (նախագահ՝ դեպուտատ Զ. Զաքարյան) գյուղի բարեկարգման ուղղությամբ լուրջ աշխատանք ծավալեց, որի շնորհիվ Այգեզարդի դեմքն արմատապես փոխվեց։ Արտաշատի շրջսովետի Գործկոմը (նախագահ Գ. Խաչանյան) պաշտպանեց այգեձորցիների լավ փորձը գյուղի բարեկարգման ուղղությամբ, այն ընդհանրացրեց և դարձրեց մյուս գյուղերի սեփականություն։ Արդեն այգեզարդցիների օրինակով են աշխատում Այգեստանի, Դվինի և այլ գյուղերի Սովետները։

Բեղմնավոր աշխատանք են կատարում նաև գյուղսովետի մյուս մշտական հանձնաժողովները։ Այգեզարդի Սովետի գյուղատնտեսական մշտական հանձնաժողովը, որի նախագահն է գյուղատնտես Նշանյանը, իր նախաձեռնությամբ հաճախ հարցեր է նախապատրաստում և քննարկության դնում գյուղսովետի գործկոմի սեսիայում։ Դեռ անցյալ տարվա գարնանը գյուղատնտեսական մշտական հանձնաժողովն իր հսկողության տակ առավ կոլտնտեսության այգիների մշակության ընթացքը։ Նրա կատարած աշխատանքն ապարդյուն չանցավ։ Այգեզարդի կոլտնտեսությունը 1959 թվականին յուրաքանչյուր հեկտարից միջին հաշվով 160 ցենտներ խաղող ստացավ։

Իրենց աշխատանքներում մեծ նախաձեռնություն ու կոնկրետություն են ցուցաբերում նաև Էջմիածնի, Հոկտեմբերյանի, Կալինինոյի և ռեսպուբլիկայի այլ շրջանների գյուղական ու ավանային Սովետների մշտական հանձնաժողովները։ Էջմիածնի շրջանի Նորակերտի ավանային Սովետի բարեկարգման ու ճանապարհաշինության հանձնաժողովը (նախագահ՝ դեպուտատ Դարմոյան) ուսումնասիրելով ավանի բարեկարգման աշխատանքի վիճակը, հարցը պատրաստել և մտցրել է սեսիա։ Ավանային Սովետի սեսիան հավանություն է տվել հանձնաժողովի մշակած միջոցառումներին։ Դրանից հետո հանձնաժողովը խիստ վերահսկողություն է սահմանել սեսիայի որոշման կատարման վրա և կազմակերպել է դրա իրականացումը։ Դրա հետևանքով վերանորոգվել են Բաղրամյան և Նորակերտ ավանների էլեկտրալուսավորման ցանցերը, երեք կամուրջ, մոտ 10 կիլոմետր ոռոգիչ ջրանցք, բանվորների 124 բնակարան, բարեկարգվել են մի շարք փողոցներ և այլն։

Գյուղի բարեկարգման ուղղությամբ ակտիվ աշխատանք է կատարում նաև Էջմիածնի շրջանի Մասիս գյուղի Սովետը։ Անցյալ տարի ինչպես ընտրողներին, այնպես էլ գյուղսովետի դեպուտատներին շատ էր հուզում գյուղի բարեկարգման հարցը և նրանք գյուղսովետում առաջարկություն արին շաբաթօրյակներ կազմակերպելու միջոցով բարեկարգել փողոցներն ու սալել ճանապարհները։ Սովետի գործկոմը (նախագահ՝ Բ. Խանգելդյան) ընդառաջելով դեպուտատների առաջարկություններին և ընտրողների պատվիրաններին՝ շաբաթօրյակներ կազմակերպեց, որոնց ժամանակ 4 կամուրջ կառուցվեց Մասիսում, մեկը Բուրաստանում և երկուսը Դիմիտրովոյում. դրվեցին 6 սահանափակ, սալահատակվեց 2 փողոց՝ 1200 գծային մետր երկարությամբ։ Բարելավվեց փողոցների լուսավորությունը, տնկվեց ու աճեցվեց 4000 պտղատու և դեկորատիվ ծառ։

Սովորողների, ձեռնարկությունների ու հիմնարկությունների աշխատողների ուժերը բարեկարգման աշխատանքներում ներգրավելու ուղղությամբ լավ նախաձեռնություն են ցուցաբերում Երևան քաղաքի Լենինյան և Ստալինյան շրջսովետների գործկոմները։ Անցյալ տարի այդ շրջանների բնակչությունը

շաբաթօրյակներով ակտիվ մասնակցեց Նոր Արեշի, Սարի-Թաղի բակերի ու փողոցների, Օրջոնիկիձեի պողոտայի, Սպանդարյանի անվան հրապարակի բարեկարգմանն ու կանաչապատմանը։ Այդ աշխատանքներին ակտիվ մասնակցություն ունեցան Կիրովի անվան գործարանի, Լենինի անվան էլեկտրամեքենաշինական, ավտոդողերի գործարանների, Հացամթերքների վարչության Երևանի բազայի կոլեկտիվները, Թեթև արդյունաբերության և Գյուղատնտեսական տեխնիկումների ուսանողները։ Այս ուղղությամբ դրական աշխատանք է կատարվում նաև Կիրովական, Գորիս քաղաքներում և այլուր։

Սակայն շատ տեղական Սովետների գործկոմներ բնակչությանը թույլ են ներգրավում բնակավայրերի բարեկարգման ու կանաչապատման մեջ, նախաձեռնություն չեն ցուցաբերում իրենց գյուղերի, ավանների, շրջկենտրոնների և քաղաքների մաքրության ու գեղեցկության համար պայքարելու գործում։ Գործկոմների որոշ աշխատողներ, ակտիվը և տեղական Սովետների առանձին դեպուտատներ քիչ հոգատարություն ու ակտիվություն են ցուցաբերում տեղական հնարավորությունների օգտագործման ասպարեզում և ամբողջովին հույս են դնում պետական կապիտալ ներդրումների վրա։ Մինչդեռ ճանապարհներին ձև տալու, մայթեր կառուցելու, դրանք խճապատելու, ջրատար առուներ փորելու, փողոցներում ու բակերում կարգ ստեղծելու, աղբյուրները կարգին վիճակում պահելու համար պետական միջոցներ շատ քիչ է պահանջվում։ Այդ բոլոր աշխատանքները կարող է կատարել ինքը՝ բնակչությունը։ Մեր ռեսպուբլիկան գտնվում է հարավում, այնինչ մեր բնակավայրերը աղքատ են կանաչ բուսականությամբ, բնակչության լողանալու համար ջրամբարներ քիչ կան։ Քիչ կանաչ կա Կամո, Սևան շրջկենտրոններում և այդ շրջանների գյուղերում։ Կամոյի շրջանի Սարուխան գյուղում ավելի քան 5 հազար մարդ է ապրում, բայց այդ գյուղում ոչ բաղնիք կա, ոչ վարսավիրանոց։ Յոթ կիլոմետր երկարությամբ փողոցների եզրերին ծառեր ու թփեր չկան։ Վատ եղանակներին փողոցները ծածկվում են ցեխով։ Այս ամենը ցույց է տալիս գյուղսովետի գործկոմի վատ աշխատանքը։

Կանաչը քիչ է և լողանալու ջրավազաններ համարյա չկան նաև Երևանում։ Հայտնի է, որ ծառերը, կանաչը և ջրավազանները զարդարում են գյուղերն ու քաղաքները, բարելավում են կլիման, նպաստավոր ազդեցություն են ունենում մարդկանց առողջության վրա։

Սովետական պետության մեջ դեպուտատների և ընտրողների միջև գործնական սերտ հարաբերություններ են պահպանվում դեպուտատական լիազորությունների ամբողջ ժամանակամիջոցում։ Դեպուտատի ամենօրյա ամբողջ գործունեությունը շարունակ ժողովրդական մասսաների աչքի առաջ է և նրանց վերահսկողության տակ։ Դեպուտատները պարբերաբար հանդիպում են իրենց ընտրողներին և հաշիվ տալիս նրանց։ Իրենց աշխատանքի ընթացքում նրանք գլխավորապես աչքի առաջ են ունենում ընտրողների առաջարկություններն ու պատվիրանները և ակտիվորեն ու համառորեն պայքարում են դրանց իրականացման համար։

Այս տեսակետից բնորոշ է ՍՍՌՄ Գերագույն Սովետի դեպուտատ, Լենինականի դեպոյի մեքենավար ընկ. Ս. Խ. Մատնիշյանի գործունեությունը։ Մի տարվա ընթացքում նա իր ընտրողների հետ 36 հանդիպում է ունեցել։ Այդ նույն ժամանակամիջոցում նա ընտրողներից, արդյունաբերական ձեռնարկու-



թյուններից ու կոլտնտեսություններից ավելի քան հազար նամակ ու դիմում է ստացել։

Սովետների դրական աշխատանքի մասին շատ բան կարելի է ասել, բայց ճիշտ չի լինի, եթե չխոսենք նաև նրանց թերությունների մասին։

Որոշ տեղական Սովետներ խախտում են սեսիաներ գումարելու կոնստիտուցիայով նախատեսված ժամկետները։ Կոլտնտեսությունների կազմակերպական-տնտեսական ամրապնդման բազմաթիվ կարևոր հարցեր չեն քննարկվում գործկոմների նիստերում ու Սովետների սեսիաներում։ Այսպես, օրինակ, անցյալ ամբողջ տարվա ընթացքում Ազիզբեկովի շրջանի Սերս, Գլաձոր, Եղեգիս և այլ գյուղերի ու ավանների Սովետներում այդպիսի հարցեր չեն քննարկվել, թեև այդ գյուղերի կոլտնտեսությունների գործունեության մեջ լուրջ թերություններ կան։

Կամոյի շրջսովետի գործկոմը, ինչպես և նույն շրջանի շատ գյուղերի Սովետների գործկոմները քիչ ուշադրություն են դարձնում գյուղերի բարեկարգման ու կանաչապատման հարցերին, հիվանդացումների պրոֆիլակտիկային, կուլտուր-կենցաղային օբյեկտների շինարարությանը, թեև շատ գյուղերում կուլտուր-լուսավորական հիմնարկությունները վատ են աշխատում, բաղնիքներ չկան, դանդաղ են վերացվում գյուղական բնակչության բժշկական սպասարկման գործում եղած թերությունները։

Տեղական Սովետների աշխատանքի վրա բացասական ազդեցություն է ունենում առանձին դեպուտատների պասսիվությունը։ Տեղական Սովետների շատ դեպուտատներ ակտիվ մասնակցություն չեն ունենում Սովետների աշխատանքին, հաշվետու չեն լինում նրանց առաջ։

Կոմունիստական հասարակության ծավալուն շինարարության ժամանակաշրջանում Սովետների առջև պատասխանատու խնդիրներ են կանգնած. Նրանք պետք է բոլոր աշխատավորներին մոբիլիզացնեն՝ կատարելու և գերակատարելու յոթնամյա հոյակապ պլանի առաջադրանքները։ Սովետները պարտավոր են շարունակ կատարելագործել իրենց աշխատանքը, ամրապնդել կապերը աշխատավորների լայն մասսաների հետ, հոգատար վերաբերվել նրանց պահանջների ու կարիքների նկատմամբ, արմատախիլ անել բյուրոկրատիզմի երևույթները և բարձրացնել աշխատանքային կուլտուրան։

Մ. ՇՉԵՏԻՆԻՆ

## ԼՐԻՎ ՕԳՏԱԳՈՐԾԵԼ ԻՆՏԵԼԻԳԵՆՑԻԱՅԻ ՈՒԺԵՐԸ

Երևանի Սպանդարյան շրջանում գտնվում են մեր ռեսպուբլիկայի բարձրագույն ուսումնական հաստատությունների, գիտա-հետազոտական ինստիտուտների, տեխնիկումների, արվեստի, գրականության և կուլտուրայի հաստատությունների ճնշող մասը, բազմաթիվ դպրոցներ և այլն, որոնցում աշխատում է ինտելիգենցիայի մի մեծ բանակ։ Ահա թե ինչու ինտելիգենցիայի հետ տարվող աշխատանքը դարձել է պարտիայի շրջանային կոմիտեի կարևորագույն խնդիրներից մեկը։ Ինտելիգենցիայի շրջանում կատարվող քաղաքական-գաղափարական աշխատանքը պլանավորելիս շրջանային կոմիտեն և սկզբնական կազմակերպությունները մշտապես իրենց ուշադրության կենտրոնում են պահում ՍՄԿԿ Կենտկոմի հետևյալ պահանջը.

«Ինտելիգենցիայի շրջանում պրոպագանդիստական աշխատանքը նպատակամղել հասարակության բարօրության համար աշխատելու բարոյական խթանների ստեղծմանը, անկյունաքար դարձնելով մտավոր աշխատանքի մարդկանց գաղափարական դաստիարակությունը, քաղաքական լուսավորությունը, նրանց մասսաների մեջ կատարվող ակտիվ աշխատանքի ներգրավելը։ Պետք է ի նկատի ունենալ, որ հենց բարձր գաղափարայնությունը, կոմունիստական շինարարության պրակտիկայի և ժողովրդի կյանքի հետ անխզելի կապն է ինտելիգենցիային թույլ տալիս առավել լրիվ դրսևորելու իր դերը սովետական հասարակարգում»։

Այժմ ստորճանաբար հաղթահարվում է այն լուրջ թերությունը, որ նյութական բարիքներ արտադրող մասսաներից կտրված լինելու հետևանքով մեր ինտելիգենցիայի մի մասը պասսիվ մասնակցություն էր ցուցաբերում նրանց հետ տարվող քաղաքական աշխատանքում։ Ինտելիգենցիայի մասնակցությունը պարտիական պրոպագանդային, մեկ-երկու դասախոսություն կարդալուց այն կողմ չէր անցնում։ Էական թերություն էր նաև այն, որ բանվորները, կոլտնտեսականները, կառուցողները դասախոսին տեսնում էին միայն ամբիոնի մոտ, դասախոսություն կարդալիս։ Դասախոսները, գիտության և կուլտուրայի գործիչները հազվադեպ էին լինում ձեռնարկություններում ու կոլտնտեսություններում։

ՀԿՊ Սպանդարյանի շրջանային կոմիտեն ինտելիգենցիայի հետ տարվող աշխատանքի վերակառուցումը սկսեց նրանից, որ շերտավորված խորհրդակցություններ հրավիրեց՝ կոնկրետ միջոցառումներ մշակելու Կենտկոմի որոշումը կատարելու համար։ Այսպես՝ շրջկոմ հրավիրվեցին բուհերի դիրեկտորներ, պարտկազմակերպությունների քարտուղարներ, հասարակագիտական ամբիոնների դասախոսներ, դպրոցների ղեկավարներ, բժշկական բնագավառի աշխատողներ և ուրիշներ։ Շրջկոմը որոշեց հասարակագիտական ամբիոնների դասախոսներին արտադրությանը ծանոթացնելու նպատակով հաճախակի կազմակերպել այցելություններ արդյունաբերական ձեռնարկություններն ու կոլտնտեսությունները։ Շրջանի բուհերի դասախոսները մի ամբողջ օր անցկացրին Շահումյանի շրջանի Շահումյանի անվան կոլտնտեսության մեքենայացված անասնապահական ֆերմայում։ Նրանք հանգամանորեն ծանոթացան ֆերմայի աշխատանքներին, զրուցեցին կթվորների հետ, այցելեցին խոզապահական ֆերման, ծանոթացան Յարոսլավ Չիժի մեթոդով աշխատող խոզապահուհիների հետ և կոնկրետ պատկերացում կազմեցին առաջավոր խոզապահների փորձի մասին։ Վերջում կոլտնտեսության վարչության նախագահ Նազանի Գալստյանը դասախոսներին պատմեց իրենց կոլտնտեսության նվաճումների և ապագա պլանների մասին։ Դասախոսները շատ գոհ մնացին այցելությունից։

Հաջորդ անգամ նրանք այցելեցին Էջմիածնի շրջանի Աղավնատուն գյուղի կոլտնտեսության թռչնաբուծական ֆերման, որը ռեսպուբլիկայի առաջավոր ֆերմաներից մեկն է։

Շրջկոմը կիրառում է աշխատանքի մի նոր ձև—հասարակագիտական ամբիոնների ամբողջ կազմի միջոցով տվյալ ձեռնարկությունում քաղաքական-մասսայական աշխատանքի կազմակերպումը։ Այսպես. Պետական համալսարանի ՍՄԿՊ պատմության ամբիոնը ագիտատորի օր անցկացրեց Կլարա Ցետկինի անվան կարի ֆաբրիկայում։ Այդ օրն ամբիոնի անդամները մանրամասն ծանոթացան ֆաբրիկայի պրոֆիլին, տեխնոլոգիական պրոցեսներին։ զրուցեցին պարտիական ակտիվիստների հետ, ուսումնասիրեցին Վալենտինա Գագանովայի օրինակով աշխատող բանվորների փորձը։ Նրանք սեմինար պարապմունք անցկացրին ագիտատորների համար՝ «ՍՄԿՊ Կենտկոմի հունվարի 9-ի որոշումը և ֆաբրիկայի ագիտկոլեկտիվի խնդիրները» թեմայով. հանդիպում ունեցան կոմունիստական աշխատանքի բրիգադայի բանվոր-բանվորուհիների հետ, պատասխանեցին նրանց հարցերին և տարբեր ցեխերում զրույցներ անցկացրին «Ն. Ս. Խրուշչովի զեկուցումը ՍՍՌՄ Գերագույն Սովետի հինգերորդ գումարման հինգերորդ սեսիայում» թեմայով։

Շրջկոմի մշակած պլանով «ագիտատորի օր» է անցկացվել նաև շրջանի մի շարք այլ արդյունաբերական ձեռնարկություններում։

Գեղարվեստա-թատերական ինստիտուտի մարքսիզմ-լենինիզմի ամբիոնը և պարտկազմակերպությունը պոլիգրաֆ վարչության № 6 տպարանում գաղափարական-դաստիարակչական աշխատանքի իրենց մշակած մեկամսյա պլանի համաձայն մի շարք դասախոսություններ, զեկուցումներ, զրույցներ։ հարց ու պատասխանի երեկոներ, ինչպես նաև քաղլուսացանցին օգնող միջոցառումներ են անցկացրել. նրանք հոգ են տանում նաև տպարանի բանվորներին ինստիտուտի կյանքին հաղորդակից դարձնելու մասին։

Շրջկոմը մեծ օգնություն է կազմակերպել շրջանի խոշոր ձեռնարկություններից մեկին՝ կարի № 1 ֆաբրիկային, որպեսզի այն առաջիկայում կոմունիստական աշխատանքի ձեռնարկություն դառնա։ Այս գործին շատ են օգնում բուհերը։ Կոմիտասի անվան Պետական կոնսերվատորիան ֆաբրիկայում կազմակերպել է երաժշտական դպրոց, որտեղ սովորում են 60 բանվորուհիներ, իսկ բժշկական ինստիտուտի պարտկազմակերպությունը՝ առողջապահության համալսարան։ Բացի այդ, ֆաբրիկայի բուժկայանում յուրաքանչյուր շաբաթ հերթապահում է ինստիտուտի լավագույն մասնագետներից մեկը. նրանք պրոֆիլակտիկ միջոցներ են ձեռնարկում նկատվող հիվանդությունները կանխելու համար։

Պարտիայի Կենտկոմի որոշումից հետո պարտկազմակերպությունները լայնորեն կազմակերպում են տեսական կոնֆերանսներ ամենաբազմազան թեմաներով. այս գործում ևս մեծ ակտիվություն են հանդես բերում գիտական աշխատողները։ Շրջկոմը շրջանի դպրոցների ՍՄԿՊ պատմությունն ուսումնասիրող տեսական սեմինարների ունկնդիրների համար անցկացրեց փնջային կոնֆերանս՝ «Պարտիան Հայրենական Մեծ պատերազմի շրջանում» թեմայով, որի նախապատրաստմանն ու անցկացմանը մասնակցեցին շատ դպրոցների ուսուցիչներ։ Կոնֆերանսն ընդհանուր հավանության արժանացավ։

Շրջկոմը և պարտկազմակերպությունները միջոցառումներ են մշակել ինտելիգենցիային շրջանի կուլտուր-լուսավորական հիմնարկների աշխատանքի բարելավմանը մասնակից դարձնելու համար։ Մ. Աբեղյանի անվան Գրականության ինստիտուտի պարտկազմակերպությունը վերցրեց Կիլիկիայի կուլտուրայի տան շեֆությունը. նա մշակել է կուլտուրայի տանն անցկացվելիք քաղաքական և կուլտուր-մասսայական միջոցառումների եռամսյա պլան, որը հաջողությամբ կենսագործվում է։

Շրջկոմը առանձնահատուկ նշանակություն է տալիս պրոպագանդիստական կադրերի գաղափարական և գիտական մակարդակի բարձրացմանը։ Արդեն երկրորդ տարին է, ինչ շրջկոմին կից ստեղծվել և գործում է պրոպա-

գանդիստների եռամյա դպրոց, որը կոչված է բազմակողմանի գիտելիքներով զինելու շրջանի պրոպագանդիստական կադրերին, ինչպես և օգնելու ունկնդիրներին՝ մոտիկից ծանոթանալու արտադրությանը, նրա կազմակերպման պրոցեսներին, կոնկրետ էկոնոմիկայի հարցերին։ Բացի պրոպագանդիստների գիտելիքների խորացմանը և վարպետության բարձրացմանը օգնելուց, դպրոցը զգալի թվով գիտական աշխատողների, ինչպես նաև անմիջականորեն արտադրության պրոցեսում զբաղված մասնագետների ներգրավում է պրոպագանդիստական աշխատանքում։

Սակայն այս ամենը չի նշանակում, թե գործերի վիճակը շրջանում բավարար է։ Ամեն տարի մեր ինտելիգենցիայի բանակը լրացվում է երիտասարդ գիտական աշխատողներով, տարբեր բնագավառների մասնագետներով։ Նրանք կարիք ունեն կատարելագործման, բայց միշտ չէ, որ նրանց հետ անհրաժեշտ աշխատանք է տարվում։ Բուհերի ասպիրանտների, ախտենտների, լաբորանտների, կրտսեր գիտաշխատողների մի զգալի մասը հեռու է կանգնած պրոպագանդիստական աշխատանքից։ Նույնը կարելի է ասել նաև ստեղծագործական հիմնարկների, արվեստի օբյեկտներում զբաղված աշխատողների մասին։

Պարտկազմակերպությունների անբավարար աշխատանքի արդյունք է այն, որ բուհերի ամբիոնները, հատկապես տեխնիկական ամբիոնները, իրենց հնարավորություններից շատ պակաս չափով են մասնակցում արդյունաբերության, գյուղատնտեսության տեխնիկական պրոգրեսին, քիչ են օգնում արտադրության մասնագետներին՝ խորացնելու իրենց գիտելիքները։ Թերևս ոչ մի ամբիոնի վարիչ կամ գիտա-հետազոտական ինստիտուտի աշխատող գործարանում տեխմինիմումի կամ կոլտնտեսությունում ագրոմինիմումի հարցերն ուսումնասիրող որևէ խմբակ չի ղեկավարում։

Մեր ինտելիգենցիան մեծ գործ կարող է կատարել բնակչության շրջանում ագիտացիոն-մասսայական աշխատանքը վճռականորեն բարելավելու համար։ Պարտկազմակերպությունները դեռևս անբավարար են զբաղվում ուսուցիչների, բժիշկների, կոմպոզիտորների, գիտա-հետազոտական ինստիտուտների աշխատողների և ինժեներա-տեխնիկական անձնակազմի գաղափարական դաստիարակության ու նրանց ակտիվ հասարակական-քաղաքական աշխատանքի ներգրավման հարցով։ Անցած ուսումնական տարում Հայֆիլհարմոնիայի ստեղծագործական կոլեկտիվի բոլոր անպարտիական անդամները դուրս էին մնացել քաղլուսացանցից։

Կարծում ենք, որ այս և մյուս թերությունների վերացմանը մեծապես կօգնի Երևանի Գիտնականի տան կազմակերպումը, որի անհրաժեշտությունը վաղուց արդեն զգացվում է և որը կզբաղվի ինտելիգենցիայի շրջանում քաղաքական-գաղափարական ու կուլտուր-մասսայական աշխատանքի կոորդինացմամբ։

ՍՄԿՊ Կենտկոմի հունվարի 9-ի պատմական որոշումը մինչև վերջ կենսագործելու համար պարտկազմակերպությունները պետք է բարելավեն աշխատանքը ինտելիգենցիայի հետ, նրան ավելի լայնորեն ներգրավեն հասարակական-քաղաքական կյանքում։

Ս. ԱՎԹԱՆԴԻԼՅԱՆ
Վ. ՎԱՐԴԱՆՅԱՆ

---



# ՊԱՐՏԻԱՅԻ ԸՆԴՀԱՏԱԿՅԱ ՇՐՋԿՈՄԸ

Վերջին ժամանակներս ՍՄԿՊ Կենտկոմին առընթեր Մարքսիզմ-Լենինիզմի ինստիտուտի հայկական ֆիլիալի պարտիական արխիվում հայտնաբերվեցին Ստարո-Միխայլովկայի (Կրասնոսելսկի) պարտիական շրջանային կոմիտեի 1920 թվականի մայիս-հոկտեմբեր ամիսների նիստերի արձանագրությունները [1]։ Այդ արձանագրությունները ո՛չ միայն հաստատում են այն փաստը, որ 1920 թվականի մայիսյան ապստամբության պարտությունից հետո շրջանում շարունակել են գործել բոլշևիկյան ընդհատակյա կազմակերպություններ և գոյություն է ունեցել պարտշրջկոմ, այլև հավաստի աղբյուր են հանդիսանում պարտիական կազմակերպությունների գործունեության լուսաբանման համար։

ՀԿՊ Կրասնոսելսկի (Ստարո-Միխայլովկա) շրջկոմի 1920—1922 թթ. նիստերի արձանագրությունները ամփոփված են մեկ ամբողջական մատյանում։ Դրանք սկսվում են 1920 թվականի մայիսի 21-ի նիստով, երբ շրջանում բռնկվել էր մայիսյան ապստամբությունը։ Մայիսյան ապստամբության պարտության օրերին, երբ շրջկոմը և ռևկոմը իրենց զինված ջոկատներով ստիպված եղան նահանջել դեպի Սովետական Ադրբեջան, շրջկոմի քարտուղար Տիմոֆեյ Պրոկոֆևիչ Բորոդինը իր հետ տարավ արձանագրությունների մատյանը և շրջկոմի ու ռևկոմի նոր նստավայր Նովո-Իվանովկա գյուղում շարունակեցին մատյանում գրանցել շրջկոմի հաջորդ նիստերի արձանագրությունները։

1920 թվականի նոյեմբերի 29-ին, երբ Կարմիր բանակի զորամասերը շարժվեցին դեպի Ստարո-Միխայլովկա, շրջան վերադարձան շրջկոմը և ռևկոմը։ Բորոդինն իր հետ բերեց արձանագրությունների նույն մատյանը, որտեղ արդեն զետեղվեցին շրջկոմի 1920 թվականի դեկտեմբեր ամսվա և 1921—1922 թվականների նիստերի արձանագրությունները։ Արձանագրություններն իր ժամանակին գրել ու պահպանել է շրջկոմի քարտուղար Բորոդինը։

Անհրաժեշտ է նշել, որ քառասուն տարվա ընթացքում չեն ուսումնասիրվել Ստարո-Միխայլովկայի պարտշրջկոմի 1920 թվականի մայիս-հոկտեմբեր ամիսների նիստերի և շրջանային պարտիական կազմակերպության ընդհանուր ժողովների արձանագրությունները։

Նկատի ունենալով, որ դրանք մինչև օրս անհայտ աղբյուրներ են, անհրաժեշտ համարեցինք համառոտակի շարադրել Ստարո-Միխայլովկայի շրջանի

---

[1] Ֆ 97. Գ. Տ. Վ. ցուցակ 2։

պարտիական կազմակերպության ընդհատակյա ժամանակաշրջանի գործունեության պատմությունը *։

Ստարո-Միխայլովկայի շրջանի պարտիական կազմակերպության ընդհատակյա ժամանակաշրջանի գործունեությունը բաժանվում է երկու շրջանի։

Ըստ հին բոլշևիկների և, հատկապես, շրջկոմի քարտուղար ընկ. Բորոդինի տվյալների, Ստարո-Միխայլովկա և Ն. Ճամբարակ գյուղերում բոլշևիկյան կազմակերպություններ հիմնվել են 1919 թվականին։ Նույն թվականի հուլիս ամսին տեղի է ունեցել երկու կազմակերպությունների միացյալ ժողովը, որտեղ ընտրվել է պարտիական կազմակերպությունների միացյալ կոմիտե։ Կոմիտեի կազմում ընտրվել են՝ Բորոդինը, Գ. Հարությունյանը և Ի. Հակոբյանը։ Կոմիտեի քարտուղար է ընտրվել Բորոդինը։ Այդ ժողովը քննարկել է նաև բնակչության մեջ ագիտացիան ուժեղացնելու հարցը, առաջադրվել են ագիտատորներ և որոշում է ընդունվել՝ կազմակերպությունների և միացյալ կոմիտեի հերթական անդամավճարների մասին։

Հետագայում հետզհետե աճում ու ամրապնդվում էին պարտիական կազմակերպությունները, որոնք մեծ ջանքեր էին գործադրում հայերի, ռուսների և ադրբեջանցիների միջև խախտված բարեկամությունը վերականգնելու ուղղությամբ, մերկացնում էին դաշնակների հակաժողովրդական և նացիոնալիստական քաղաքականությունը, խափանում դաշնակների շատ միջոցառումներ, մասսաներին համախմբում էին իրենց շուրջը։

Ստարո-Միխայլովկայի շրջանում, 1919—1920 թվականներին, պարտիական ամենաուժեղ կազմակերպությունը դա Ն. Ճամբարակի կազմակերպությունն էր, որի անդամների մի մասը կռվել էր Բաքվի պրոլետարիատի շարքերում։ Բավական է հիշատակել, որ 1921 թվականի հոկտեմբերին Ն. Ճամբարակի պարտկազմակերպությունում պարտիական զտումով անցել են 34 կոմունիստ, որոնցից քսանմեկն ունեին մինչռևոլյուցիոն շրջանի և 1920 թվականի ընդհատակյա ժամանակաշրջանի պարտստաժ։

1920 թվականի ապրիլին, երբ Ադրբեջանում հաստատվեցին սովետական կարգեր և Կարմիր բանակը մոտեցավ Հայաստանի սահմաններին, նոր թափ հաղորդվեց պարտիական կազմակերպությունների աշխատանքին։ Պարտիական կազմակերպություններ հիմնվեցին նաև շրջանի մյուս գյուղերում։

1920 թվականի մայիսյան ապստամբությունը, որը հայ ժողովրդի ցասման ցայտուն արտահայտությունն էր ընդդեմ դաշնակների, բռնկվեց նաև Ստարո-Միխայլովկայի շրջանում և հաղթանակեց։ Ապստամբությունը սկսվեց մայիսի 21-ին։ Ստեղծվեց պարտշրջկոմ, որի կազմում ընտրվեցին՝ Բորոդինը, Գ. Հարությունյանը, Ի. Հակոբյանը, Ստ. Սուկովիցինը և Յու. Պիկալովան։ Շրջկոմի քարտուղար ընտրվեց Բորոդինը։ Այդ ժամանակ կազմվեց նաև շրջանային ռևկոմ։

Ապստամբության հենց առաջին օրվանից շրջկոմը և ռևկոմը գործեցին ճկուն և արագ, հատուկ պլանով։ Ամենից առաջ զինաթափեցին դաշնակների

---

* 1957 թվականի հուլիս ամսին, Կրասնոսելսկի «Լենինյան ուղիով» շրջանային թերթի 53, 57, 58, 59 համարներում տպագրվեց Մառլեն Բորյանի «Մայիսյան ապստամբությունը և Սովետական իշխանության հաստատումը Ստարո-Միխայլովկայում» ընդարձակ հոդվածը։

Քանի որ Մ. Բորյանին հայտնի չեն եղել վերջերս հայտնաբերված փաստաթղթերը, բնականաբար նրա շարադրանքը միակողմանի է և որոշ դեպքերում՝ ոչ ստույգ։



կայազորը, մեկուսացրին բանակի սպայական կազմը։ Դաշնակների զինվորների մի մասը անցավ ապստամբների կողմը։ Ռևկոմին կից ստեղծվեցին զինված ջոկատներ՝ Իվան Աստախովի և Վ. Մակարովի հրամանատարությամբ։ Այսպիսով շրջանում հայտարարվեց Սովետական իշխանություն։

Սակայն հետագայում իրադարձություններն ընթացան այլ ճանապարհով։ Դաշնակները Ալեքսանդրապոլում, Ղարսում, Սարիղամիշում, Ն. Բայազեդում և այլ վայրերում ճնշելով մայիսյան ապստամբությունը, իրենց ուժերը կենտրոնացրին Դիլիջանի, Իջևանի, Ստարո-Միխայլովկայի և Շամշադինի ապստամբների դեմ։ Երեք օր շարունակ կատաղի մարտեր տեղի ունեցան Ստարո-Միխայլովկայի հատվածում։ Դաշնակները ապստամբների դեմ նետեցին հրաձգային կանոնավոր զորամասեր և հրետանային երկու մարտկոց։ Հրետանին ռմբակոծեց Ստարո-Միխայլովկա գյուղը։ Ստեղծվեց ծանր վիճակ։ Ապստամբները թշնամու գերակշռող ուժերի ճնշման տակ ստիպված եղան նահանջել։ Թշնամուն օգնեց և այն հանգամանքը, որ մարտերի ընթացքում գրեթե սպառվեց ապստամբների ռազմամթերքը։ Ճիշտ է, շրջկոմը, ռևկոմը և նրանց զինված ջոկատները նահանջեցին, բայց կատաղի մարտերով, պահպանելով իրենց ղեկավար կորիզը և զինված ջոկատները։

Նահանջելով Սովետական Ադրբեջան, շրջկոմը և ռևկոմը հանգրվանեցին Գետաբեկի շրջանի Նովո-Իվանովկա գյուղում, որը սահմանակից է Ստարո-Միխայլովկայի շրջանին։ Այստեղ համախմբվեցին պարտիական կադրերը, զինված ջոկատները, դաշնակներից հալածված գյուղացիները։ Նովո-Իվանովկա գյուղը վերածվեց ռազմական ճամբարի։ Ճիշտ է, ստեղծված նոր իրադրության պայմաններում շրջկոմը և ռևկոմը գտնվում էին սովետական տերիտորիայում, բայց նրանց բուն գործունեության կենտրոնը Ստարո-Միխայլովկայի շրջանն էր. ընդհատակյա աննահանջ պայքար էր մղվում դաշնակների դեմ։ Ուստի նպատակահարմար համարվեց շրջկոմի և ռևկոմի գոյությունը ու նրանց գործունեությունը չբացահայտել։ Շրջկոմը և ռևկոմը ընդհատակում, չթուլացող ուժով, մասսաներին նախապատրաստում էին նոր ապստամբության։

1920 թվականի հունիս ամսվա ընթացքում տեղի են ունենում կազմակերպչական փոփոխություններ շրջկոմի և ռևկոմի կազմում։ Շրջանային կոմիտեն Բաքու է գործուղում իր ներկայացուցիչներ Ի. Աստախովին և Գ. Հարությունյանին՝ Հայաստանի կոմպարտիայի արտասահմանյան բյուրոյի և Ադրբեջանի կոմպարտիայի Կենտկոմին հաղորդելու ստեղծված իրադրության մասին։ Շրջանային կոմիտեն սերտ կապեր է հաստատում պարտիական ղեկավար օրգանների հետ և գործում նրանց ցուցումներով։

Շրջանային կոմիտեի գլխավոր խնդիրն էր՝ Ստարո-Միխայլովկայի շրջանի բնակչության մեջ ծավալել ագիտացիոն մասսայական աշխատանք, մերկացնել դաշնակների հակաժողովրդական քաղաքականությունը և ստոր պրովոկացիաները, մասսաներին նախապատրաստել զինված նոր ելույթի։

Դաշնակները սկսում են մասսայական ձերբակալությունները, աքսորում կոմունիստների ընտանիքներին, ավելի ուժեղացնում իրենց կայազորը, խիստ հսկողություն սահմանում Ստարո-Միխայլովկայի ու Սովետական Ադրբեջանի սահմանում, ստեղծում են սահմանապահ կետեր։ Արգելված էր երթևեկությունը և պատահած մարդիկ ձերբակալվում էին որպես «կասկածելիներ»։

Արևելքի ժողովուրդների զարթոնքի համար խոշոր նշանակություն ունեցավ Արևելքի ժողովուրդների Բաքվի համագումարը, որը կայացավ 1920

թվականի սեպտեմբերին։ Հայաստանի Կոմպարտիայի արտասահմանյան բյուրոյի առաջադրանքով Ստարո-Միխայլովկայի շրջկոմն իր ներկայացուցիչների միջոցով գյուղերում հրավիրում է գաղտնի հավաքներ, որտեղ Բաքվում հրավիրված Արևելքի ժողովուրդների համագումարի պատգամավոր են ընտրվում Գևորգ Հարությունյանը, Իվան Աստախովը, Իվան Տեր-Մարտիրոսյանը, Սարո Սարիբեկյանը և Ստեփան Բորյանը, որոնք մեկնում են Բաքու և մասնակցում համագումարի աշխատանքներին։ Համագումարում ելույթ են ունենում Գ. Հարությունյանը և Տեր-Մարտիրոսյանը. նրանք նկարագրում են հայ ժողովրդի ծանր վիճակը և խնդրում Կարմիր բանակի օգնությունը՝ հայ ժողովրդին ազատագրելու համար։

Շրջանային կոմիտեն մի շարք միջոցառումներ է իրագործում Բաքվի համագումարի որոշումները բնակչության մեջ մասսայականացնելու ուղղությամբ։ Շրջանային պարտիական կազմակերպությունը 1920 թվականի սեպտեմբերի 26-ի ժողովում լսում է համագումարի պատգամավոր Գ. Հարությունյանի ընդարձակ զեկուցումը համագումարի արդյունքների մասին, հավանություն է տալիս համագումարի որոշումներին և ընդունում հետևյալ որոշումը. «Մենք Միխայլովկայի շրջանի կոմունիստներս որոշեցինք Հայաստան ուղարկել ագիտատորներ և պրոպագանդիստներ բնակչության մեջ աշխատելու համար, բացատրելու համագումարի որոշումները և մարդկանց նախապատրաստելու զինված ապստամբության՝ Հայաստանում սովետական կարգեր հաստատելու նպատակով»։ Որոշումը կենսագործելու համար համագումարի պատգամավորները գաղտնի կերպով անցնում էին Ստարո-Միխայլովկա, Ն. Ճամբարակ, Բաշքենդ և մյուս գյուղերը ու բնակչության մեջ պրոպագանդում համագումարի որոշումները։

Մասսաներին զինված ապստամբությանը նախապատրաստելու համար Շրջկոմը և Ռևկոմը Ստարո-Միխայլովկա և Ն. Ճամբարակ գյուղերում կազմակերպում են զինված ջոկատներ, հայթայթում ռազմամթերք և այլն։

Շրջանային կոմիտեի 1920 թվականի օգոստոսի 1-ի նիստում լսվում է Ստարո-Միխայլովկայից վերադարձած Շապոշնիկովի ընդարձակ զեկուցումը շրջանի դրության և մասսաներին զինված ապստամբությանը նախապատրաստելու մասին։ Զեկուցողը նկարագրում է աշխատավորության ծանր վիճակը, հաղորդում է, որ Միխայլովցիները զենքը ձեռքին ապստամբելու համար սպասում են հարմար առիթի, որ գյուղի յուրաքանչյուր թաղամասում կա 25—30 զինված մարդ։

Շրջկոմը և պարտիական կազմակերպությունները ձգտում էին հնարավորության սահմաններում լավ զինել սովետական կարգերը համակրողներին, բոլորին ընդգրկել զինված ջոկատներում։ Իրոք, զինված ջոկատները խոշոր դեր խաղացին։ 1920 թվականի նոյեմբերի 29-ին, Ստարո-Միխայլովկայի մատույցներում, դաշնակների զորամասերը նահանջելիս Ն. Ճամբարակում զինաթափվեցին զինված ջոկատների կողմից։ Այդ գործում աչքի են ընկել կոմունիստներ Արսեն Մարտիրոսյանը, Մելիք Մելքումյանը, որոնք ղեկավարում էին Ն. Ճամբարակի զինված ջոկատի գործողությունները։

Դաշնակների դաժան բռնությունների պայմաններում շրջկոմին հաջողվում էր գյուղերում գաղտնի կերպով հրավիրել հավաքներ, ժողովներ։

Հիշատակության արժանի է Ն. Ճամբարակի դաշտում 1920 թ. հոկտեմբերի 7-ի գիշերը տեղի ունեցած հավաքը, որին մասնակցեցին Սովետական իշ-



խանությանը համակրող՝ հարյուրից ավելի գյուղացիներ և դաշնակցական բանակի շարքային զինվորներ։

Հավաքում շրջկոմի ներկայացուցիչ Սարո Սարիբեկյանը զեկուցել է Արևելքի ժողովուրդների՝ Բաքվի համագումարի արդյունքների մասին, հանգամանորեն պատմել, թե ինչ է տվել Սովետական իշխանությունը Ադրբեջանի աշխատավորներին։ Այդ հավաքում քննարկվել է նաև զինված ապստամբության նախապատրաստվելու հարցը, որի մասին ընդունվել է որոշում։

Շրջանային կոմիտեն միշտ գյուղերն էր ուղարկում հայերեն, ռուսերեն և ադրբեջաներեն գրականություն, թերթեր, թռուցիկներ, պլակատներ, լոզունգներ և դրանք պարտիական կազմակերպիչների ու ագիտատորների միջոցով տարածում բնակչության մեջ։ Վերոհիշյալ նյութերի առաքման պատասխանատու գործով զբաղվում էր կոմունիստ կապավոր Միսակ Շահնազարյանը։

Ստարո-Միխայլովկայի պարտշրջկոմը մեծ ուշադրություն էր հատկացնում պարտիական կազմակերպության միասնության և կարգապահության ամրապնդման հարցերին։ 1920 թվականի հունիսի 26-ին կոմունիստների ընդհանուր ժողովում անց է կացվել պարտիայի շարքերի զտում։

Կոմունիստների քաղաքական պատրաստականությունը բարձրացնելու և նրանց քաղաքական գիտելիքներով զինելու համար շրջկոմը կազմակերպում էր դասախոսություններ, զեկուցումներ, քաղաքական զրույցներ։

Ստարո-Միխայլովկայի պարտշրջկոմը ո՛չ միայն ղեկավարում էր պարտկազմակերպությունների գործունեությունը, մասսաներին նախապատրաստում զինված ապստամբության, այլև միշտ կատարում էր թշնամու ուժերի հետախուզություն և բոլոր տեղեկությունները հաղորդում Կարմիր բանակի հրամանատարությանը, որի հետ նա սերտորեն կապված էր։

Շրջանային կոմիտեն գրեթե իր բոլոր նիստերում քննարկել է թշնամու թիկունքը հետախույզներ ուղարկելու հարցը, լսել է նրանց զեկուցումները, միշտ հետևել դաշնակների մեքենայություններին և նրանց ռազմական ուժերի դասավորությանը։

Շրջկոմը 1920 թվականի հոկտեմբերի 27-ի նիստում քննում է 20-րդ դիվիզիայի ռեգիստրացիոն բաժնի պետ Գայդայինի խնդրանքը՝ թշնամու թիկունքը հետախույզներ ուղարկելու մասին և որոշում է.

«Լսելով ընկ. Գայդայինի խնդրանքը, մենք կոմունիստներս գիտակցելով մոմենտի լրջությունը, որոշեցինք հակառակորդի թիկունքը ուղարկել երեք ընկերների, նրա ուժերի և դասավորության մասին տեղեկություններ հավաքելու համար և այդ նպատակով որոշեցինք ուղարկել Սարո Սարիբեկյանին, Ստեփան Բորյանին և Իվան տեր-Մարտիրոսյանին»[1]։ Այդ ընկերները շրջկոմի որոշմամբ հաճախակի էին մեկնում թշնամու թիկունքը, հետախուզում նրա ուժերը և կարևոր տեղեկություններ հաղորդում շրջկոմին։ Նրանք կատարում էին նաև պարտիական այլ հանձնարարություններ։

Հայաստանի Կոմունիստական պարտիայի հերոսական պատմության տարեգրության մեջ իր պատվավոր տեղն ունի Ստարո-Միխայլովկայի շրջանի պարտիական կազմակերպությունը։ Լինելով Հայաստանի Կոմունիստական պարտիայի մարտական ջոկատներից մեկը, նա 1919—1920 թվականներին գործում էր գյուղական շրջանում և ցույց տվեց իր մարտունակությունն ու

---

1 Այժմ նրանք ապրում են Ն. Ճամբարակ գյուղում։

նվիրվածությունը հայ ժողովրդի ազատագրության համար մղված պայքարում։

Ստարո-Միխայլովկայի շրջանի բոլշևիկները մասսաներին համախմբեցին իրենց շուրջը։ Երբ Կարմիր բանակի զորամասերը շարժվեցին դեպի Ստարո-Միխայլովկա, գյուղացիները բանակին դիմավորեցին ցնծությամբ։

Ստարո-Միխայլովկայի շրջանի պարտիական կազմակերպությունների և մայիսյան ապստամբության ղեկավարներն էին՝

Տիմոֆեյ Պրոկոֆևիչ Բորոդին—ծնվել է 1891 թվականին Ստարո-Միխայլովկա գյուղում։ ՍՄԿՊ շարքերն է ընդունվել 1919 թվականին։ 1914 թվականին զորակոչվում է ցարական բանակ, իսկ 1918—1919 թթ. Ռուսաստանում մասնակցում է քաղաքացիական կռիվներին։

1919 թվականին նա վերադառնում է հայրենի Ստարո-Միխայլովկա գյուղը և հիմնադրում է բոլշևիկյան կազմակերպություն։ Նույն թվականի հուլիսին, երբ ստեղծվում է Ն. Ճամբարակ և Ստարո-Միխայլովկա գյուղերի պարտիական կազմակերպությունների միացյալ կոմիտե, Բորոդինը ընտրվում է կոմիտեի քարտուղար։ Նա 1920 թվականին եղել է Ստարո-Միխայլովկայի ընդհատակյա պարտշրջկոմի քարտուղար և շրջանում մայիսյան ապստամբության ղեկավարներից մեկը։ 1920 թվականի դեկտեմբերից մինչև 1922 թվականի հունվարը եղել է Կրասնոսելսկի շրջռևկոմի նախագահ, 1922—1923 թթ. նույն շրջանի պարենկոմը։ Նա 1923 թվականի ամռանը մեկնել է Ռուսաստան և այժմ աշխատում է Կրասնոդարի երկրամասում։

Գևորգ (Եգոր) Իվանի Հարությունյան — ծնվել է 1881 թվականին Ն. Ճամբարակ գյուղում, ՍՄԿՊ անդամ է 1905 թվականից։ Ռևոլյուցիոն գործունեության համար հալածվել է ցարական կառավարության կողմից և մի քանի անգամ բանտարկվել։

Հարությունյանը 1917—1919 թթ. Ռուսաստանում մասնակցել է քաղաքացիական կռիվներին։ Նա գյուղ է վերադառնում 1919 թվականին և հիմնադրում բոլշևիկյան կազմակերպություն։ 1920 թվականի մայիսյան ապստամբության օրերին Հարությունյանը ընտրվում է Ստարո-Միխայլովկայի պարտշրջկոմի և Ռևկոմի անդամ. իսկ նույն թվականի հունիս-նոյեմբեր ամիսներին՝ ընդհատակյա պարտշրջկոմի քարտուղարի և Ռևկոմի նախագահի տեղակալ։ Նա այդ ժամանակ նաև Ն. Ճամբարակի Ռևկոմի նախագահն էր. իսկ 1920 թվականի դեկտեմբերից մինչև 1928 թվականը, այսինքն՝ մինչև իր մահը, շրջանում վարել է մի շարք պատասխանատու պաշտոններ։

Իվան Պետրոսի Հակոբյան — ծնվել է 1889 թվականին Ն. Ճամբարակ գյուղում։ ՍՄԿՊ անդամ է 1918 թվականից։ Բաքվի հին բանվոր է և Բաքվի կոմունայի ակտիվ պաշտպան։ Հակոբյանը գյուղ վերադարձավ 1919 թվականին և սկսեց իր ակտիվ ռևոլյուցիոն գործունեությունը։ 1920 թվականին նա ընտրվեց շրջկոմի և ռևկոմի անդամ։ Հակոբյանը 1920 թվականի մայիսյան ապստամբության պարտությունից հետո, պարտիական լուրջ հանձնարարություն կատարելիս, պատահմամբ ձերբակալվեց դաշնակների կողմից, դատապարտվեց տասը տարվա բանտարկության. նրան նստեցրին Երևանի կենտրոնական բանտում, որտեղից ազատվեց Հայաստանում Սովետական կարգեր հաստատվելուց հետո։ Մինչև 1950 թվականը (մինչև իր մահը) պատասխանատու մի շարք պաշտոններ էր վարում Հայաստանում։

**Ս. ԱԶԱՏՅԱՆ**

---

# ՊԱՏԱՍԽԱՆ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐԻ ՀԱՐՑԵՐԻՆ

## ՄԵԾ ԲՐԻՏԱՆԻԱՅԻ ԳԱՂՈՒԹԱՅԻՆ ՏԻՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆԸ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԱՖՐԻԿԱՅՈՒՄ

(Պատասխանում ենք Վ. Արտաշատի կոլտնտեսության խոզաբուծական և թռչնաբուծական ֆերմայի վարիչ Ռաշիդ Պետրոսյանի հարցին)

Դեռ բոլորովին վերջերս արևմտյան իմպերիալիստներն աֆրիկական մայր ցամաքը համարում էին գաղութակալության ամենահաստատուն ամրոցը։ Համարյա ամբողջ Աֆրիկան բաժան-բաժան էր արված անգլիական, ֆրանսիական, իտալական, բելգիական ու պորտուգալական գաղութարարների միջև։ Եվ, ինչպես երևում է, նրանք մտադիր էին դեռ էլի երկար ժամանակ կողոպտել աֆրիկական մայր ցամաքի ժողովուրդներին։ Բայց իմպերիալիստների հույսերը չարդարացան։ Պատմությունն ընթացավ իր օբյեկտիվ ուղիով և լիովին հաստատեց Վ. Ի. Լենինի հանճարեղ կանխատեսումն այն մասին, որ «Արևելքի արթնացման շրջանից հետո արդի ռևոլյուցիայի մեջ մտնում է այն շրջանը, երբ Արևելքի բոլոր ժողովուրդները կմասնակցեն ամբողջ աշխարհի բախտի լուծմանը, որ միայն հարստացման օբյեկտ չլինեն։ Արևելքի ժողովուրդներն արթնանում են այն բանի համար, որպեսզի պրակտիկորեն գործեն և որպեսզի ամեն մի ժողովուրդ վճռի ամբողջ մարդկության բախտի հարցը» (Երկեր, հ. 30, էջ 186—187)։

Ստացվեց հենց այնպես, որ XX դարի առաջին կեսն ավարտվեց իմպերիալիզմի գաղութային սիստեմի խորտակումով Ասիայում, իսկ երկրորդ կեսը սկսվեց իմպերիալիզմի գաղութային սիստեմի փլուզմամբ՝ Աֆրիկայում։ Այսօր Աֆրիկան փոթորկվել է. այնտեղ չկա մի գաղութ, որի ժողովուրդը պայքարի ելած չլինի իր ազգային անկախության համար։

Այդ աշխարհամասում իրադարձությունները հաջորդում են իրար չտեսնված սրագությամբ։ Աֆրիկայի ժողովուրդները կոչ են արձակել՝ «Անհապաղ անկախություն»։ Մեկ երկրի անկախություն ստանալը և գաղութային շղթաներից նրա ազատագրվելը իր ազդեցությունն է ունենում մյուս երկրների վրա և այնտեղ էլ ծավալվում է ազատագրական շարժում։ Այս տարի Աֆրիկայում անկախ պետությունների թիվը հասել է 26-ի, մինչդեռ տարվա սկզբին ընդամենը տասն էր։ Այդ նշանակում է, որ աֆրիկական մայր ցամաքի տերիտորիայի կեսից ավելին և բնակչության համարյա $^{3}/_{4}$-ը արդեն իմպերիալիզմի գաղութային սիստեմից դուրս է եկել։

ՄԱԿ-ի Գլխավոր Ասամբլեայի XV սեսիայում, հանդես գալով գաղութային խայտառակ ռեժիմը լիովին ու վերջնականապես վերացնելու կոչով, Ն. Ս. Խրուշչովն ասաց. «Դարեր շարունակ գաղութարարների կողմից մարդկության զարգացման մայրուղուց մի կողմ մղված ժողովուրդների՝ մեր աչքի առաջ տեղի ունեցող ազատագրումը և ինքնուրույն կյանքի վերածնունդը մեր դարաշրջանի մեծ հատկանիշն է։ Միայն 15 տարում մոտավորապես մեկ ու կես միլիարդ մարդ, այսինքն՝ երկրագնդի բնակչության կեսը, թոթափեցին գաղութային ճնշման շղթաները։ Գաղութային հին կայսրությունների փլատակների վրա ստեղծվել են տասնյակ նոր ազգային պետություններ»։

Հասկանալի է, որ այդ պրոցեսը խիստ չփոթության մեջ է գցել գաղութատեր պետություններին, առավել ևս, որ աճում և ավելի է մեծանում Սովետական Միության, սոցիալիստական լագերի մյուս երկրների հեղինակությունը, որոնք ճնշված ժողովուրդների բարեկամն են։

Ասիայից վռնդված արևմտյան իմպերիալիստները կատաղորեն կառչել են Աֆրիկայից։ Առանձնապես մեծ ակտիվություն են ցուցաբերում ԱՄՆ-ը՝ փորձելով իրենց շահերի համար օգտագործել Աֆրիկայում ստեղծված դրությունը, որտեղ նոր պետությունները մեծ դժվարությունների են հանդիպում։

Աֆրիկական մայր ցամաքի քարտեզի վրա դեռևս մնացել են գաղութարարության խայտառակ բծեր։ Ալժիրի, Անգոլայի, Զանզիբարի, Քենիայի, Մոզամբիկի, Տանգանիկայի, Ռուանդա-Ուրունդիի, Սիերա-Լեոնեի, Ուգանդայի, ինչպես և Ռոդեզիայի ու Նյասալենդի ֆեդերացիայի ժողովուրդները դեռ տառապում են գաղութարարների լծի տակ։

Գաղութարարների լծի տակ տառապող Աֆրիկայի ժողովուրդների ազգային-ազատագրական շարժումը խեղդելու կամ գոնե նրա զարգացումը թուլացնելու գործում դեռևս հատուկ դեր է խաղում բրիտանական իմպերիալիզմը, որի գաղութային կայսրության հիմնական կորիզը գտնվում է Աֆրիկայում։ Ըստ որում անգլիական գաղութային իշխանությունները դիմում են ինչպես զենքի ուժի, այնպես էլ դեմագոգիկ լոզունգների։ Նրանք ասում են իբր թե իրենք ձգտում են բազմառասայական հասարակություններ ստեղծելու՝ հանուն այդ ժողովուրդների «պրոգրեսի ու բարգավաճման»։

Այդպիսի քաղաքական ակտերից մեկն էլ Ռոդեզիայի ու Նյասալենդի ֆեդերացիայի ստեղծումն էր Կենտրոնական Աֆրիկայում։

***

Անգլիացի ճանապարհորդ Դավիդ Լևինգստոնի հայտնագործությունները (նա 1851 թվականին առաջինն էր, որ տեսավ Զամբեզին, 1855 թվականին հայտաբերեց Վիկտորիա ջրվեժը, հետազոտեց Նյասա և Տանգանիկա լճերը), ինչպես և 1860 թվականին Մատոնալենդում ոսկու հայտաբերումը շարժեցին Մեծ Բրիտանիայի հետաքրքրությունը Աֆրիկայի այդ շրջանի նկատմամբ և, մասնավորապես, պատճառ եղան բրիտանական տիրապետությունը հաստատելու այդ տերիտորիաների վրա։ Այդ շրջաններում բրիտանական լիակատար տիրապետություն հաստատելու գործն իր վրա վերցրեց ֆինանսական օլիգարխիայի ներկայացուցիչների մի խումբ, որին գլխավորում էր գաղութարար Սեսիլ Ռոդսը։

1891 թվականին ներկայիս Նյասալենդի տերիտորիան հայտարարվեց բրիտանական պրոտեկտորատ։ Հարավային Ռոդեզիան 1923 թվականին պաշտոնապես միացվեց Բրիտանական կայսրությանը՝ ինքնավար գաղութի իրավունքներով։ Հյուսիսային Ռոդեզիայի տերիտորիան պաշտոնապես բրիտանական թագի կառավարման տակ անցավ 1924 թվականին՝ Մեծ Բրիտանիայի պրոտեկտորատի իրավունքներով։

Իր գաղութների շահագործման ավելի հարմար ձև որոնելով՝ անգլիական իմպերիալիզմը վաղուց արդեն նպատակ ուներ Հարավային Ռոդեզիան, Հյուսիսային Ռոդեզիան և Նյասալենդը միավորելու մեկ ֆեդերացիայի մեջ։ Պաշտոնապես հայտարարվում էր, թե այդպիսի ֆեդերացիա ստեղծելու նպատակն էր միանման քաղաքական ու տնտեսական պրոբլեմներ ունեցող համանման ժողովուրդներով բնակեցված տերիտորիաների միավորումը։ Բայց բրիտանական իմպերիալիզմն այդ նպատակը չէր հետապնդում։ Հարավային Ռոդեզիայում իրենց գաղութային տիրապետության երկար տարիների ընթացքում անգլիական գաղութային իշխանություններին հաջողվել էր ընդամենը մոտ 200 հազար եվրոպական բնակչության առկայության պայմաններում Հարավային Ռոդեզիան դարձնել Հարավ-Աֆրիկյան Միության նման այսպես կոչված՝ «սպիտակների պետություն», մինչդեռ Հարավային Ռոդեզիայում ապրում է մոտ 2,5 միլիոն աֆրիկական բնակչություն, որը զուրկ է տարրական քաղաքական ու տնտեսական իրավունքներից։ Ռոդեզիայի ու Նյասալենդի ֆեդերացիան ստեղծելով, բրիտանական իմպերիալիզմն իր առջև խնդիր էր դնում, որ մյուս երկու տերիտորիաներն էլ՝ Հյուսիսային Ռոդեզիան և Նյասալենդը զարգանան Հարավային Ռոդեզիայի նման։

Ֆեդերացիան ստեղծելով՝ անգլիական գաղութային իշխանությունները վերահսկողությունը կենտրոնացնում էին մեկ ձեռքում, անգլիական մոնոպոլիաների համար ավելի բարենպաստ հնարավորություններ էին ստեղծում, որպեսզի անգլիական կապիտալն ավելի արագ և ավելի լայնորեն մուտք գործի այդ շրջանները։ Նրանք հույս ունեին նաև Նյասալենդն օգտագործել որպես էժան բանվորական ուժի աղբյուր, իսկ Հյուսիսային Ռոդեզիան՝ որպես հումքի աղբյուր Հարավային Ռոդեզիայի տնտեսական զարգացման համար, որը եվրոպական գաղութարարների պատվարն է Կենտրոնական Աֆրիկայում։

Ֆեդերացիա ստեղծելու դեմ օպոզիցիան ընդգրկեց այդ տերիտորիաների բնակչության համարյա բոլոր խավերը։ Ինչպես հասարակ բնակչությունը, այնպես էլ ցեղապետները դեմ էին ֆեդերացիային։ Սակայն ֆեդերացիայի ստեղծումը կանխելու համար գործադրված ջանքերը հաջողությամբ չպսակվեցին։ Նրանք արին ամեն բան, ինչ հնարավոր էր։

Եվ այսպես, 1953 թվականին, հակառակ այդ տերիտորիաների ժողովուրդների շահերի, անգլիական գաղութային իշխանություններին տեղական սպիտակ գաղութարարների համաձայնությամբ, հաջողվեց կենտրոնական-աֆրիկական ժողովուրդների երեք տերիտորիաների ֆեդերացիա ստեղծել Ռոդեզիայի և Նյասալենդի ֆեդերացիայի ցուցանակի տակ։ Ռոդեզիայի և Նյասալենդի ֆեդերացիայի կազմի մեջ մտան Հարավային Ռոդեզիան (Մեծ Բրիտանիայի ինքնավար



գաղութ), Հյուսիսային Ռոդեզիան և Նյասալենդը (Մեծ Բրիտանիայի պրոտեկտորատներ)։

Ռոդեզիայի և Նյասալենդի ֆեդերացիայի տերիտորիան մեկ միլիոն 263 հազար քառ. կմ է, որից Հարավային Ռոդեզիան՝ 389 քառ. կմ, Հյուսիսային Ռոդեզիան՝ 746 հազար քառ. կմ, Նյասալենդը՝ 127 հազար քառ. կմ։ Ֆեդերացիայի, ինչպես և Հարավային Ռոդեզիայի վարչական կենտրոնն է Սոլսբերի քաղաքը։

Առ 1958 թվականի դեկտեմբեր ամիսը ֆեդերացիայում բնակվում էին. Հարավային Ռոդեզիայում՝ եվրոպացիներ՝ 211.000, աֆրիկացիներ՝ 2.500.000 և այլ ռասաներ՝ 14.265։ Հյուսիսային Ռոդեզիայում՝ եվրոպացիներ՝ 72.000, աֆրիկացիներ՝ 2.250.000, այլ ռասաներ՝ 7.967։ Նյասալենդում՝ եվրոպացիներ՝ 8.600, աֆրիկացիներ՝ 2.750.000 և այլ ռասաներ՝ 10.940։

Ֆեդերալ կառավարությունը վարում է ընդհանուր տնտեսական հարցերը, արտաքին հարաբերությունները, զինված ուժերը, տրանսպորտը և ֆեդերացիայի եվրոպական մասի բնակչության լուսավորության հարցերը։ Ֆեդերալ կոնստիտուցիան գաղութային կոնստիտուցիայի տիպիկ բնույթ է կրում։ Այն ամրապնդում է բրիտանական իմպերիալիզմի տիրապետությունը, որ իրականացվում է վարչական բարդ ապարատով՝ գեներալ-նահանգապետի և նահանգապետների գլխավորությամբ։ Ֆեդերալ կոնստիտուցիան կոչված է ամրապնդելու եվրոպական գաղութարարների մի աննշան խմբի տիրապետությունը մեծաթիվ աֆրիկական ժողովրդի վրա, հեռու պահելով նրան ընտրություններին մասնակցելուց և իշխանության ու կառավարման օրգաններից։

Ֆեդերացիայի հիմնական քաղաքական պարտիաներն են՝ Միավորված ֆեդերալ պարտիան և Դոմինիոնների պարտիան։ Թե՛ առաջինը և թե՛ երկրորդը սպիտակամորթ վերաբնակիչների պարտիաներ են։ Այդ պարտիաներին հակադրվում են Նյասալենդի, Հյուսիսային ու Հարավային Ռոդեզիաների Աֆրիկական ազգային կոնգրեսի պարտիաները, որոնք ֆեդերացիայի աֆրիկական ժողովուրդների ազգային պարտիաներն են։ Ֆեդերացիայում առաջատար պարտիան Միացյալ ֆեդերալ պարտիան է, որի լիդերն է Ռոյ Վելենսկին։ Վելենսկու հայրը լիտվացի հրեա է, որը փաստակ գտնելու հույսով գաղթել է Աֆրիկա։ Վելենսկին, լինելով մեծ դեմագոգ, իր ելույթներում ընդգծում է, որ ինքն էլ բանվոր է, հոգով լիբերալ և կցանկանար ավելի մեծ իրավունքներ տալ աֆրիկացիներին, բայց հանգամանքների մղումով պարտավոր է սպիտակների գերազանցության քաղաքականություն վարել։

Իրենց դիրքերն ամրապնդելու համար անգլիական գաղութարարները սպիտակների արտագաղթի լայն կամպանիա են սկսել դեպի ֆեդերացիայի բոլոր երեք տերիտորիաները։ Արտագաղթի քաղաքականությունը անգլիական գաղութային քաղաքականության մեթոդներից մեկն է, որովհետև արհեստականորեն ավելացնելով սպիտակամորթ բնակչությունը՝ գաղութարարները հնարավորություն են ստանում ամրապնդելու իրենց դիրքերը՝ գրավելով բոլոր հրամանատարական բարձունքները՝ վերից մինչև վար։

Ֆեդերացիայի էկոնոմիկան տիպիկ գաղութային բնույթ է կրում։ Շահույթի և էժան ստրատեգիական հումք ձեռք բերելու հետևից ընկնելով՝ գաղութարարները ֆեդերացիայի բոլոր տերիտորիաների էկոնոմիկան միակողմանի են զարգացնում։ Ֆեդերացիայի էկոնոմիկայի գլխավոր ճյուղը լեռնարդյունաբերությունն է, որի արտադրանքը համարյա ամբողջովին արտահանվում է։ Չնայած բարենպաստ կլիմայական պայմաններին, գյուղատնտեսությունը թույլ է զարգացած։

Հարավային Ռոդեզիան հարուստ է այնպիսի հանքանյութերով, ինչպիսիք են՝ քրոմը, պղինձը, ոսկին, կոբալտը, կապարը, ցինկը։ Քրոմի հանույթով Հարավային Ռոդեզիան կապիտալիստական երկրների մեջ IV տեղն է գրավում։ Ստացված հանքահումքի ճնշող մասն արտահանվում է։ Քրոմի $^{2}/_{3}$ մասն արտահանվում է ԱՄՆ, իսկ մնացածը՝ Անգլիա։

Գյուղատնտեսությունը թույլ է զարգացած։ Մշակվում է գլխավորապես ծխախոտ (արտահանման համար), եգիպտացորեն (որ տեղական բնակչության հիմնական սննդամթերքն է), թեյ, բամբակ և ցիտրուսներ։ Անասնաբուծությունը ևս թույլ է զարգացած։

Հյուսիսային Ռոդեզիան նույնպես հարուստ է հանքային ռեսուրսներով, որոնք մշակվում են շատ ինտենսիվ և հիմնականում արտահանման համար են։ Օգտակար հանածոներն են՝ պղինձը, քրոմը, ասբեստը, վոլֆրամը, ցինկը, կապարը, երկաթը, քարածուխը։ Պղնձահանքերի գոտու շրջանում հայտաբերված են ուրանի հանքի պաշարներ։ Արտահանության համարյա 90 տոկոսը կազմում է գունավոր մետաղների արտադրանքը։ Գունավոր մետաղների ամբողջ հանույթը կենտրոնացված է անգլո-ամերիկյան երկու խոշոր տրեստների ձեռքում։ Ամերիկյան կապիտալի բաժինը հասնում է մոտ 25 տոկոսի։ Բոլոր կապիտալիստական երկրների պղնձի հանույթի 12 տոկոսը բաժին է ընկնում Հյուսիսային Ռոդեզիային։

Գյուղատնտեսությունն այստեղ նույնպես թույլ է զարգացած։ Հիմնականում մշակվում են՝ եգիպտացորեն, ծխախոտ, բամբակ, թեյ, սուրճ և այլ կուլտուրաներ։

Նյասալենդն իր տնտեսական նշանակությամբ ֆեդերացիայի մեջ գրավում է երրորդ տեղը։

Վերամշակող արդյունաբերությունը խիստ թույլ է զարգացած։ Կան միայն տեղական նշանակություն ունեցող մանր ձեռնարկություններ։

Նյասալենդը էժան բանվորական ուժ է տալիս հարևան ավելի զարգացած տերիտորիաներին։ Նրա էկոնոմիկայի մեջ գլխավորը հողագործությունն է։ Մշակվում են՝ ծխախոտ, թեյ, բամբակ, եգիպտացորեն, բրինձ, լոբազգիներ, ինչպես և մի շարք մերձարևադարձային կուլտուրաներ։ Անասնաբուծությունն այստեղ համեմատաբար ավելի լավ է զարգացած, քան մյուս երկու տերիտորիաներում։

1958 թվականին ամբողջ ֆեդերացիայում 7.560.000 աֆրիկացիների վճարվել է 83,9 միլիոն ֆունտ ստեռլինգ աշխատավարձ, մինչդեռ 326.000 ոչ աֆրիկացիների (որոնց մեջ մտնում են սպիտակամորթ վերաբնակիչները և ասիական երկրներից եկածները) վճարվել է 130,5 միլիոն ֆունտ ստեռլինգ։ Երբ Հարավային Ռոդեզիայում շինարարական ձեռնարկության եվրոպացի բանվորը մի ժամում ստանում է 9 շիլլինգ և 8,5 պեննի (1958 թ. տվյալներով), ապա նույն ձեռնարկության աֆրիկացի բանվորը միևնույն աշխատանքի համար ստանում է 8 պեննիից մինչև 1 շիլլինգ և 6 պեննի։ Այսպես է պատկերն ամբողջ ֆեդերացիայում և բոլոր ձեռնարկություններում։

Ներկայումս անգլիական կապիտալը եվրոպական վերաբնակիչների միջոցով հիմնականում վերահսկում է ֆեդերացիայի ամբողջ էկոնոմիկան։ Ազգային բուրժուազիան (որը գտնվում է իր ծագման փուլում) ֆեդերացիայի էկոնոմիկայում իր ազդեցությամբ և դիրքով շատ թույլ է և իրավազուրկ։

Վերջին տարիներս ԱՄՆ-ի և ԳՖՌ-ի մոնոպոլիաները տենդենց են ցուցաբերում թափանցելու ֆեդերացիայի էկոնոմիկայի մեջ, և այդ ցույց է տալիս, որ այս շրջանն աստիճանաբար դադարում է լինել Անգլիայի մոնոպոլ տիրապետության օբյեկտ և դառնում է առաջատար իմպերիալիստական պետությունների մոնոպոլիաների պայքարի ասպարեզ։

Աֆրիկական բնակչությունը, մանավանդ Նյասալենդում և Հյուսիսային Ռոդեզիայում, որտեղ եվրոպացիների խավն աննշան է, սկսել է ակտիվ պայքարի մեջ մտնել՝ պահանջելով դուրս գալ ֆեդերացիայից։ Ֆեդերացիայից դուրս գալու շարժումն առանձնապես ուժեղ զարգացավ Նյասալենդում, որտեղ աֆրիկական բնակչության իղձերը դարձան Նյասալենդի Աֆրիկական ազգային կոնգրեսի լոզունգները։ Պետք է նշել, որ կոնգրեսն իր գործունեությունը նկատելիորեն ակտիվացրեց՝ սկսած 1958 թվականի հուլիսից, այն պահից, երբ պրեզիդենտի պոստը գրավեց դոկտոր Հաստինգս Բանդան։

Կոնգրեսի գործունեությունն առանձնապես աշխուժացավ Աֆրիկայի ժողովուրդների՝ Ակկրայում տեղի ունեցած կոնֆերանսից հետո։ 1959 թվականի սկզբներին Ազգային կոնգրեսի ղեկավարությամբ ամբողջ երկրում տեղի ունեցան միտինգներ, որոնք որպես հիմնական պահանջ առաջադրում էին Նյասալենդի դուրս գալը ֆեդերացիայից և ինքնավարություն ստանալը։ 1959 թ. մարտի 3-ին Նյասալենդի տերիտորիայում արտակարգ դրություն հայտարարվեց։ Դրանից հետո երկրում բռնություններ սկսվեցին։ Զորքն ու ոստիկանությունը ամեն մի աննշան առիթով կրակ էին բաց անում։ Աֆրիկական կոնգրեսի բոլոր ակտիվ անդամները և նրա ղեկավարությունը, ներառյալ նաև դոկտոր Բանդան, ձերբակալվեցին։ Նյասալենդի աֆրիկական կոնգրեսի անդամ լինելը հայտարարվեց հանցանք։

Ձերբակալվածների թիվը 1000-ից անցավ։ Սկսեցին գործել դատարանները։ Ինչպես գրում էր «Օբսերվեր» թերթը 1959 թ. ապրիլի 26-ի համարում՝ «աֆրիկացիներին մինչև 5 տարի բանտարկություն էին որոշում հենց միայն նրա համար, որ նրանք աֆրիկական կոնգրեսի անդամ էին եղել»։

Նյասալենդի իրադարձությունները լայն արձագանք գտան Անգլիայի բնակչության զանազան խավերի մեջ։ Շոտլանդական հանքափորների պրոֆմիության ղեկավարությունն իր պաշտպանությունն արտահայտեց Նյասալենդի ժողովրդին և բողոքի հեռագիր ուղարկեց գաղութների մինիստրին. Լոնդոնի համալսարանի ուսանողները հատուկ միտինգում որպես խայտառակություն նշավակեցին աֆրիկացիների սպանությունը և դոկտոր Բանդայի ձերբակալությունը։

1959 թվականի մարտի 8-ին Լոնդոնում բողոքի ցույցեր տեղի ունեցան Նյասալենդի իրադարձությունների դեմ։ Ցուցարարները անցան Լոնդոնի փողոցներով, վանկ-վանկ արտասանելով լոզունգներ՝ «Ազատեցեք Բանդային», «Վելենսկին պետք է հեռանա», «Ձեռքներդ հեռու Աֆրիկայից»։

Ստեղծված պայմաններում անգլիական կառավարության համար անհրաժեշտություն ծագեց այնպիսի քայլերի դիմել, որոնք ջնջեին Նյասալենդի իրադարձությունների անբարենպաստ տպավորությունը և որոշ չափով վերականգնեին խախտված հեղինակությունը։ Կառավարությունը որոշեց մի հանձնաժողով ուղարկել Նյասալենդ՝ լորդ Մոնկտոնի գլխավորությամբ, ստեղծված դրությունն «ուսումնասիրելու» համար։ Լեյբորիստական օպոզիցիան կառավարող կոնսերվատիվ պարտիայից պահանջեց բոլոր միջոցները ձեռք առնել՝ Կենտրոնական Աֆրիկայի շրջանում նորին մեծություն թագուհու կառավարության հեղինակությունը վերականգնելու համար։ Սա այն



դեպքն է (որ առանձնապես հատուկ է լեյբորիստական պարտիային), երբ օպոզիցիայի ներկայացուցիչն իր վրա պարտավորություն է վերցնում հոգալ այն մասին, թե ինչպես ավելի լավ կլինի արդարացնել կառավարող պարտիայի գործողությունները։

Աֆրիկայում ստեղծված իրադրության պայմաններում անգլիական կառավարությունն ստիպված էր դիմելու մի այլ միջոցի։ 1960 թվականի հունվարին Մեծ Բրիտանիայի պրեմիեր-մինիստր Հարոլդ Մակմիլանը ուղևորություն կատարեց «Ազգերի Բրիտանական համագործակցության» անդամ աֆրիկական երկրներում։ Նա այցելեց Գանա, Նիգերիա, Ռոդեզիա և Նյասալենդի ֆեդերացիա և Հարավ-աֆրիկական միություն։ Այդ Մեծ Բրիտանիայի պրեմիեր մինիստրի առաջին ուղևորությունն էր դեպի Աֆրիկայի այդ երկրները։

Անգլիական կառավարող շրջանները հիանալի հասկանում են, որ իրենք ի վիճակի չեն կանխելու Աֆրիկայում հասունացող իրադարձությունները, ուստի և այս փուլում նրանք իրենց գաղութային քաղաքականության հիմնական նպատակն են դարձրել՝ պահպանել իրենց վերահսկողությունն այդ իրադարձությունների վրա և դրանք ուղղել իրենց համար համեմատաբար նպաստավոր հունով։

Այդ երկրները «Արևմուտքի» լագերում պահելու քաղաքականության մեջ անգլիական կառավարությունը առաջնակարգ խնդիրներից մեկն է համարում պայքարել Աֆրիկայում պրոգրեսիվ իդեոլոգիայի տարածման դեմ։ 1960 թվականի հունվարի 20-ին Սոլսբերիում ունեցած իր ելույթում Մակմիլանը բացարձակորեն հայտարարեց. «Մենք կարող ենք պարծենալ, որ երկրորդ համաշխարհային պատերազմից հետո անցած 15 տարվա ընթացքում մենք գլխավորել ենք կոմունիզմի ուսմունքը բռնությամբ մեր վզին փաթաթելու ամեն մի փորձին ցույց տրված դիմադրությունը»։

Անգլիական կառավարությունն այժմ շատ ավելի ակտիվորեն քան անցյալում, օգտագործում է անգլիական գաղութների ազգային բուրժուազիային ու ֆեոդալական վերնախավին կոնստիտուցիոն աննշան զիջումներ անելու մեթոդը, որպեսզի դրանով այդ գաղութները պահի Մեծ Բրիտանիայի ազդեցության ու տիրապետության տակ։ Անգլիական կառավարությունը հայտարարել է նաև, որ երբ Մոնկտոնի հանձնաժողովն իր հետևությունները կներկայացնի, դրանից հետո ինքը կգումարի հինգ կառավարությունների (Անգլիական, ֆեդերալ և ֆեդերացիայի մեջ մտնող երեք տերիտորիալ կառավարությունների) կոնֆերանս՝ Ռոդեզիայի և Նյասալենդի ֆեդերացիայի կոնստիտուցիան փոխելու նպատակով։

Ստեղծված պայմաններում անգլիական կառավարությունը ստիպված էր դիմելու ևս մի քայլի. 1960 թվականի ապրիլի 1-ին բանտից ազատվեց դոկտոր Հաստինգս Բանդան։

Մի խոսքով, անգլիական կառավարությունը ջանում է ամեն ինչ անել, որպեսզի այդ գաղութները պահի Մեծ Բրիտանիայի ազդեցության ու տիրապետության տակ։ Սակայն ինչպիսի միջոցների էլ դիմելու լինեն Արևմուտքի իմպերիալիստները, նրանք ստիպված են քայլ առ քայլ թողնել իրենց դիրքերը և նահանջել։

Իրականանում են Վ. Ի. Լենինի խոսքերը, թե հենց գաղութների ժողովուրդների ազատագրումն էլ հանդիսանում է իմպերիալիզմի դարաշրջանի ազգային հարցի հիմքը։

Գաղութարարների ժամանակներն անցել են անդառնալիորեն, և ոչ ոք չի կարող կանխել պատմության կողմից ոչնչացման դատապարտված գաղութային ռեժիմի տապալումը։

Աֆրիկական երիտասարդ պետությունները, ինչպես երբեք, միասնաբար են գործում գաղութարարների դեմ պայքար մղելիս։ Կոնգոյի իրադարձություններն ակնառու կերպով ցույց տվին աֆրիկական երիտասարդ պետությունների միասնությունը, մերկացրին արևմտյան իմպերիալիստների և ՄԱԿ-ում նրանց դրածո՝ ՄԱԿ-ի Գլխավոր քարտուղար Դագ Համերշելդի պլանները։

Այսօր ամբողջ Աֆրիկայում բռնկել է ազգային-ազատագրական շարժման բոցը և հեռու չէ այն օրը, երբ 230 միլիոն բնակչություն և մոտ 30 միլիոն քառ. կիլոմետր տերիտորիա ունեցող մայր ցամաքը ընդմիշտ վերջ կդնի գաղութակալությանը։

Ա. ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ

ղեկավարությունն ընդունող ուրիշ քաղաքական պարտիաների գոյությունը և նրանց մասնակցությունը երկրի հասարակական, քաղաքական և տնտեսական կյանքին։

Չի կարելի չհամաձայնել նաև հեղինակի այն ճիշտ տեսակետի հետ, որ Եվրոպայի ժողովրդադեմոկրատական երկրներում սոցիալիստական ռևոլյուցիայի ծավալման պատմական պայմանների առանձնահատկությունները հանգեցրին այն օրինաչափությանը, որ ամեն մի սոցիալիստական ռևոլյուցիայի ատրիբուտը հանդիսացող հին պետական մեքենան ջարդելու պրոցեսը, այդ երկրներում իրականացվեց ոչ թե միանգամից, այլ աստիճանաբար։ Աշխատության մեջ արտահայտված է այն միտքը, որ, ի տարբերություն պրոլետարիատի դիկտատուրայի սովետական ձևի առաջին փուլի առանձնահատկության, Եվրոպայի ժողովրդական դեմոկրատիայի երկրներում (բացառությամբ Ռումինիայի) շահագործող դասակարգերն անցման շրջանում չեն զրկվում ընտրական իրավունքից։ Այդ կարևոր հանգամանքը գործնականորեն հաստատում է Վ. Ի. Լենինի թեորիական այն հայտնի դրույթը, որ կապիտալիզմից սոցիալիզմին անցման շրջանում շահագործող դասակարգերին ընտրական իրավունքից զրկելը պրոլետարիատի «դիկտատուրայի տրամաբանական հասկացության անհրաժեշտ հատկանիշը չէ»։

Անհրաժեշտ է նշել, որ հեղինակի հարցադրումները ուշադրավ են, իսկ լուծման եղանակներն ինքնատիպ։ Հեղինակը գտնում է, որ ժողովրդական դեմոկրատիայի երկրներում հենց սկզբից էլ ռևոլյուցիաները և ստեղծված պետական իշխանությունը եղել են յուրօրինակ։ Նա ճիշտ է նկատում, որ այդ երկրներում սոցիալիստական ռևոլյուցիայի խնդիրները լուծվեցին աստիճանաբար։

Աշխատության երրորդ և վերջին գլխում հատկապես քննարկվում է ժամանակակից պայմաններում սոցիալիստական ռևոլյուցիայի իրականացման նոր, հնարավոր ձևերի հարցը։

Աշխատության վերջում հեղինակը եզրակացնում է. բանվոր դասակարգի համար միշտ նախընտրելի է ռևոլյուցիայի իրականացման խաղաղ ձևը, որը, սակայն, կախված է ո՛չ միայն և ո՛չ այնքան բանվոր դասակարգից, որքան նրան թշնամի դասակարգերի դիմադրության աստիճանից, ձևերից, իրադրությունների զարգացման օբյեկտիվ ընթացքից։ Մարքսիզմը չի ֆետիշացնում պայքարի այս կամ այն ձևը։ Նա գտնում է, որ պրոլետարիատի դասակարգային պայքարի ձևերը որոշվում են ոչ թե առանձին անհատների, պարտիաների սուբյեկտիվ ցանկություններով, այլ պատմական կոնկրետ իրադրության օբյեկտիվ պայմաններով։ Այդ ձևերից որևէ մեկի մետաֆիզիկական բևեռացումն ու բացարձակացումը խորթ է մարքսիզմին։

Վ. Դարբինյանի ուսումնասիրությունը, ընդհանուր առմամբ, արժանի է ուշադրության և խրախուսանքի։ Սակայն գիրքը զերծ չէ առանձին թերություններից։ Այսպես. Եվրոպայի ժողովրդական դեմոկրատիայի երկրներում տեղի ունեցած ժողովրդա-դեմոկրատական ռևոլյուցիայի առաջին էտապից մինչև պրոլետարիատի դիկտատուրայի հաստատումը ընկած ժամանակաշրջանը, երբ իրականացվում էր բանվորների ու գյուղացիների ռևոլյուցիոն-դեմոկրատական դիկտատուրան, հեղինակը պատմական որոշակիությամբ չի վերլուծել։ Պրոլետարիատի դիկտատուրայի լինելիության պրոցեսը չի ներկայացվում որպես մի անընդմեջ պրոցես։ Կամ՝ 193-րդ էջում կարդում ենք. «Դասակարգերի լիկվիդացմամբ և սոցիալիստական հասարակության բարոյա-քաղաքական միասնության հաստատմամբ կվերանան նաև բազմապարտիականության սոցիալական արմատները և այդ սիստեմն ինքը»։ Միտքը ճիշտ կլիներ, եթե հեղինակը խոսեր ոչ թե առհասարակ դասակարգերի, այլ անտագոնիստական դասակարգերի լիկվիդացման մասին։

Աշխատության մեջ կան նաև հակասական մտքեր ու տեսակետներ։ Այսպես, օրինակ, մի շարք տեղերում (էջ 133, 134, 141, 169, 179 և այլն) հեղինակը նշում է, որ Եվրոպայի ժողովրդադեմոկրատական երկրներում ռևոլյուցիայի երկրորդ՝ սոցիալիստական էտապում միայն պետության մեջ քաղաքական իշխանությունն ամբողջովին անցավ պրոլետարիատի ձեռքը և հաստատվեց պրոլետարիատի դիկտատուրա։ Իսկ 181-րդ էջում, երբ խոսվում է նոր ստեղծված կառավարությունների մեջ կոմպարտիաների ունեցած ազդեցության տարբեր չափերի մասին, կարդում ենք. «Այս տեսակետից հատկապես բնորոշ էր 1944 թ. սեպտեմբերի 9-ից հետո Բուլղարիայում ստեղծված իշխանությունը, որն իր օբյեկտիվ խնդիրներով և դասակարգային բովանդակությամբ, ըստ էության, փաստորեն պրոլետարիատի դիկտատուրայի իշխանություն էր»։ Գրքում բավարար և հիմնավոր չի տրված ժամանակակից ռևիզիոնիզմի քննադատությունը։

Գրքում կան ձգձգված կամ թելերով ու հանրահայտ փաստերով ծանրաբեռնված էջեր (200—215, 225—235), հնացած տվյալներ (էջ 207, 210—211), կրկնություններ, անհաջող ձևակերպումներ և չնկատված վրիպակներ (էջ 4, 58, 120, 147, 158, 247, 279, 282, 284, 296)։

Հ. ԽԵՐՅԱՆ

# «ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ» ԱՄՍԱԳՐՈՒՄ 1960 ԹՎԱԿԱՆԻՆ ԶԵՏԵՂՎԱԾ ՀՈԴՎԱԾՆԵՐԻ ԵՎ ՆՅՈՒԹԵՐԻ ՑԱՆԿ

## ԱՌԱՋՆՈՐԴՈՂՆԵՐ ԵՎ ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ՀՈԴՎԱԾՆԵՐ



## Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԾՆՆԴՅԱՆ 90-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ



## ՀՈԴՎԱԾՆԵՐ

ՏԵՂԵԿԱՆՔ



ՍՄԿՊ ԿԵՆՏԿՈՄԻ ՀՈՒԼԻՍՅԱՆ ՊԼԵՆՈՒՄԻ ԱՌԹԻՎ



ՍՄԿՊ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՌԱՋԻԿԱ ՊԼԵՆՈՒՄԻ ԱՌԹԻՎ



ՊԱՐՏԻԱԿԱՆ ԿՅԱՆՔ



ԷՋԵՐ ՌԵՎՈԼՅՈՒՑԻՈՆ ԱՆՑՅԱԼԻՑ



ՕԳՆՈՒԹՅՈՒՆ ՊՐՈՊԱԳԱՆԴԻՍՏԻՆ

### ԴԵՊԻ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՔԱՌԱՍՆԱՄՅԱԿԸ



### ԳՐԱԽՈՍՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅՈՒՆ



### ՔՆՆԱՐԿՈՒՄ ԵՎ ԲԱՆԱՎԵՃ



### ՆԱՄԱԿՆԵՐ ԵՎ ԹՂԹԱԿՑՈՒԹՅՈՒՆՆԵՐ





### ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅԻ ԱՌԱՋԱՎՈՐ ԿՈԼՏՆՏԵՍՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ



### ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅԻ ԱՌԱՋԱՎՈՐ ՍՈՎԽՈԶՆԵՐԸ



### ԵՂԲԱՅՐԱԿԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՆԵՐՈՒՄ



### ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԼԱԳԵՐԻ ԵՐԿՐՆԵՐՈՒՄ



### ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԿՅԱՆՔ



### ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ



### ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ



### ԿՈՆՍՈՒԼՏԱՑԻԱ ԵՎ ԴԱՍԱԽՈՍՈՒԹՅՈՒՆ



### ՄԱՄՈՒԼԻ ՏԵՍՈՒԹՅՈՒՆ

## ՍՓՅՈՒՌՔԱՀԱՅ ԱՌԱՋԱԴԻՄԱԿԱՆ ՄԱՄՈՒԼԻ ԷՋԵՐԻՑ



## ՊԱՏԱՍԽԱՆ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐԻ ՀԱՐՑԵՐԻՆ



---

## ՈՒՂՂՈՒՄ

Մեր ամսագրի № 11-ի 23-րդ էջի վերևից 20-րդ տողից կարդալ. «գյուղատնտեսական արտադրանքի ինքնարժեքի իջեցումը» ու այնուհետև ինչպես տեքստում։ Նույն համարի 39-րդ էջի ներքևից 10-րդ տողից կարդալ. «Այժմ ռեսպուբլիկայում կան 453 մանկապարտեզներ, որոնցում ընդգրկված են ավելի քան 27.800 երեխաներ»։



ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ
ԱԴՈՅԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր).
ԱՌԱՔԵԼՅԱՆ Ս. Վ., ԱՎԵՏԻՍՅԱՆ Վ. Ա., ԲԱՐՍԵՂՅԱՆ Խ. Հ., ԳԵՎՈՐԳՅԱՆ Վ. Հ., ԹԵԼՈՒՆՑ Ա. Մ., ՀԱՅՐՅԱՆ Գ. Ա., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս.։

Խմբագրության հասցեն՝ Երևան, ՀԿՊ Կենտկոմի շենք, հեռ. 2—56—92 2—04—66, 2—02—24
Адрес редакции: Ереван, здание ЦК КП Армении. тел 2—56—92 2—04—66, 2—02—24

ՎՖ 04080 Պատվեր 2864 Տիրաժ 9250
Տպ. 7 մամուլ, մամուլում 68,340 նիշ։ Ստորագրված է տպագրության 20/XII 1960 թ.։

Խմբագրությանը ուղարկված ձեռագրերը հեղինակներին չեն վերադարձվում։

Հայկական ՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Հրատարակչությունների և պոլիգրաֆարդյունաբերության Գլխավոր վարչության № 6 տպարան, Երևան։



## ՆՈՐ ԳՐՔԵՐ

Ա. ՔՈՉԻՆՅԱՆ.— «Հայաստանը յոթնամյակում», Հայպետհրատ, 83 էջ, գինը՝ 1 ռ. 35 կ.։

Գ. ԲԱՂՐԱՄՅԱՆ.— «Քիմիական արդյունաբերության զարգացումը Սովետական Հայաստանում». Հայպետհրատ, 96 էջ, գինը՝ 1 ռ. 35 կ.։

Վ. ՄԻՔԱՅԵԼՅԱՆ.— «Հայաստանի գյուղացիությունը Սովետական իշխանության համար մղված պայքարի ժամանակաշրջանում (1917—1920 թթ.)», Հայպետհրատ, 180 էջ, գինը՝ 3 ռ. 40 կ.։

«Լենինյան Իսկրա»-ն Անդրկովկասի մասին», ժողովածու, Հայպետհրատ, 200 էջ, գինը՝ 4 ռ. 50 կ.։

Կ. ՈՒԴՈՒՄՅԱՆ, Մ. ՍԱՂՈՒՄՅԱՆ.— «Սովետական Հայաստանի 40 տարին», Հայկ. ՍՍՌ քաղ. և գիտ. գիտելիք. տարածման ընկ. հրատ., գինը՝ 1 ռ.։

«Ալեքսանդր Թամանյան.— Հոդվածներ, փաստաթղթեր, ժամանակակիցները նրա մասին։ Կազմեց, ծանոթագրեց և առաջաբան գրեց Լ. Զորյանը։ Հայկ. ՍՍՌ ԳԱ հրատ., 287 էջ, գինը՝ 11 ռ. 40 կ.։

Ա. Բ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ (ՀԱՐԵՆՑ).— «Արևելքի ժողովուրդների առաջին համագումարը», Հայպետհրատ, 88 էջ, գինը՝ 90 կ.։

ԱՐ. ԱՌԱՔԵԼՅԱՆ.— «Սոցիալիզմի խաղաղատնտեսությունը», Հայպետհրատ, 584 էջ, գինը՝ 8 ռ. 20 կ.։

*КАЙДАЛОВ Д. П.— «Коммунизм, труд и человек»*, Պետքաղհրատ, Մոսկվա, 112 էջ, գինը 1ռ. 40 կ.։

*«По новому»*.— Из опыта работы партийных организации вузов. Ժողովածու, Պետքաղհրատ, Մոսկվա, 240 էջ, գինը՝ 2 ռ. 70 կ.։

*Ժողովածուն վերաբերում է բուհերի պարտիական կազմակերպությունների նորաձև աշխատանքին, նրանց կուտակած ուսանելի փորձին, որն իրականացվեց բարձրագույն դպրոցի վերակառուցման մասին պարտիայի և կառավարության հայտնի որոշումից հետո։*

**АНУФРИЕВ Л. А. «Широким фронтом»**, Պետքաղհրատ, Մոսկվա, 40 էջ, գինը՝ 50 կ.։

*Բրոշյուրը պարտիական աշխատողներին և ակտիվիստներին, պրոպագանդիստներին ու դասախոսներին ծանոթացնում է գիտա-աթեիստական պրոպագանդայի մի քանի ձևերին, պատմում Օդեսայի քաղկոմի կողմից կազմակերպված աթեիստների տան աշխատանքների մասին։*

*КОМЗИН И. В.— «Записки советского энергетика»*, Պետքաղհրատ, Մոսկվա, 112 էջ, գինը՝ 1 ռ. 30 կ.։

*Բրոշյուրի հեղինակն է սովետական հայտնի էներգետիկ, պրոֆեսոր Ի. Բ. Կոմզինը, որը ղեկավարել է Վոլգայի Վ. Ի. Լենինի անվան հիդրոէլեկտրակայանի շինարարությունը։ Այստեղ պատմվում է երկրի համատարած էլեկտրիֆիկացիայի լենինյան պլանը կյանքում իրագործելու մասին, ինչպես նաև կասկադների, գծերի, ջերմաէլեկտրակայանի ստեղծման մասին։*

*«Страны социализма и капитализма в цифрах»*. Հոդվածների ժողովածու, Պետքաղհրատ, Մոսկվա, գինը՝ 5 ռ.։

*Սա մի տեղեկատու է պրոպագանդիստների և ագիտատորների համար։ Գրքույկում զետեղված են թվական տվյալներ՝ մինչպատերազմյան և հետպատերազմյան ժամանակաշրջանի մասին, ընդգրկելով 1959 թվականի տվյալները, ցուցադրելով արդյունաբերության, գյուղատնտեսության, տրանսպորտի, առևտրի զարգացման կարևորագույն ճյուղերը, աշխատավորների դրությունը սոցիալիստական և գլխավոր կապիտալիստական երկրներում։*

